ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

*Միասնական ընտանիքում՝*
*դեպի ընդհանուր նպատակ*



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

# ლენინის გზით



# Азәрбаjҹан коммунисти

*ՄԻԱՑՅԱԼ ՀԱՄԱՐ՝*
*նվիրված Մեծ Հոկտեմբերի 70-ամյակին*

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1987

... Սովետական բազմազգ պետության համար հսկայական նշանակություն ունի **ազգային հարաբերությունների զարգացումը:** Մեր երկրում ազգային հարցի լուծման հիմքերը դրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Կոմունիստական կուսակցությունը, հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի, սոցիալիզմի նվաճումների վրա, վիթխարի վերափոխիչ աշխատանք է կատարել այդ բնագավառում: Դրա արդյունքները սոցիալիզմի ակնառու նվաճումն են, որոնք հարստացրել են համաշխարհային քաղաքակրթությունը: Մեկընդմիշտ ոչնչացված են ազգային ճնշումն ու ազգային անիրավահավասարությունը՝ բոլոր ձևերով ու դրսևորումներով: Հաստատվել, տասնյակ միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ են մտել ժողովուրդների անխախտ բարեկամությունը, բոլոր ժողովուրդների ազգային կուլտուրայի և ազգային արժանապատվության հանդեպ հարգանքը: Սովետական ժողովուրդը հանդես է գալիս որպես որակապես նոր սոցիալական և ինտերնացիոնալ ընդհանրություն, որը զոդված է տնտեսական շահերի, գաղափարախոսության և քաղաքական նպատակների միասնությամբ:

**Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎ: ՍՄԿԿ XXVII համագումարին Կենտկոմի տված Քաղաքական զեկուցումից**



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

մար: Ամբողջությամբ վերցված այս կամ այն ժողովուրդների ու երկրների ակնհայտ տարբերությունների ու հնարավորությունների առկայության դեպքում Երկրի բնակիչների համար արժանավայել կենսապայմանների ապահովման հեռանկար է ուրվագծվել:

Միևնույն ժամանակ առաջացել են այնպիսի վտանգներ, որոնք հարցական տակ են դնում մարդկային ցեղի բուն անմահությունը: Ուստի անհրաժեշտ են մեր եզակի մոլորակում համակեցության նոր կանոններ, որոնք համապատասխանեն նոր պահանջմունքներին ու փոփոխվող պայմաններին:

Ավաղ, ազդեցիկ շատ ուժեր շարունակում են կառչել ազգային անվտանգության ապահովման հնացած պատկերացումներից: Դրա հետևանքով աշխարհն ընկնում է անհեթեթ վիճակի մեջ, երբ փորձում են նրան համառորեն համոզել, թե դեպի անդունդ տանող ուղին ամենաճիշտ ուղին է: Այլ կերպ դժվար է գնահատել այն տեսակետը, թե իբր միջուկային զենքը թույլ է տալիս խուսափել համաշխարհային պատերազմից: Այն հերքելը հեշտ չէ հենց նրա կատարյալ անապացուցության պատճառով: Չէ որ հարկ կլինի վիճարկել այն, ինչը հրամցվում է որպես աքսիոմա. քանի որ միջուկային զենքի հայտնվելուց հետո, համաշխարհային պատերազմ չի եղել, ուրեմն, այդ զենքն էլ կանխել է այն: Ավելի ճիշտ կլինի, ինչպես թվում է, ասել, որ համաշխարհային պատերազմից հաջողվել է խույս տալ հակառակ միջուկային զենքի գոյությանը:

Մի ժամանակ երկրներից յուրաքանչյուրն ուներ մի քանի տասնյակ ատոմային ռումբ, հետո հայտնվեցին հարյուրավոր միջուկային հրթիռներ, վերջապես զինանոցները հասան մինչև մի քանի հազար միջուկային մարտալիցքի: Իսկ վերջերս սովետական ու ամերիկյան գիտնականները հատուկ ուսումնասիրեցին ստրատեգիական կայունության և միջուկային զինանոցների չափերի փոխադարձ կապի հարցը ու եկան այն միաձայն կարծիքին, որ ԱՄՆ-ի ու ՍՍՀՄ-ի բոլոր միջուկային սպառազինությունների 95 տոկոսը կարելի է վերացնել, ամենևին չխախտելով կայունությունը: Սպանիչ փաստարկ ընդդեմ «միջուկային զսպման» ստրատեգիայի, որը խելահեղ տրամաբանություն է ծնում: Իսկ մենք այն կարծիքին ենք, որ 5 տոկոսն էլ թողնելու հարկ չկա: Եվ այն ժամանակ որակապես այլ կայունություն կլինի:

Չհավակնելով որևէ մեկին դաս տալ և հասկանալով աշխարհում տիրող վտանգավոր իրավիճակի սոսկական արձանագրման ապարդյունությունը, մենք սկսեցինք որոնել այն հարցի պատասխանը, թե հնարավո՞ր է, արդյոք, այսօր ազգային անվտանգության ապահովման այնպիսի մոդել, որը համաշխարհային աղետով չսպառնար:

Այդ մոտեցումն էր ընկած այն պատկերացումների հունում, որոնք ստեղծվել էին քաղաքական այնպիսի նոր մտածողություն մշակելիս, որը տոգորված է շրջապատի ու շուրջը տեղի ունեցողի, իրենց իսկ նկատմամբ իրատեսական հայացքով, աչքի է ընկնում ուրիշների հանդեպ անկանխակալ վերաբերմունքով և սեփական պատասխանատվության ու անվտանգության ըմբռնմամբ:

Նոր մտածողությունը նաև խոսքի ու գործի խզման վերացում է: Եվ մենք գործի անցանք: Համոզված լինելով, որ միջուկային զենքը մեծագույն չարիք է ու ամենաահավոր սպառնալիքը, միջուկային փորձարկումների միակողմանի մորատորիում հայտարարեցինք, որին, ուղղակի ասեմ, դիմացանք ավելի երկար, քան կարող էինք... Այնուհետև եղավ 1986 թվականի հունվարի 15-ի հայտարարությունը՝ միջուկային զենքի փուլ առ փուլ վերացման կոնկրետ ծրագրով: Ռեյկյավիկում պրեզիդենտ Ռեյգանի հետ հանդիպման ժամանակ մենք ընդհուպ մոտեցանք լրիվ միջուկային զինաթափման ցանկալիության ու հնարավորության ըմբռնմանը: Եվ հետո այնպիսի քայլեր արեցինք, որոնք հեշտացրին երկու դասի միջուկային սպառազինությունների՝ միջին հեռահարության հրթիռների և օպերատիվ-տակտիկական հրթիռների վերացման համաձայնագրին մոտենալու հնարավորությունը:

Գտնում ենք, որ այն հնարավոր է ու իրագործելի: Այս կապակցությամբ ուզում եմ նշել, որ ԳՖՀ-ի կառավարությունը բռնել է այնպիսի դիրք, որը որոշակի չափով նպաստում է դրան: Սովետական Միությունը ելնում է այն բանից, որ համապատասխան պայմանագիրը կարող էր մշակվել մինչև այս տարվա վերջը: Նրա հնարավոր արժանիքների մասին շատ է խոսվել: Հարկ



չկա, որ կրկնեմ: Ուզում եմ միայն նշել, որ պայմանագիրը շոշափելի հարված կհասցներ միջուկային զենքի սահմանափակ կիրառման և միջուկային կոնֆլիկտի այսպես կոչված «վերահսկելի էսկալացման» կոնցեպցիաներին: Երևութական միջանկյալ տարբերակներ չկան: Իրավիճակն ավելի է կայունանում:

Միջին հեռահարության և օպերատիվ-տակտիկական հրթիռներին նվիրված պայմանագիրը լավ նախերգ կդառնար հակահրթիռային պաշտպանության պայմանագրի խստիվ կիրառման պայմաններում ստրատեգիական հարձակողական սպառազինությունների խոշոր՝ հիսուն տոկոսանոց կրճատումների վերաբերյալ բանակցություններում տեղաշարժ կատարելու համար: Ենթադրում եմ, որ երկուստեք ձգտման դեպքում դրա վերաբերյալ համաձայնությունը կարող էր իրողություն դառնալ արդեն գալիք տարվա առաջին կեսին:

Խորհելով դեպի միջուկազերծ աշխարհ ընթանալու վերաբերյալ, արդեն այժմ անհրաժեշտ է հոգ տանել այն մասին, թե ինչպես ապահովել անվտանգությունը զինաթափման ընթացքում, նրա յուրաքանչյուր փուլում, և խորհել ոչ միայն այդ մասին, այլև համաձայնության գալ ոչ միջուկային սպառազինությունների խիստ նվազեցված մակարդակներում խաղաղությունը պահպանելու մեխանիզմների շուրջը:

Այս բոլոր հարցերը մտցված են միջազգային խաղաղության ու անվտանգության համապարփակ համակարգ ստեղծելու մասին ՄԱԿ-ում մյուս սոցիալիստական երկրների հետ մեկտեղ արած առաջարկությունների մեջ:

Ինչպե՞ս ենք մենք դա պատկերացնում:

Մեր առաջարկած անվտանգության նախագիծը նախ և առաջ նախատեսում է հաջորդայնություն և խաղաղության պահպանության գոյություն ունեցող հաստատությունների հետ համաձայնություն, համակարգը կարողանար գործել ՄԱԿ-ի կանոնադրության բազայի վրա և Միավորված ազգերի կազմակերպության շրջանակներում: Մեր կարծիքով, նրա մարտունակությունը կապահովվի կանոնադրության պահանջների խստիվ կատարմամբ, պետությունների լրացուցիչ միակողմանի պարտավորություններով, ինչպես նաև վստահության և բոլոր՝ ռազմաքաղաքական, տնտեսական, էկոլոգիական, հումանիտար և այլ ոլորտներում միջազգային համագործակցության միջոցառումներով:

Հանձն չեմ առնում կանխագուշակել, թե վերջնական ինչ ճշգրիտ տեսք կարող էր ունենալ համապարփակ անվտանգության համակարգը: Պարզ է միայն, որ այն կարող է իրողություն դառնալ սոսկ մասսայական բնաջնջման բոլոր միջոցների ոչնչացման դեպքում: Մենք առաջարկում ենք, որ այս ամենի մասին մտածեր փորձագետների ու մասնագետների մի անկախ հանձնաժողով, որը իր հետևությունները ներկայացներ Միավորված ազգերի կազմակերպությանը:

Անձամբ ես տարակույս չունեմ, որ սուվերեն պետություններն ընդունակ են արդեն այժմ պարտավորություն ստանձնել միջազգային անվտանգության ասպարեզում: Շատ պետություններ այդպես էլ անում են: Ինչպես հայտնի է, Սովետական Միությունն ու Չինական Ժողովրդական Հանրապետությունը հայտարարել են, որ առաջինը միջուկային զենք չեն գործադրի: Մեկ այլ օրինակ՝ միջուկային սպառազինությունների վերաբերյալ սովետա-ամերիկյան համաձայնագրերը: Դրանցում գիտակցված ընտրություն է արված ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի փոխհարաբերությունների ավելի զգայուն ոլորտում զսպվածության ու ինքնասահմանափակման օգտին: Իսկ ի՞նչ է իրենից ներկայացնում միջուկային զենքի չտարածման պայմանագիրը: Պետությունների բարձր պատասխանատվության եզակի օրինակ:

Մեր ժամանակակից իրականության մեջ արդեն գոյություն ունեն «աղյուսիկներ», որոնցով կարելի է կառուցել անվտանգության ապագա համակարգը:

Միջազգային գործերի խելամիտ, պատասխանատու և ռացիոնալ կազմակերպման ոլորտը, թեկուզ և երկչոտությամբ, բայց ընդլայնվում է մեր աչքի առջև: Սահմանվում են բացախոսության, հրապարակայնության, ստանձնած պարտավորությունների փոխադարձ ստուգման ու վերահսկողության ծավալների և խորության աննախադեպ ստանդարտներ: Ամերիկյան տեսչական խումբը այցելում է այն շրջանը, որտեղ անցկացվում էին սովետական զորքերի

զորավարժություններ, ԱՄՆ-ի կոնգրեսականների խումբը զննում է Կրասնոյարսկի ռադիոլոկացիոն կայանը։ Ամերիկյան գիտնականները իրենց սարքերն են տեղակայում ու կարգավորում սովետական միջուկային զինափորձարանի շրջանում։ Սովետական ու ամերիկյան դիտորդները ներկա են լինում միմյանց զորավարժություններին։ Հրապարակվում են ռազմական գործունեության տարեկան պլանները՝ Հելսինկիի պրոցեսի շրջանակներում ձեռք բերված պայմանավորվածություններին համապատասխան։

Իրավիճակը փոխվելու օգտին ավելի ծանրակշիռ ու տպավորիչ փաստարկ չգիտեմ, քան միջուկային զենքից կամավոր հրաժարվելու միջուկային տերության հայտարարած պատրաստակամությունը։ Արդարացված չեն միջուկային զենքը սովորական սպառազինություններով փոխարինելու ձգտման վկայակոչումները, սպառազինություններ, որոնց գծով ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի միջև իբր գոյություն ունի անհաշվեկշռություն՝ հօգուտ վերջինիս։ Եթե անհաշվեկշռություն, անհամահավասարություն գոյություն ունեն, եկեք վերացնենք դրանք։ Այս մասին չենք զլանում ասել միշտ, առաջարկել ենք այդ պրոբլեմի լուծման կոնկրետ եղանակներ։

Սովետական Միությունը այս բոլոր հարցերում հանդես է գալիս որպես նախագնաց, ցույց տալով, որ իր խոսքը գործից չի տարբերվում։

Պաշտպանության ծախսերի համադրմա՞ն հարցը։ Այստեղ դեռ անելիք կա։ Կարծում եմ, որ պատշաճ ջանքերի դեպքում արդեն մոտակա երկու-երեք տարում մենք կկարողանանք համադրել թե մեզ, թե մեր պարտնյորներին հետաքրքրող թվերը, որոնք սիմետրիկ կերպով կարտացոլեին կողմերի ծախսերը։

Միջուկային և տիեզերական սպառազինությունների վերաբերյալ սովետա-ամերիկյան բանակցությունները, քիմիական զենքի արգելման կոնվենցիան, որը մոտ է կնքման, համոզված եմ, կարագացնեն դեպի լիցքաթափում և զինաթափում ընթանալու հանգամանքը։

Այս ուղղությամբ ուժեղ ազդակ կարող է տալ «պաշտպանական ստրատեգիայի» և «ռազմական բավարարության» շուրջը պայմանավորվածության գալը։ Այդ հասկացությունները ենթադրում են պետության զինված ուժերի այնպիսի կառուցվածք, որ դրանք բավական լինեն հնարավոր ագրեսիան հետ մղելու համար, բայց ոչ բավարար՝ հարձակողական գործողություններ վարելու համար։ Այդ ճանապարհին առաջին քայլը սահմաններից միջուկային և մյուս հարձակողական զենքի վերահսկելի հեռացումն է՝ հետագայում սահմանների երկայնքով պոտենցիալ, այսպես ասենք, հակառակորդների միջև լիցքաթափված սպառազինությունների ու սահմանազատ գոտիների ստեղծմամբ հանդերձ։ Իսկ սկզբունքորեն՝ բանը տանել դեպի ռազմական բլոկների ցրում և ուրիշի տարածքներում եղած բազաների վերացում, արտասահմանում գտնվող բոլոր զորքերի վերադարձ տուն։

Ավելի բարդ է այն հարցը, թե ինչպիսին կարող է լինել միջուկային կոնֆլիկտի սանձազերծումը կանխելու մեխանիզմը։ Այստեղ ես մոտենում եմ համապարփակ անվտանգության գաղափարի առավել զգայուն կետին. հարկ կլինի շատ բան վերաիմաստավորել, համակողմանիորեն կշռադատել, վերջնամշակել։ Համենայն դեպս, միջազգային կազմակերպությունը պետք է համաձայնեցված միջոցառումներ մշակի խափանելու միջուկային զենքի չգործադրման և վերացման համապարփակ համաձայնագրի խախտումը և կամ այդպիսի համաձայնագրի խախտման փորձերը։ Իսկ ինչ վերաբերում է պոտենցիալ միջուկային ելուզակությանը, ապա կարելի է և պետք է, ըստ երևույթին, նախապես ծանրութեթև անել և նախապատրաստել դրա կանխման կոլեկտիվ միջոցառումներ։

Եթե համակարգը բավականաչափ արդյունավետ լինի, ապա այն առավել ևս ոչ միջուկային ագրեսիայի կանխման ու խափանման գործուն երաշխիքներ կտա։

Մեր առաջարկած համակարգն էլ հենց ենթադրում է այնպիսի միջոցառումների որոշակիություն, որոնք անվտանգության գլխավոր ունիվերսալ մարմնին՝ Միավորված ազգերի կազմակերպությանը, հնարավորություն տային ապահովել նրա պահպանումը հուսալիության մակարդակի վրա։



## II.

Աշխարհի բաժանումը միջուկային զենք ունեցող և չունեցող երկրների, երկատել է նաև անվտանգության բուն ըմբռնումը։ Բայց մարդկային կյանքի համար անվտանգությունն անբաժանելի է։ Այս առումով այն ոչ միայն քաղաքական, ռազմական, իրավաբանական, այլև բարոյական կատեգորիա է։ Եվ էթիկայի հեսանի վրա ոչ մի ստուգման չեն դիմանում այն դատողությունները, որ արդեն գրեթե կես դար պատերազմներ չկան։ Ինչպե՞ս թե չկան։ Իսկ աշխարհում բռնկված տասնյակ ռեգիոնալ պատերազմնե՞րը։

Բարոյազանցություն է դրան վերաբերվել որպես մի ինչ-որ երկրորդական բանի։ Բանը սոսկ միայն անթույլատրելի միջուկային մեծամտությունը չէ։ Միջուկային զենքի վերացումը նաև խոշոր քայլ է պետությունների փոխհարաբերությունների իսկական դեմոկրատացման, նրանց հավասարության ու հավասար պատասխանատվության ճանապարհին։

Ընդհանուր անվտանգության պարտադիր պայմանը ՄԱԿ-ի կանոնադրության և իրենց զարգացման ուղիներն ու ձևերը՝ հեղափոխական թե էվոլյուցիոն, ինքնուրույն ընտրելու ժողովուրդների իրավունքի անվերապահ պահպանումն է։ Դա վերաբերում է նաև սոցիալական ստատուս-քվոյի իրավունքին։ Դարձյալ բացառապես ներքին գործ։ Պետք է բացառվեն ամեն տեսակ՝ ուղղակի և անուղղակի փորձերը ազդելու «ոչ իրենց» երկրների զարգացման վրա, միջամտելու դրան։ Նույնքան անթույլատրելի են նաև գոյություն ունեցող կառավարությունները դրսից խարխլելու փորձերը։

Միևնույն ժամանակ համաշխարհային կազմակերպությունը չի կարող հեռու մնալ միջպետական կոնֆլիկտներից։ Այստեղ կարելի է սկսել ՄԱԿ-ին առընթեր պատերազմի վտանգի նվազեցման բազմակողմ կենտրոն ստեղծելու մասին ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարի առաջարկության իրականացումից։ Ըստ երևույթին, արժեր ծանրութեթև անել ՄԱԿ-ի կենտրոնակայանի և անվտանգության խորհրդի մշտական անդամ պետությունների մայրաքաղաքների միջև, ինչպես նաև չմիանալու շարժման նախագահի գտնվելու վայրի հետ ուղղակի կապի գծի կազմակերպման նպատակահարմարությունը։

Մեզ թվում է, որ վստահության ու փոխըմբռնման ամրապնդման նպատակով ՄԱԿ-ի հովանու ներքո կարելի էր ստեղծել միջազգային լարվածության թուլացման, սպառազինությունների սահմանափակման համաձայնագրերի կատարման և կոնֆլիկտային շրջաններում ռազմական իրադրության միջազգային լայն վերահսկողության մեխանիզմ։ Մեխանիզմը կգործեր ինֆորմացիայի հավաքման և այն օպերատիվ կերպով ՄԱԿ-ին տրամադրելու համար վերահսկողության տարբեր ձևերի ու մեթոդների օգտագործմամբ։ Դա հնարավորություն կտար ունենալ իրադարձությունների օբյեկտիվ պատկեր, ժամանակին ի հայտ բերել պատերազմական գործողությունների նախապատրաստությունը, դժվարացնել հանկարծակի հարձակումը, միջոցներ ձեռնարկել ռազմական կոնֆլիկտի, նրա ընդլայնման ու սրման կանխման նպատակով։

Մենք հանգում ենք այն հետևությանը, որ թշնամական կողմերի զորքերի տարանջատման, կրակի դադարեցման և զինադադարի համաձայնագրերի հսկողության նպատակով հարկավոր է ավելի լայնորեն օգտագործել ՄԱԿ-ի ռազմական դիտորդների և ՄԱԿ-ի խաղաղության պահպանության զինված ուժերի ինստիտուտը։

Եվ, իհարկե, կոնֆլիկտի բոլոր փուլերում անհրաժեշտ է լայնորեն օգտագործել պետությունների միջև վեճերի ու տարաձայնությունների խաղաղ կարգավորման բոլոր միջոցները, հանդես գալ բարի ծառայությունների, զինադադարի հասնելու գործում միջնորդության առաջարկություններով։ Արդյունավետ են թվում այնպիսի ոչ կառավարական հանձնաժողովների ու խմբերի վերաբերյալ գաղափարներն ու նախաձեռնությունները, որոնք զբաղվեին այս կամ այն կոնկրետ կոնֆլիկտային իրավիճակների պատճառների, դրանց կարգավորման հանգամանքների ու մեթոդների վերլուծությամբ։

Ռեգիոնալ անվտանգության երաշխավորներ կարող էին դառնալ անվտանգության խորհրդի մշտական անդամները, որոնք, իրենց կողմից, պարտավորություն ստանձնեին ուժ չգործադրել կամ ուժով չսպառնալ, հրաժարվել ցու-

դես է գալիս որպես կազմակերպության յուրաքանչյուր անդամի ներկայացուցին, բոլոր պետությունները պետք է նրան առավելագույն աջակցություն ցույց տան, օգնեն կատարելու նրա պատասխանատու առաքելությունը։ Համաշխարհային հանրությունը պետք է քաջալերի ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին բարի ծառայությունների, միջնորդության կամ հաշտեցման նրա առաքելությունների մեջ։

* * *

Ինչո՞ւ ենք մենք այսքան հաստատակամորեն առաջադրում միջազգային խաղաղության և անվտանգության համապարփակ համակարգի հարցը։

Նրա համար, որ անհնար է հաշտվել այն իրավիճակի հետ, որում հայտնվել է աշխարհը երրորդ հազարամյակի նախօրեին՝ ոչնչացման սպառնալիքի տակ, մշտական լարվածության վիճակում, կասկածամտության և գժտությունների մթնոլորտում, հսկայական միջոցներ, միլիոնավոր մարդկանց աշխատանքն ու տաղանդը ծախսելով փոխադարձ անվստահությունն ու սպառազիները խորացնելու համար։

Ինչքան ուզեք կարելի է խոսել սպառազինությունների մրցավազքի դադարեցման անհրաժեշտության, միլիտարիզմի իսպառ վերացման, համագործակցության մասին, բայց ոչինչ չի փոխվի, եթե չսկսենք գործել։

Պրոբլեմի քաղաքական և բարոյական առանցքը պետությունների և ժողովուրդների վստահությունն է միմյանց հանդեպ, միջազգային համաձայնագրերի և հաստատությունների հարգումը։ Եվ մենք պատրաստ ենք առանձին ոլորտներում վստահության միջոցներից անցնել վստահության խոշորամասշտաբ քաղաքականության, որը և աստիճանաբար կձևավորի համապարփակ անվտանգության համակարգը։ Բայց այդ քաղաքականությունը պետք է հիմնված լինի քաղաքական հայտարարությունների և ռեալ դիրքորոշումների միասնության վրա։

Անվտանգության համապարփակ համակարգի գաղափարը մեր ընդհանուր մոլորակային տանը կյանքի հնարավոր նոր կառուցվածքի սկզբնական նախագիծն է։ Այլ կերպ ասած, դա ապագայի անցագիրն է, որտեղ ամենքի անվտանգությունը յուրաքանչյուրի անվտանգության գրավականն է։ Հուսով ենք, որ ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի նստաշրջանում այս գաղափարը համատեղ կզարգացվի և կկոնկրետացվի։

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

**Ք**ՍԱՆԵՐՈՐԴ ՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԻ պատմական տարեգրության մեջ չկա ավելի տպավորիչ ու դարակազմիկ իրադարձություն, քան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն է, որը դրեց նոր հասարակական տնտեսական ֆորմացիայի կազմավորման և աշխարհի հեղափոխական նորացման սկիզբը: Մեծ Հոկտեմբերը մարքսիզմ-լենինիզմի իսկական հաղթանակն էր, հասարակական զարգացման նրա բացահայտած օրենքների իսկության հաստատումը: 70 տարի առաջ սոցիալիզմը տեսությունից դարձավ իրականություն և անցած այդ ամբողջ ժամանակամիջոցում համոզչորեն ապացուցեց իր կենսական ուժը: Մեր բազմազգ հայրենիքի ժողովուրդները, որ ուս-ուսի անցան նոր հասարակության կառուցման բարդ ճանապարհը, դիմակայեցին և հաղթեցին ֆաշիզմի դեմ դաժան գոտեմարտում, լավ գիտեն, թե ինչ բան է աշխատանքային ու մարտական սխրանքը, ինչ բան է փոխօգնությունը, գիտեն, թե ով ենք մենք, որտեղից են գալիս մեր արմատները և ինչ ենք ստացել հեղափոխության ու սոցիալիզմի զարգացման շնորհիվ: «Մենք բոլորս էլ սերում ենք Հոկտեմբերից,— ասաց Մ. Ս. Գորբաչովը մասսայական ինֆորմացիայի միջոցների և ստեղծագործական միությունների ղեկավարների հետ ՍՄԿԿ Կենտկոմում ունեցած հանդիպման ժամանակ,— և մեր այսօրվա հասարակությունը 70-ամյա հետհոկտեմբերյան զարգացման արգասիքն է: Դա մեր ընդհանուր հարստությունն է: Դա շրջադարձային կետ է մարդկության պատմության մեջ, ճանապարհ է դեպի նոր աշխարհ»:

Սովետական եղբայրության խոր ակունքները մեր հասարակարգի հումանիստական գաղափարախոսության մեջ են: Այսօր սովետական ժողովուրդը հանդես է գալիս որպես որակապես նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրություն՝ զոդված տնտեսական շահերի, գաղափարախոսության ու քաղաքական նպատակների միասնությամբ: Մեր երկրի աշխատավորների ինտերնացիոնալ միասնության մեջ էր Վ. Ի. Լենինը տեսնում սոցիալիզմի հաջող կառուցման հիմքը: «Սոցիալիստական շարժումը,— գրել է նա,— ... ստեղծում է մարդկային համակեցության նոր, բարձրագույն ձևեր, երբ ա մ ե ն մ ի ազգության աշխատավոր մասսաների օրինական պահանջմունքներն ու առաջադիմական ձգտումներն առաջին անգամ կբավարարվեն ինտերնացիոնալ միասնության մեջ» (ԵԼԺ, հ. 26, էջ 44—46): Եվ բոլշևիկյան կուսակցության, բանվորների ու գյուղացիների աշխարհում առաջին պետության հիմնադիրը այդպիսի միասնության օրինակ էր ուզում տեսնել Անդրկովկասյան սովետական հանրապետությունները: Նա վստահություն էր հայտնում, որ «նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (ԵԼԺ, հ. 43, էջ 237): Այս խոսքերը վերցված են Վ. Ի. Լենինի՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների Հանրապետության կոմունիստ ընկերներին» պատմական նամակից, որը դարձավ Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների գործողությունների ծրագիրը: Դրա մեջ Իլյիչը խորհուրդ էր տալիս ստեղծագործաբար օգտագործել սովետական Ռուսաստանի փորձը և, հաշվի առնելով իրենց հանրապետությունների յուրահատկությունները, անցում իրականացնել դեպի սոցիալիզմ, աշխատանք ծավալել զարգացնելու արտադրողական ուժերը, էլեկտրիֆիկացումը, ոռոգումը, առևտուրը, հոգ տանել բանվորների ու գյուղացիների բարեկեցության բարձրացման մասին:

Լենինյան այս պատգամն է կարմիր թելի պես անցնում Անդրկովկասի աշխատավորների բոլոր գործերի ու մեծագործությունների միջով։ Նրանց բարեկամությունը, փոխադարձ կապերն ու փոխօգնությունը, որ սկիզբ են առնում դարերի խորքից, պետական իշխանության տարիներին ստացան նոր ձևեր, հագեցվեցին նոր բովանդակությամբ՝ սովետական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի սկզբունքներով։ Հանրապետությունները ապրում են միասնական աշխատանքային ռիթմով։ Այսօր գործում են ռեգիոնի միասնական էներգետիկ և տնտեսական համակարգեր։ Սերտ կապերի մեջ են մեր հանրապետությունների գիտությունների ակադեմիաները, բարձրագույն ուսումնական հաստատությունները։ Գոյություն ունի գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի միասնական համակարգ։ Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմների համատեղ որոշումներով այն պարբերաբար համալրվում է, սրբագրվում՝ նոր պայմաններին համապատասխան։ Միայն վերջին ժամանակներս ընդունվել է այդպիսի երկու որոշում, և մշակվել են դրանք իրականացնելու համապատասխան միջոցառումներ։

Ինտերնացիոնալ կապերի գանձարանում առանձնակի տեղ են գրավում Անդրկովկասի ձեռնարկությունների, շրջանների, քաղաքների մրցությունն ու փոխօգնությունը, Քութայիսի և Կիրովաբադի, Կիրովականի և Սումգայիթի, Ռուսթավի և Լենինականի, հանրապետությունների մայրաքաղաքների 26 կոմիսարների անունը կրող շրջանների բազմազգ աշխատավորական կոլեկտիվների փորձը, Մառնեուլի, Իջևանի և Ղազախի շրջանների երիտասարդության ավանդական հանդիպումները, «Անդրկովկասյան գարուն» երաժշտական փառատոնի անցկացումը, թատերական և էստրադային լավագույն կոլեկտիվների հյուրախաղերը, թերթերի և հանդեսների համատեղ համարների, փոխադարձ էջերի լույսընծայումը, հեռուստատեսային և ռադիոհաղորդումների փոխանակումը։ Աշխատանքային այդպիսի մրցակցությամբ և ստեղծարար համագործակցությամբ կյանքի է կոչվել իրենց ձեռք բերած նվաճումները փոխանակելու, պլանների և պարտավորությունների կատարման աշխատանքի ընթացքին միմյանց հաղորդակից դարձնելու, հասունացած պրոբլեմների և հառնող դժվարությունների շուրջը միմյանց հետ խորհրդակցելու և միասին դրանք հաղթահարելու արդյունավետ ուղիներ գտնելու բարի ավանդույթը։

Այսօր Անդրկովկասյան հանրապետությունների կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները որոշում են էկոնոմիկայի մեջ, հոգևոր ու մշակութային ոլորտներում ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի (1985 թ.), կուսակցության XXVII համագումարի նախանշած և Կենտկոմի հունվարյան ու հունիսյան (1987 թ.) պլենումների փաստաթղթերի մեջ կոնկրետացված մասշտաբային, շեշտակի բեկման իրականացման կոնկրետ քայլերը։ Ոչ թե խոսքով, այլ գործով ինտերնացիոնալիզմը ամենից առաջ երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի մեջ անդրկովկասյան ռեգիոնի ավանդի մեծացումն է, Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում ստեղծված գիտաարտադրական պոտենցիալի անշեղ բարձրացումը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների լուծմանը ավելի ակտիվ մասնակցությունը։

Վերակառուցման տեսությունը սահմանված է ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումի կողմից։ Դրա առանցքը սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերի զարգացումն է, ժողովուրդ, որը բազմիցս աշխարհին ցույց է տվել ամենադժվարին պայմաններում ամենաբարդ խնդիրներ լուծելու իր ունակությունը։ Բայց, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում (1987 թ.), վերակառուցման առաջին քայլերը բացահայտել են ոչ քիչ թվով ամենասուր հարցեր, մեր էկոնոմիկայում առկա բազմաթիվ «ցավոտ կետեր»։ Պլենումն ընդգծեց կուսակցության, նրա բոլոր օղակների, յուրաքանչյուր կոմունիստի բացառիկ պատասխանատվությունը նախանշված ստրատեգիայի հետևողական, անշեղ, հաստատակամ իրականացման համար։

«Կուսակցության անդամներն իրենց աշխատանքային կարգապահությամբ ու եռանդով պետք է ընթանան բոլորի առջևից...»։ Նոր աշխարհի



արարման լարված պայքարով լի հրաշունչ տարիների հեռվից Լենինի այս խոսքը այսօր էլ մեզ համար հնչում է որպես անփոփոխ պատգամ։ Դրա խոր էությունն արտացոլված է կուսակցության կանոնադրության մեջ, դա ամրակայվել է Լենինի կուսակցության սերունդների գիտակցության մեջ։ Այսօր տեղի ունեցող վերակառուցման պայմաններում, ինչպես երբեք, կարևոր է այդ պատգամը մարմնավորել յուրաքանչյուր կոմունիստի կոնկրետ գործերի ու արարքների մեջ։

Հաշված օրեր են մնում մինչև մեծ Հոկտեմբերի տոնը, որը, ըստ վաղեմի ու բարի ավանդույթի, սովետական բազմազգ ժողովուրդը սովոր է դիմավորել աշխատանքային հաջողություններով։ Ինչպես ցույց են տալիս վիճակագրական տվյալները, 12-րդ հնգամյակի անցած շրջանում Անդրկովկասյան հանրապետություններից յուրաքանչյուրը առաջընթաց մեծ քայլ է արել։ Բայց չօգտագործված ռեզերվներ դեռ կան։ Այդ մասին են խոսում քաղաքի և գյուղի առաջավոր կոլեկտիվների հաջողությունները, այն կոլեկտիվների, որոնք իրենց հայրենանվեր աշխատանքով, նորարարական խիզախությամբ, հասարակության բարոյական առողջության մասին անկեղծ ու գործուն հոգատարությամբ ապացուցում են, որ սովորական պայմաններում, սովորական միջոցներով ևս, բայց ջերմ սրտով ու հմուտ գործելակերպով կարելի է հասնել այնպիսի արդյունքների, որոնք դեռ երեկ թվում էին անհասանելի։ Դրա մեջ է Հոկտեմբերի իդեալներին նվիրվածության հաստատումը։ «Հոկտեմբերի իդեալները կոչում են աշխատանքի հանուն սովետական ժողովրդի բարօրության, հանուն հայրենիքի բարգավաճման, հանուն սոցիալիզմի և խաղաղության։ Արդ, մի ամբողջության մեջ միավորենք մեր բանականությունը, մեր կամքը, մեր եռանդը։ Այդ անհաղթահարելի ուժը ի սպաս դնենք մեր առջև կանգնած նոր խնդիրների լուծմանը։ Կատարենք ամբողջ նախատեսվածը։ Ըստ արժանվույն շարունակենք Հոկտեմբերի հեղափոխական գործը»։

Սովետական ժողովրդին կուսակցության Կենտկոմի ուղղած Դիմումից բերված այս խոսքերը հարգանքով և հավատով են համակում կոմունիստների, սովետական մարդու նկատմամբ։ Կենտկոմը դիմել է մեր աշխատանքային պատվին, պրոֆեսիոնալ հպարտությանը, հայրենասիրությանը, բանականությանը և փորձին, արիությանը, քաղաքացիական զգացումներին։ Դինամիզմով և դրական փոփոխություններով լի մեր ժամանակը տալիս է ամենուրեք դրանք դրսևորելու մեծագույն հնարավորություններ։

Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմների տեսական ու քաղաքական հանդեսների համատեղ համարի նյութերը հնարավորություն են տալիս տեսնելու, որ կուսակցության կոչը ջերմ արձագանք է գտել Անդրկովկասի աշխատավորների շրջանում։ Եղբայրական հանրապետությունների կյանքը բնութագրվում է բնակչության բոլոր խավերի քաղաքացիական ակտիվության աճով, նոր հարցերի առաջադրման նախաձեռնությամբ։ Նորացման պրոցեսն ընդունում է ավելի կոնկրետ ձևեր, ընդգրկում ավելի լայն շրջանակի պրոբլեմներ։

Մեր երկիրը, միութենական յուրաքանչյուր հանրապետություն հսկայական ճանապարհ են անցել մեծ Հոկտեմբերից հետո։ Մենք բոլորս ապրում ենք ինչպես եղբայրներ, հավասարների մեջ հավասար։ Մենք հպարտանում ենք մեր ապրած յուրաքանչյուր օրով,— ասել է Մ. Ս. Գորբաչովը։ Եվ յուրաքանչյուր օրը մեզ համար թանկ է, նույնիսկ, երբ այն շատ ծանր է եղել։ Որովհետև դա եղել է պատմության մեր դպրոցը, դրանք եղել են մեր պատմական դասերը։

Մեզ մեծ երջանկություն է բաժին ընկել՝ մեզ զգալու որպես սոցիալիստական հասարակության մարդ, որն իր ողջ էությամբ պատկանում է Հոկտեմբերի դրոշի ներքո միավորված ժողովուրդների մեծ համագործակցությանը։ Սովետական մարդու այս վսեմ զգացումը իր խտացված արտահայտությունն է գտել ՍՍՀՄ հիմնի՝ ամենքիս հարազատ տողերում.

Փա՜ռք քեզ, երկի՜ր հզոր, մեր հայրենիք ազատ,
Ժողովրդոց դաշինքի հենարան։
Կուսակցությունը Լենինի՝ ուժը մեր մեծ ժողովրդի,
Մեզ կոմունիզմ է տանում հաղթական։

Հոկտեմբերը մարդկանց ճակատագրում

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆԸ՝ ԻՐԱԿԱՆ ԵՐԱՇԽԻՔՆԵՐ

**Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
«Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավարների բրիգադավար,
ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ,
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ դիմորոշ ճյուղերից մեկը քիմիան է, որը հանրապետության տնտեսական քարտեզի վրա ներկայացված է ինչպես միութենական նշանակության հսկաներով, այնպես էլ «փոքր» քիմիայի բավական տպավորիչ համալիրով։ Էկոնոմիկայում ճյուղի տեսակարար կշռին ուղիղ համեմատական է այն դերը, որ ունի քիմիագործների բանակը հանրապետության հասարակական-տնտեսական կյանքում։

Գրեթե կես դար է ահա, ինչ ապարատավար եմ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում։ Կարող եմ վկայել. հանրապետության սոցիալ-քաղաքական կյանքում շատ թե քիչ նշանակալից որևէ իրադարձություն չի եղել, որին իր ակտիվ մասնակցությունը չբերեր կաուչուկագործների փառաբանված կոլեկտիվը։

Ես պատիվ եմ ունեցել իմ կոլեկտիվը քանիցս ներկայացնելու երկրի ու հանրապետության պետական իշխանության մարմիններում, իսկ Հայաստանի կոմկուսի վերջին երկու համագումարներից հետո ընտրվել եմ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ։ Շատ հեռու եմ այս ամենն իմ անձնական ծառայություններին վերագրելու մտքից։ Դա իմ կոլեկտիվի վաստակի գնահատականն է, և թող ասածս ավելորդ համեստություն չհամարվի, իմ փոխարեն նման պատվի կարող էին արժանանալ տասնյակ այլ կաուչուկագործներ, ուրիշ մասնագիտությունների բանվորներ, որոնք, համոզված եմ, ոչ պակաս հաջողությամբ կարդարացնեին ցուցաբերված վստահությունը։

Առհասարակ այն կարծիքին եմ, որ մեր ամենամեծ նվաճումներից մեկը ժամանակակից բանվոր մարդն է։ Սերված լինելով մեծ Հոկտեմբերից, ժառանգելով հեղափոխական բանվոր դասակարգի մարտական տոկունությունն ու հեղափոխական համոզվածությունը, յուրացնելով արդի գիտության և տեխնիկայի նվաճումները, նա իր մասնագիտական բնութագրով ու սոցիալական որակներով ըստ էության բանվորի բոլորովին նոր տիպ է, որի ուժերից վեր չեն էլեկտրոնային հաշվիչ տեխնիկան կամ տեխնոլոգիական բարդ սարքավորումները։ Դիտելով, թե ինչպես են իմ երիտասարդ ընկերները գործի դնում հայրենական ու արտասահմանյան ամենաբարդ տեխնիկան, ես ակամա վերհիշում եմ 1940 թվականը, երբ, տակավին պատանի, ոտք դրի Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարան։ Այն ժամանակ բանվորները, ոտքերը քշտած, տրորում էին լատեքսը՝ կաուչուկն անջատելու համար։ Ինչ խոսք, դիտելն անգամ հաճելի չէր։ 50-ականի սկզբներին մենք դեռ կաուչուկ էինք արտադրում այդ նույն, մեղմ ասած, պարզունակ եղանակով։ Երևանը քլորոպրենային կաուչուկի միակ մատակարարն էր երկրում (այսօր էլ նա միակն է) և արդեն այդ հանգամանքը մարդկանց պարտավորեցնում էր հաղթահարել



ամեն դժվարություն՝ իր որակով եզակի կաուչուկի նկատմամբ երկրի պահանջարկը բավարարելու համար։

Շատ ժամանակ է անցել այն օրերից։ Հիմնովին փոխվել է արտադրությունը, մի քանի տասնյակ անգամ ավելացել է կաուչուկի թողարկման ծավալը։ Ժամանակի ոգին մեզ մոտ կարելի է զգալ ամեն քայլափոխի։ Արդեն սույն գիտաարտադրական միավորում անունը շատ բան է ասում. մեր գիտահետազոտական ինստիտուտում հաջողությամբ լուծվում են կաուչուկի արտադրության ու տեխնոլոգիայի կատարելագործման հետ կապված մի շարք պրոբլեմներ, և այս առումով «Նաիրիտը» այսօր դարձել է քիմիական գիտության ճանաչված կենտրոններից մեկը։ Արդեն երկրորդ հնգամյակն է, ինչ միավորումում հետևողականորեն իրականացվում է արտադրության տեխնիկական վերազինումը։ Դադարեցվել է երեք հին արտադրամասի շահագործումը, գործարկվել են երկու նորերը, որոնք շատ բանով փոխել են արտադրության դեմքը։ Աշխատելով տնտեսավարման նոր եղանակով և պետընդունման պայմաններում, «Նաիրիտը» կատարել ու գերակատարել է ինչպես 1986 թվականի, այնպես էլ ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանները։

Իհարկե, մենք պրոբլեմներ ևս քիչ չունենք։ Ես նկատի ունեմ նախ և առաջ էկոլոգիայի հետ առնչվող հարցերը, որոնց լուծումը պահանջում է տեղական ու միութենական մարմինների ամենագործուն ու շուտափույթ միջամտությունը։ Երևանցիներին խորապես անհանգստացնում են հատկապես պարբերաբար կրկնվող վնասակար նյութերի արտանետումները, որոնք էկոլոգիական առումով ուղղակի տագնապալի իրադրություն են ստեղծում քաղաքում։ Վերջերս մեզ մոտ էր գտնվում միութենական կառավարության հանձնախումբը, որն ուսումնասիրում էր Երևանի էկոլոգիական վիճակը։ Հանձնախմբի հետ որոշակի հույսեր կապելով հանդերձ՝ «Նաիրիտցիները», իրենց հերթին, եռանդուն միջոցներ են ձեռնարկում իրավիճակը կարգավորելու նպատակով։ Եկող տարի կգործարկվի քլորի նոր՝ անթափոն ու վտանգազերծ արտադրությունը, իսկ ավելի գլոբալ խնդիրը, որ մենք դրել ենք մեր առջև, դա մինչև հնգամյակի վերջը կաուչուկի արտադրությունն էկոլոգիապես անվտանգ դարձնելն է։

Մնացած խնդիրները, լինեն դրանք հանրապետական մասշտաբի, թե առանձին միավորման, կարող են հաջողությամբ լուծվել միայն վերակառուցումը ամենօրյա պրակտիկ քաղաքականությամբ իրագործելու պայմաններում։ Ինչպես հայտնի է, հենց այս հարցում հապաղելու համար մեր հանրապետական կուսկազմակերպությունը և նրա ղեկավարությունը խիստ ու միանգամայն արդարացի քննադատության ենթարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1987 թ.) պլենումում։ Որպես ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ՝ ես նույնպես այդ ամենի մեջ ունեմ մեղքի իմ բաժինը։ Նման իրավիճակի ստեղծման պատճառներից մեկը, իմ կարծիքով, ինքնահանգստացման տրամադրություններն էին, որ կային մեզանում։ Լճացման տարիներին հանրապետության էկոնոմիկայի համեմատաբար բարվոք վիճակը մեզ վրա, ըստ երևույթին, թմրեցնող ներգործություն ունեցավ, որից մենք չկարողացանք ժամանակին սթափվել...

Հունիսյան պլենումից հետո հանրապետությունում ակնհայտ տեղաշարժեր են նկատվում։ Մթնոլորտը այլ է նաև Կենտկոմի բյուրոյում։ Կարող եմ հավաստել, որ հարցերն այստեղ քննարկվում են շատ ավելի բարձր խստապահանջության ու սկզբունքայնության մթնոլորտում, վերակառուցման կուրսով առաջադրված խնդիրները անթերի լուծելու վճռականության պայմաններում։

Մեր դժվարությունները, իհարկե, աճի դժվարություններ են։ Ձեռք-ձեռքի տված՝ այս անգամ էլ մենք պատվով քննություն կբռնենք։ Ուզում եմ օգտվել ընձեռված այս լավ առիթից և մեր ամբողջ կոլեկտիվի, նրա տասնյակ ազգերի ու ազգությունների բոլոր ներկայացուցիչների, այդ թվում և իմ սրտակից բարեկամներ Վասիլ Օրմոցաձեի ու Մուստաֆա Խալիլովի անունից ջերմագին ողջույններ ու լավագույն բարեմաղթություններ հղել մեր երեք եղբայրական հանրապետությունների աշխատավորներին։





# ԸՆԹԱՆԱԼ ԿՅԱՆՔԻ ՀԵՏ ՀԱՄԱՔԱՅԼ

**Խ. ԱՅԲԱ**
**Գուդաութայի շրջանի Լիխնա գյուղի կոլտնտեսության նախագահ**

*ԵՍ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ այն սերնդից եմ, որը զենքը ձեռքին անցավ մեծ Հայրենականի ճանապարհներով։ Ռազմաճակատում եղել եմ քաղցել ու հետախույզ, մասնակցել Ռումինիայի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի, Ավստրիայի ազատագրմանը...*

*Իսկ հետպատերազմյան շինարարության տարիներին, երբ երկիրը առանձնապես տնտեսական կադրերի կարիք էր զգում, Աբխազիայի կուսակցական կազմակերպությունը ինձ սովորելու ուղարկեց Մոսկվայի տնտեսական աշխատողների բարձրագույն դպրոց։ Այն ավարտելուց հետո ինձ առաջարկեցին մերձմոսկովյան տնտեսություններից մեկի դիրեկտորի պաշտոնը, բայց ինձ ձգում էր հայրենի երկրամասը՝ Գուդաութան։ Շուտով այստեղ գալուց հետո գլխավորեցի շրջանի Ացղի գյուղի կոլտնտեսությունը, որ հետամնաց տնտեսություններից էր։ Բայց շատ չանցած հաջողվեց այն ոչ միայն դուրս բերել ճեղքվածքից, այլև դարձնել առաջավոր։*

*Մինչ այդ սկսել էր դիրքերը զիջել Լիխնա գյուղի՝ հանրապետությունում լայնորեն հայտնի կոլտնտեսությունը, որն ստեղծվել էր 5 տնտեսության բազայի վրա, և կուսակցության Գուդաութայի շրջկոմի բյուրոն երաշխավորեց այդտեղ նախագահ աշխատելու ինձ։ Բախտս բերեց. հեշտությամբ և արագորեն ընդհանուր լեզու գտա տնտեսության ինչպես շարքային անդամների, այնպես էլ ղեկավար կազմի հետ։ Կուսակցական կազմակերպության հետ համատեղ կոլտնտեսության վարչությունը կատարեց կադրերի որոշ վերատեղաբաշխումներ՝ կոմունիստներին կցելով առավել հետ մնացող տեղամասերը։ Եվ այդ աշխատանքը տվեց իր արդյունքները. մեկ տարում տնտեսությունը շեշտակիորեն բարելավեց իր ցուցանիշները և շուտով դարձավ ամենաշահութաբերներից մեկը երկրում։ Ահա նրա անցած ուղու մի քանի փուլեր։*

*1966 թիվ։ Տևական թերակատարումից հետո առաջին անգամ իրացվեց տեսակավոր թեյատերևի արտադրության և պետությանը դրա վաճառքի առաջադրանքը։ Նկատելիորեն աճեցին հացահատիկի, ծխախոտի բերքատվությունը, շերամի բոժոժի արտադրությունը։ Նախորդ տարվա համեմատությամբ ստացվեց մեկուկես անգամ ավելի միս ու կաթ։*

*1968 թիվ։ Սակավ շահութաբեր գյուղատնտեսական կուլտուրաները փոխարինվեցին ավելի հեռանկարային տնկարկներով։*

*1969 թիվ։ Կոլտնտեսությունն ստացավ «Սաքարթվելո» մակնիշի թեյահավաք երեք մեքենա, որոնց ղեկի մոտ նստեցին Եվտիխի Ռեխվիաշվիլին, Պավել Գունիան, Վլադիմիր Արշբան։ Հենց նրանք դրեցին թեյատերևի մեքենայացված հավաքման հիմքը։*

*1970 թիվ։ Տնտեսությունում որոշվեցին խաղողագործության զարգացման ուղիները։ Կերի բազայի ամրապնդման շնորհիվ շահութաբեր ճյուղ դարձավ անասնապահությունը։ Մեծ տարածության վրա սկսեցին ցանել միջանկյալ կուլտուրաներ, ֆերմային մերձակա տարածքում սարքավորվեց կանաչ հարահոս։*

*1982 թիվ։ Մշակվեց կոլտնտեսության պարենային ծրագիրը, որի կատարման ընթացքի մասին հաշվետվությամբ վարչությունը պարբերաբար հանդես է գալիս լիազորների ժողովի առջև։*

*1985 թվականը եզրափակվեց 800 հազար ռուբլի շահույթով։ Այդպիսի ցուցանիշի մասին մի քանի տարի առաջ անգամ երազել չէինք կարող։ Տնտեսության ընդհանուր եկամուտը գերազանցեց 3,5 միլիոն ռուբլուց։*

*1986 թվականը իմ կյանքում նշանավորվեց մի շարք կարևոր իրադարձություններով։ Աբխազիայի կուսակցական կազմակերպությունը ինձ ընտրեց Վրաստանի կոմկուսի XXVII համագումարի պատգամավոր։ Այդ նույն տարի մասնակցեցի երկրի կոմունիստների բարձրագույն համաժողովին։ Եվ, վերջապես, արժանացա սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման։*



*Հետհամագումարյան շրջանում կոլտնտեսությունը շարունակում է հաջողությամբ ավելացնել գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը։ Դրան նպաստում է այն, որ կոլտնտեսության բոլոր բրիգադները (իսկ դրանք 21-ն են) անցել են տնտհաշվարկի և կոլեկտիվ կապալի, այդ թվում՝ ընտանեկան։*

*Եվ ահա վրա հասավ 1987 թվականը, մեծ Հոկտեմբերի հոբելյանական տարին։ Ընթացիկ տարվա սկիզբը նույնպես նշանակալի եղավ ինձ համար։ Մասնակցեցի ՍՄԿԿ Կենտկոմում հունվարին կայացած խորհրդակցությանը, որտեղ քննարկվեցին կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսական մարմինների խնդիրները՝ կապված «Գյուղատնտեսության կազմակերպման ռացիոնալ ձևերի և տնտհաշվարկի ներդրման հիման վրա գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու անհետաձգելի միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման հետ։*

*Մոսկվայից վերադառնալուց անմիջապես հետո անցկացրինք կոլտնտեսային ակտիվի ժողով, որտեղ մշակվեցին գյուղատնտեսական արտադրության հետագա ավելացման հանձնարարականներ։*

*Բայց դեռ գործի կեսն է արված։ Այսօր պետք է աշխատենք ավելի լավ, քան երեկ, բայց արդեն վաղը դա էլ չի բավարարի։ Հարկավոր է ընթանալ կյանքի հետ համաքայլ։ Մեր կուսակցության XXVII համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումները (1987 թ.) սահմանեցին վերակառուցման ստրատեգիական կուրսը, որի հաջող իրականացումը կախված է հենց մեզանից, աշխատավորներիցս։ Պաշտպանելով վերակառուցումը, չի կարելի հույսը դնել միայն ուրիշների վրա, հարկավոր է գործել անձամբ, գործել եռանդագին և նպատակադիր։ Մենք լի ենք վճռականությամբ՝ արդեն ընթացիկ տարում հասնել նոր հաջողությունների, մինչև Մեծ Հոկտեմբերի 70-ամյակը զեկուցել գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերման պլանի կատարման մասին։*

---

# ՀՊԱՐՏԱՆՈՒՄ ԵՎ ԻՄ ՊԱՐՏՔՆ ԵՄ ՀԱՄԱՐՈՒՄ

**Ս. ՆԱՄԱԶՈՎԱ**
**Ադրբեջանական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, ՍՍՀՄ ԲԳԱ թղթակից անդամ, գիտության վաստակավոր գործիչ, հանրապետության պետական մրցանակի դափնեկիր**

*ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ սովետական ժողովրդի բարձրագույն ազգային հպարտության առարկան է։ ՍՄԿԿ Կենտկոմի Դիմումի այս խոսքերը համահնչուն են իմ մտքերին ու զգացումներին։ Խորհրդանշականորեն ես այն պատկերացնում եմ իբրև արև, որի ճառագայթները ջերմացրել և ուժ են ներարկել միլիոնավոր մարդկանց։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, 20-րդ դարի ամենաակնառու իրադարձությունը, դարձավ մեր երջանիկ կյանքի առաջին էջը։*

*Լավ եմ հիշում հորս պատմածները, որը Աղդամի շրջանի Սեյիդլի գյուղի բատրակներից էր և հեղափոխական աշխատանք էր տանում ամենաչքավոր գյուղացիների շրջանում։ Իսկ երբ Ղարաբաղ մտավ 11-րդ կարմիր բանակը, նա կանգնեց դրա շարքերում։ Սովետական իշխանության հաստատումից հետո նա, մյուս բոլշևիկների հետ միասին, Կելբաջարի և Լաչինի մոտակա լեռներում կռիվ էր մղում դասակարգային թշնամիների դեմ։ Ամեն անգամ, երբ լինում եմ Աղդամում, անպայման այցելում եմ տեղի պատմագավառագիտա-*

կան թանգարան, որտեղ հատուկ վահանակի վրա ներկայացված են հորս՝ Ասադ Նամազովի հեղափոխական գործունեության մասին պատմող լուսանկարչական նյութեր ու փաստաթղթեր։

Ես հպարտանում եմ դրանով և պարտքս եմ համարում այնպես ապրել ու աշխատել, որ պահպանվեն և բազմապատկվեն բոլշևիզմի հերոսական ավանդույթները, որոնց հիմքը դրել է նախորդ սերունդը։

Ինձ ամեն ինչ տվել է Հոկտեմբերը, ամեն ինչ տվել է սոցիալիզմը։ Եվ այն, որ Բաքվում ու Մոսկվայում սովորելուս տարիներին աշխարհահռչակ գիտնականների ցույց տված օգնության և ուշադրության շնորհիվ ես 37 տարեկան հասակում Ադրբեջան վերադարձա որպես բժշկական գիտությունների դոկտոր, դա նույնպես կապում եմ սոցիալիստական հեղափոխության հետ։ Այլ պայմաններում, մեկ ուրիշ հասարակարգում, բատրակի աղջիկը հազիվ թե երազեր մանկագիտության մեջ այդպիսի բարձունքի հասնելու մասին, ինչպիսին բախտ վիճակվեց ինձ։ Ես առիթ եմ ունեցել մասնակցելու մեր երկրում, ինչպես նաև Չեխոսլովակիայում, Բուլղարիայում, Անգլիայում, Ճապոնիայում, Ավստրիայում, Հնդկաստանում, Իտալիայում, Ալժիրում, Բելգիայում կայացած միջազգային համաժողովների ու կոնգրեսների։ Եվ ամեն տեղ ներկայացրել եմ մեր մեծ բազմազգ հայրենիքը։ Կարիք կա՞, արդյոք, ասելու, թե ինչպիսի հուզմունք և միաժամանակ բարձր պատասխանատվության զգացում եմ ապրել։ Հիշում եմ մի դեպք ՍՍՀՄ մանկաբույժների 10-րդ համագումարից։ Պլենար նիստերից մեկի ժամանակ, երբ ես էի վարելու, հայտարարեցին իմ գիտական տիտղոսները, նշելով նաև, որ Ն. Նարիմանովի անվան № 1 ադրբեջանական բժշկական ինստիտուտի մանկական հիվանդությունների ամբիոնի վարիչ եմ, ՍՍՀՄ մանկաբույժների ընկերության նախագահության անդամ։ Նիստից հետո ինձ մոտեցավ համագումարի մասնակից մի օտարերկրացի և հարցրեց, թե ինչպես է ինձ հաջողվել այդքան տիտղոսներ նվաճել։ Պատասխանս եղավ կարճ ու կտրուկ. մենք ապրում ենք սովետների երկրում։

Հաճախ է հարկ լինում ուսանողներին, ինչպես նաև արտասահմանյան հանդիպումների ժամանակ գործընկերներին պատմել Ադրբեջանում և ՍՍՀՄ-ում մանկական սրտաբանության զարգացման, մոր ու մանկանը ցույց տրվող բուժօգնության, այդ հարցերի նկատմամբ կուսակցության և կառավարության մշտական ուշադրության մասին։ Դրա ևս մեկ վկայությունն է ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Տասներկուերորդ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում ՍՍՀՄ բնակչության առողջության պահպանության զարգացման և առողջապահության վերակառուցման հիմնական ուղղությունները» նախագիծը։

Այդ փաստաթուղթը մեծ խնդիրներ է դնում բոլոր սովետական մարդկանց առջև, հատկապես առողջապահության աշխատողների առջև։ Հարկավոր է արմատապես բարձրացնել ցույց տրվող բուժօգնության որակը, ուժեղացնել մոր ու մանկան առողջության պահպանությունը, բժշկական կադրերի տեսական ու գործնական պատրաստությունը։

Ոչ մի բանի հետ չի կարելի համեմատել այն բերկրանքը, որն ապրում ես հիվանդ երեխային ապաքինելիս, նրան իր ժպիտը վերադարձնելիս։ Այդպիսի զգացումով եմ ես որպես բժիշկ ամեն օր աշխատանքի գնում Ա. Կարաևի անվան միացյալ մանկական կլինիկա։ Իսկ երբ լսարան եմ մտնում և տեսնում ուսանողներին, ինձ հանգիստ չի տալիս այն ցանկությունը, որ նրանց տամ ոչ միայն նոր գիտելիքներ, այլև այն բանի հաստատ ըմբռնումը, որ հենց երիտասարդների հանգիստ, երջանիկ, խաղաղ կյանքի համար են պատմության ճանապարհներին իրենց կյանքը զոհաբերել հեղափոխականները, նախագնացները։

Ներկայումս մեր կյանքում կատարվում է հասարակության բոլոր ոլորտների որակական նորացում։ Առաջնակարգ կարևորություն ունեցող գործ է, երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման մարդասիրական և ազնիվ նպատակ է յուրաքանչյուր սովետական մարդու առողջության բարելավումը։ Եվ այդ հերթափոխը կրում են բժիշկները։ Ես անչափ երջանիկ եմ, որ գտնըվում եմ նրանց շարքերում։

---

ՍՄԿԿ XXVII համագումար.

տեսություն և պրակտիկա

# ՋԵՐՄԱՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԱՂԵՏԻ ՍՊԱՌՆԱԼԻՔԸ ԵՎ ԿՅԱՆՔԻ ԻՄԱՍՏԻ ՊՐՈԲԼԵՄԸ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու**

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ամենանշանակալի իրադարձություններից մեկի՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակը մեզ մղում է խորհրդածությունների ոչ միայն սովետական հասարակության, այլև համայն մարդկության անցած ուղու, ներկայի և ապագայի շուրջ։ Մարդկային քաղաքակրթության այսօրվա բարդ ու տագնապալի վիճակը թույլ է տալիս նորովի գնահատելու այն հիրավի փրկարար դերը, որ խաղաց մարդկության բախտում մեծ Հոկտեմբերը։

Այսօր պետք չէ երևելի քաղաքագետ լինել ըմբռնելու համար մարդկությանն սպառնացող ջերմամիջուկային աղետի ողջ լրջությունը։ Մարդկային քաղաքակրթությունն ընդհուպ մոտեցել է ինքնակործանման անդունդին։ ՍՄԿԿ XXVII համագումարը բնութագրեց մեր ապրած ժամանակաշրջանը որպես մարդկային պատմության ամենատագնապալի ժամանակահատվածը, երբ ավերման միջոցների որակապես նոր մակարդակը «պատմության մեջ առաջին անգամ մարդուն «օժտել» է Երկրի վրա ամբողջ շնչավորը ոչնչացնելու ֆիզիկական ունակությամբ» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1986, էջ 14)։

Մոլորակի բոլոր առաջադեմ մարդիկ խորապես անհանգստացած են ստեղծված իրավիճակով։ Ակտիվացել են խաղաղասիրական ուժերը, հասարակական կարծիքը, միջազգային շատ կազմակերպություններ։ Մարդկության բնաջնջման սարսափազդու հեռանկարը օրվա խնդիր է դարձրել արդի ժամանակաշրջանին համապատասխանող նոր մտածելակերպի ձևավորումը, դրա հիման վրա՝ միջպետական հարաբերությունների կարգավորումը և երրորդ համաշխարհային պատերազմի վտանգի չեզոքացումը։

Ներկա իրադրությունը յուրովի է դնում նաև մի շարք փիլիսոփայական, աշխարհայացքային պրոբլեմներ, այդ թվում մի այնպիսի հինավուրց հարցադրում, ինչպիսին է մարդկային կյանքի իմաստը։ Ինչպես ամեն մի ճշմարիտ փիլիսոփայական պրոբլեմ, սա ևս հավիտենական պրոբլեմ է։ Իրոք, ոչ մի ժամանակաշրջան չի կարող հավակնել վերջնական լուծման, որը դառնար պատրաստի պատասխան հաջորդ սերունդների համար։ Քանի դեռ մարդիկ ունակ կլինեն դատողություններ անելու աշխարհի և աշխարհում իրենց տեղի մասին, նրանք միշտ էլ յուրովի են լուծելու աշխարհի ճանաչելիության, ճշմարտության, կյանքի իմաստի, երջանկության, իդեալի և մնացած բոլոր փիլիսոփայական պրոբլեմները։

Այնուամենայնիվ, մեր ապրած ժամանակաշրջանը եզակի է հենց մարդկային կյանքի իմաստի էության տեսակետից։

Բանն այն է, որ նախկինում երբեք այս աստիճանի իրական չի եղել մարդկության իսպառ բնաջնջման հնարավորությունը։ Եղել են, անշուշտ, մարդկության մոտալուտ կործանման, «աշխարհի վերջի» մասին կրոնական պատկերացումներ, սակայն երբեք դրա համար այսքան ռազմատեխնոլոգիական հիմք չի եղել։ Եվ եթե աստծու ցասման, արդարացի պատժի հետ կապվող աշխարհի կործանման պատկերները կարող էին միամիտ թվալ շատերին, ապա ներկայումս միայն գերլավատեսությամբ տառապողները կամ երդվյալ տեխնոկրատները կարող են չտեսնել իրական հեռանկարը։ Ահա այս աննախադեպ պայմաններում անհրաժեշտ է դառնում նորովի մոտենալ մարդկային կյանքի իմաստի պրոբլեմին, տեսնել դրանում մի նոր խորություն, որը նախկին դարաշրջաններում չէր կարող բացահայտվել։

Սկսենք այն բանից, որ անհատի տեսակետից, «ես»-ի գոյության փաստն արդեն բավարար է թվում ներքին իմաստավորման համար, և այդ իմաստը կարծես սահմանափակված է լոկ տվյալ «ես»-ի կյանքի շրջանակներով։ Առօրյա մտածողության մակարդակում էլ «ես»-ի կյանքի իմաստի որոնումները ներփակված են հենց «ես»-ի մեջ. տվյալ անձի մահը վերացնում է բուն իսկ հարցադրումը։ «Ինձանից հետո՝ թեկուզ ջրհեղեղ» հայտնի արտահայտությունը ոչ միայն անտարբերություն ու արհամարհանք է այլոց նկատմամբ, այլև լիովին բնական (ողջախոհության մակարդակում) եսակենտրոն դիրքորոշում, այն է՝ իմ կյանքը իմաստավորված է լոկ իմ կյանքի սահմաններում, դրանից այն կողմ ինձ ոչինչ չի հետաքրքրում և չի էլ կարող հետաքրքրել։ Ըստ էության, այս տեսակետին է յուրաքանչյուր չփիլիսոփայող անհատ, անգամ եթե դա երբեք չի խոստովանում և կամ չի էլ խորհրդածում առհասարակ դրա շուրջը։

Այդ նույն տեսակետից, գործն առերևույթ անգամ այնպես է ներկայանում, թե իբր հենց անհատի կյանքի անիմաստությունը հետևանք է այլոց կյանքի շարունակության փաստի՝ ես կմեռնեմ, ուրիշները ապրելու են, իմ բացակայությամբ ոչինչ չի փոխվելու աշխարհում և դա անարդարացի է։ Ինչ խոսք, նման հոգեբանության դեպքում անհնարին է մեղմել մահվան ողբերգությունը, փարատել իր «ես»-ի վերացման հեռանկարից տանջվող մարդուն։

Եթե, սակայն, խորանանք հարցի էության մեջ, ապա յուրաքանչյուր առանձին «ես»-ի կյանքը իմաստավորվում է նախ և առաջ շնորհիվ հենց այն հանգամանքի, որ այդ «ես»-ի վախճանով չի վերջանում մարդկությունը։ Իսկապես, ամենից առաջ մարդկության հարատևման փաստն է հենց, որ իմաստավորում է մարդու անհատական կյանքը։ Չէ՞որ մեզանից յուրաքանչյուրի կյանքը իրոք որ անիմաստ ու անտանելի կդառնա, եթե ստույգ իմանանք, որ մենք մարդկային վերջին սերունդն ենք։ Անտանելի, անադորույն տառապանք կդառնա նաև մահը. բուն մահվան գիտակցությունն արդեն, հիշյալ պարագայում, իմաստազուրկ է դարձնում մեր անձնական կյանքը։

Ահա թե ինչու միջուկային աղետի ներկայիս սպառնալիքի գիտակցումը մի նոր, ողբերգական երանգ է հաղորդում մարդու անձնական մահվան և ողջ մարդկության անմահության դիալեկտիկային։ «Մարդիկ դարերով որոնել են անմահության հասնելու ուղիներ,— շեշտեց Մ. Ս. Գորբաչովը այս տարվա փետրվարին «Հանուն միջուկազերծ աշխարհի, հանուն մարդկության գոյատևման» մոսկովյան միջազգային համաժողովի մասնակիցների հետ հանդիպման ժամանակ իր ճառում։— Դժվար է հաշտվել այն բանի հետ, որ մեզանից յուրաքանչյուրը մահկանացու է։ Բայց ամբողջ մարդկության, մարդկային բանականության վախճանականության հետ հաշտվելը անհնար է»։

Քննարկվող հարցի տեսանկյունից կարևոր է նկատել, որ սեփական «ես»-ի վախճանի անխուսափելիության հետ չհաշտվելու հոգեբանությունն իր հիվանդագին դրսևորումների ժամանակ ակամայից բացահայտում է առանձին «ես»-ի և մարդկության գոյության կապը, թեպետև, այսպես ասած, բացասական նշանով։ Իսկապես, թե՛ անցյալում, թե՛ ներկայում հանդիպում է նաև հետևյալ դիրքորոշումը. եթե հնարավոր չէ, որ իմ «ես»-ը հավերժ ապրի, ապա ինձ հետ թող կործանվի, ուրեմն, ամենայն ինչ։ Հեքիաթի այն թագավորը, որ մահվանից առաջ ուզում է թունավորել ջրերը և իր հետ գերեզման իջեցնել բոլորին, դրսևորել է այդ հոգեբանությունը ամենաանխառն ձևով։ Ո՞վ գիտե, մեր անցած-գնացած նախնիներից քանիսը կիրագործեին այդ մտադրությունը, եթե հնարավորություն ունենային։



Ներկայիս սերունդը նման հնարավորություն ունի։ Մարդկությունը ըստ էության արդեն զրկվել է իր անմահությունից, լիովին «հասունացել» միջուկային ինքնասպանության համար։ Դրա զանազան վկայություններն առկա են։ Մասնագետները հաշվել են, որ կուտակված մարտապաշարը թույլ է տալիս մեզանից յուրաքանչյուրին սպանել... մեկ միլիոն անգամ (ամեն մեկիս տասնհինգ գրամ պայթուցիկ նյութի փոխարեն բաժին է ընկնում տասնհինգ տոննա)։ Այնինչ մարդկությունը շարունակում է սպառազինությունների վրա ծախսել արդեն օրական երկու միլիոն դոլար։ Եթե այսօր միջուկային զենքին տիրապետում են մի քանի երկիր, ապա, մասնագետների հաշվարկներով, 2000 թվականին արդեն շուրջ 40 երկիր կարող են զինված լինել ատոմային ռումբով, ընդ որում այնպիսի երկրներ, ինչպիսիք են Իսրայելը, Պակիստանը, Հարավաֆրիկյան Հանրապետությունը և այլն։ Անգամ տեռորիստները մոտ ապագայում կարող են զինվել ատոմային ռումբով։ Եվ սրանք դեռ սոսկ քանակական ցուցանիշներ են։ Իսկ որակական գնահատականն ավելի տագնապալի է։

Ի. Կանտը տարբերում էր աշխարհի վերջի երեք տեսակ՝ բնական, գերբնական և հակաբնական։ Առաջին տեսակը համապատասխանելու է աստվածային իմաստության բարոյական նպատակներին, այլ կերպ ասած, երբ մարդկությունն սպառելու է ինքն իրեն և լիովին արժանի է լինելու աստծու ցասմանը։ Երկրորդ տեսակը «գերբնականն» է, մեզ համար անհասկանալի, մեր բուն իսկ ըմբռնմանն անմատչելի պատճառներից։ Աշխարհի կործանման երրորդ տեսակը Կանտն անվանում է «հակաբնական» կամ «այլասերված», այսինքն մի կործանում, «որը մենք ինքներս ենք առաջ բերելու վերջնական նպատակը մեր կողմից սխալ հասկանալու հետևանքով» (И. Кант, Трактаты и письма. М., 1980, с. 285)։ Կանտյան այս դատողության ռացիոնալ հատիկն ակնհայտ է. իսկապես հակաբնական պիտի անվանել հենց մարդկության ինքնակործանումը, այլ ոչ թե կործանումը որևէ արտաքին ուժից։ Այդ հակաբնական և հակաբանական ինքնակործանման ամենամռայլ նախակարապետն այն փաստն է, որ ներկայումս մարդկությունը կարող է կործանվել պատահականությունից, որևէ տեխնիկական վթարից։ Սպառազինությունների մրցավազքը, մահաբեր զենքի կուտակումը, ավերման նորանոր տեսակի միջոցների գոյացումը, միջուկային զենքի դուրս բերումը տիեզերք լրջորեն սպառնում են առհասարակ դուրս գալ մարդկային վերահսկողության շրջանակներից, ճակատագրական են դարձնում պատահականության միտումը։

Մարդկությունն իր ինքնապահպանումը չի կարող կապել ոչ աստվածատուր երաշխիքների, ոչ էլ արտաքին որևէ ուժի հետ։ Միակ բանական միջոցը մարդկության ներքին միավորումն է։ Իհարկե, տրամաբանական է ենթադրել (թեպետև դժվար է հարյուր տոկոսով երաշխավորել), որ արտաքին որևէ վտանգի դեպքում մարդկությունն իսկապես կմիավորվի։ Ահա թե ինչ է ասել այս առիթով Մ. Ս. Գորբաչովը վերը նշված համաժողովի մասնակիցներին. «Ժնևում կայացած հանդիպման ժամանակ ԱՄՆ-ի պրեզիդենտը այն միտքը հայտնեց, որ եթե աշխարհին սպառնա այլմոլորակայինների ներխուժում, Միացյալ Նահանգները և Սովետական Միությունը կմիավորվեն այդ հարձակումը հետ մղելու համար։ Չեմ վիճարկի այս հիպոթեզը, թեև այդ առթիվ տագնապահար լինելը, թերևս, վաղաժամ է։ Ավելի կարևոր է զբաղվել այն տագնապներով, որ արդեն մուտք են գործել մեր ընդհանուր տունը։ Տոգորվել միջուկային վտանգի վերացման անհրաժեշտության գիտակցումով, ընդունել, որ չկա մի այնպիսի երկրային կամ տիեզերական տանիք, որի տակ կարելի լիներ թաքնվել միջուկային ամպրոպը պայթելու դեպքում»։

Անտարակույս, մարդկության առողջ և կենսարար ուժերը չեն հանդուրժի, որ մի բուռ անպատասխանատու քաղաքագետներ իրենց արկածախնդրական ծրագրերով փաստորեն մահավճիռ կայացնեն մարդկության նկատմամբ։ Այնուամենայնիվ, իսկապես անմխիթար կլիներ ժամանակակից մարդկության վիճակը, մռայլ ու չարագուշակ՝ նրա ապագան, եթե մեծ Հոկտեմբերը ծնունդ

տավոր է գաղափարաքաղաքական, բարոյական և աշխատանքային դաստիարակության արդյունավետության համար։ Մարդկության կործանման հեռանկարում առավել աճում է թե անձնական կյանքի և թե ողջ մարդկության գոյության արժեքը, առավել կարևորվում է մոլորակի յուրաքանչյուր գիտակից բնակչի վերաբերմունքը այդ հարցերին։ Առհասարակ, մարդկության կործանման վտանգի գիտակցումը կարող է երկակի հետևանք ունենալ, հանգեցնել անձնային երկու տարբեր դիրքորոշման։ Այն կարող է բերել կամ անտարբերություն մարդկության ճակատագրի նկատմամբ, ուստի և անտարբերություն նաև հասարակական գործերի հանդեպ, ծայրահեղ անհատապաշտություն կամ էլ իրական անհանգստություն հասարակության ապագայի համար, ակտիվ սոցիալական գործողություններ։

Կոնկրետ անձնային դիրքորոշման ձևավորման մեջ վճռորոշ են ոչ միայն տվյալ անհատի ներքին, բարոյական հատկանիշները, այլև սոցիալական միջավայրի առանձնահատկությունները։ Անհատը չի կարող իրեն զգալ լիիրավ քաղաքացի, ուրեմն և՝ լիարժեք անձնավորություն, եթե սոցիալական հաստատությունները ոտնահարում են նրա իրավունքները, եթե նա զուրկ է հնարավորությունից՝ իր կարծիքը հայտնելու, իր մասնակցությունը բերելու աշխատավորական կոլեկտիվի, տվյալ բնակավայրի, հասարակության, ամբողջ մարդկության բախտը շոշափող վճիռների կայացմանը։ Անհատը չի կարող խորամուխ լինել մարդկային կյանքի իմաստի մեջ, իրեն զգալ որպես պատմության արարիչ, երբ «անփոխարինելի մարդիկ չկան» լոզունգի անվերջ թմբկահարումը նրա մոտ անխուսափելիորեն ծնում է սեփական «ես»-ի անզորության, ունայնության զգացում։ Այս առումով, սովետական հասարակության դեմոկրատացման ընթացքը անհրաժեշտություն է նաև փիլիսոփայող, իր կյանքի և ամբողջ մարդկության բախտի համար պատասխանատվության զգացող անհատի ձևավորման նպատակով։

Մարդկության ինքնակործանման վտանգի գիտակցումը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, արթնացնում է «մարդկության ինքնապահպանման դեռևս չյուրացված ուժեր» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 29)։ Այդ արթնացումը մինչև անձնային մակարդակը հասցնելու առավել բարենպաստ հնարավորություններով է օժտված սոցիալիստական հասարակարգը։ Կ. Մարքսը նկատել է, որ հատկապես «սոցիալիստական մարդու համար ամբողջ այսպես կոչված համաշխարհային պատմությունն այլ բան չէ, քան մարդու արարումը մարդկային աշխատանքով» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 42, стр. 126)։ Այսօր մենք տեսնում ենք, որ հատկապես սոցիալիստական մարդունն է օբյեկտիվորեն վիճակված խորապես գիտակցելու իր պատասխանատվությունը մարդկության ապագայի համար։ Այդ օբյեկտիվ, բարենպաստ հնարավորությունները օգտագործելու համար մեզ առաջին հերթին հարկավոր է էապես բարելավել բարոյական դաստիարակության ողջ դրվածքը, բարձր բարոյականությամբ տոգորել սովետական յուրաքանչյուր քաղաքացու։

Այսպիսով, մարդկության բնաջնջման վտանգը նորովի է դնում մարդկային կյանքի իմաստի հինավուրց պրոբլեմը։ Աշխարհի կործանման ռեալ հեռանկարը նոր սրություն է հաղորդում մոլորակի յուրաքանչյուր բնակչի կյանքի դրամային, մեծացնում է պահանջները մեզանից յուրաքանչյուրի ինքնուրույնության, պատասխանատվության զգացումի, կենսադիրքորոշման նկատմամբ։

Ժամանակակից մարդկությունը, հուսանք, կհաղթահարի ներկայիս ճգնաժամային վիճակը։ Մարդկային հաջորդ սերունդները յուրովի, իրենց ժամանակներին, իրենց առջև ծառացած խնդիրներին համապատասխան կդնեն կյանքի իմաստի պրոբլեմը։ Նրանց, անշուշտ, հարկ չի լինի մտահոգվելու մարդկության խսպառ բնաջնջման վտանգով։ Եվ այդ հաջորդ սերունդները մեր մասին դատելու են ոչ այնքան ըստ մեր գիտական և տեխնիկական նվաճումների, առավել ևս ոչ ըստ ռազմական հզորության, այլ ըստ մեր իմաստության, բարոյականության, մարդու և ողջ մարդկային քաղաքակրթության գոյության իմաստին տված մեր պատասխանների։

---

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՐԿԽՈՍԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԶԳԱՄԻՋՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒՄԸ

**Օ. ՋԻՈԵՎ**
**Վրացական ՍՍՀ ԳԱ թղթակից անդամ**

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ կարևորագույն նշանակություն է ստանում մտածողության վերակառուցումը։ Մենք չենք կարողանա էապես արագացնել հասարակության զարգացումը, եթե չհրաժարվենք սովորական, տարիներով ստեղծված ստերեոտիպերից, չհաղթահարենք պասսիվությունն ու անտարբերությունը, չսովորենք մտածել ու ապրել նորովի։ Ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու, գիտատեխնիկական առաջադիմությունը արագացնելու համար մենք պետք է հավատանք վճռական փոփոխությունների անհրաժեշտությանն ու հնարավորությանը, մեր եռանդն ուղղենք՝ վերացնելու այն ամենը, ինչը խանգարում է դրան։ Վերակառուցումը պետք է տարածվի կյանքի նկատմամբ ունեցած մեր ողջ վերաբերմունքի, մարդկանց, սեփական անձի, մի խոսքով, մեր ամբողջ կուլտուրայի և դրա մասին ունեցած մեր պատկերացումների վրա։ Եվ դա՝ ոչ միայն վերակառուցման, այլև բուն կուլտուրայի շահերից ելնելով։

Առօրյա կյանքում մենք խոսում ենք հասարակության և անձի, աշխատանքի ու ժամանցի, մարդկային հաղորդակցման կուլտուրայի մասին և այլն։ Բայց ամենից առաջ նկատի ունենք որոշակի ոլորտ՝ կրթության, գիտության և արվեստի ոլորտը։ Մենք համոզված ենք, որ կուլտուրայի զարգացման համար անհրաժեշտ են տնտեսական և սոցիալական պայմաններ, և մոռանում ենք այն, որ բուն կուլտուրան, օրինակ, աշխատանքի կուլտուրան, մարդկային հաղորդակցման կուլտուրան տնտեսական և սոցիալական ոլորտում ծավալվող գործունեության հաջողությունների անհրաժեշտ պայմանն են։ Եվ այդ բանում «մեղավոր» է կուլտուրայի մասին մեր ունեցած պատկերացումների ոչ հստակությունը։

Կուլտուրան սովորաբար համարում են որպես նյութական և հոգևոր արժեքների ամբողջություն, որին ավելացնում են ամենից առաջ գիտության ու տեխնիկայի, արվեստի և գրականության նվաճումները, մարդկային կյանքի այս կամ այն ոլորտի զարգացման մակարդակը (այս իմաստով խոսում են ֆիզիկական կուլտուրայի մասին, սանիտարական կուլտուրայի մասին և այլն)։ Ընդ որում աչքաթող է արվում, որ կուլտուրան ոչ թե պարզապես իր է կամ նույնիսկ մարդկային ունակությունների զարգացման մակարդակ, այլ նախ և առաջ մարդու ողջ ներքին խառնվածքը, նրա վերաբերմունքը կյանքի զանազան կողմերին, ուրիշ մարդկանց, անցյալին, ներկային և ապագային։ Կարճ ասած, ինչպիսին մարդու կուլտուրան է, այդպիսին է և նա։

Կուլտուրայի մասին մեր պատկերացումից է կախված այն, թե մենք ինչի կուղղենք մեր ջանքերը։ Օգտվելով ոչ հստակ հասկացությունից, մարդու կուլտուրայի մասին դատում ենք ըստ կրթական ցենզի, ըստ կարդացածության և այլն, նկատի չառնելով այն, թե նա ինչպես է վերաբերվում աշխատանքին, մարդկանց, ինչով է ապրում, կենսական ինչպիսի նպատակներով է ղեկավարվում։ Մենք խորը չենք մտածում այն մասին, թե կարելի՞ է, արդյոք, կուլտուրական համարել մի մարդու, որն անտարբեր է ուրիշ մարդկանց նկատմամբ, հոգ չի տանում այն մասին, թե իր վարքագծով խանգարո՞ւմ է, արդյոք, շրջապատի մարդկանց, վնաս է հասցնում բնությանը, աղտոտում այն, ասենք, չի-

նարարական աղբով՝ իր բնակարանում «մեծ ճաշակով» կատարած նորոգումից հետո:

Հասարակության կուլտուրան մենք իրավամբ բնութագրում ենք քաղաքակրթվածության, տեխնիկայի, գիտության, արվեստի զարգացման բնագավառում նրա ունեցած նվաճումներով: Բայց մի՞թե հասարակության կուլտուրայի մասին կարելի է դատել լոկ այդ ցուցանիշներով: Կարո՞ղ ենք մենք, արդյոք, բարձր կուլտուրական համարել այն հասարակությունը, որը գիտության ու տեխնիկայի նվաճումներն օգտագործում է մարդկանց մասսայական ոչնչացման համար: Մի՞թե ավելի ճիշտ չէր լինի այդպիսի հասարակությանն անվանել բարբարոսական: Իհարկե, հասարակության կուլտուրայի մասին մենք չենք կարող դատել լոկ նրա կառավարողների հակամարդասիրական գործողություններով, բայց մենք չպետք է մոռանանք նաև այն, որ եթե հասարակությունը հանդուրժում է իր կառավարողների հակամարդասիրական գործունեությունը, դա վկայում է այդ հասարակության ու նրա կուլտուրայի մեջ եղած ինչ-որ էական արատների մասին:

Երբեմն մենք խոսում ենք մարդու ներքին կամ արտաքին կուլտուրայի մասին, մարդու արտաքին շարժուձևերից, քաղաքավարությունից, մոդայիկ հագնվելու ունակությունից և մյուսներից տարբերելով նրա հոգևոր հատկությունները, իսկական կրթվածությունը, հոգու լայնությունը և այլն: Բայց նման դեպքերում ավելի ճիշտ կլիներ խոսել կարծեցյալ և իսկական կուլտուրայի մասին: Չէ որ, խոսելով մարդու բարոյական կերպարի մասին և տարբերելով էթիկան և էտիկետը, ամենևին էլ վերջինը չենք համարում արտաքին բարոյականություն: Այդպես պետք է լինի, երբ դատում ենք նաև կուլտուրայի մասին:

Ճիշտ այդպես էլ, դատելով հասարակության կուլտուրայի մասին, հաճախ շփոթում են քաղաքակրթվածությունն ու կուլտուրան, վերջինը հանգեցնելով նյութական նվաճումների և առանց հաշվի առնելու այդ հասարակության մարդասիրական կամ հակամարդասիրական էությունը:

Անհրաժեշտ է հստակորեն գիտակցել, որ կուլտուրան ամենից առաջ արտահայտում է անձի ձևավորումն ու զարգացումը, նրա հումանիզացման պրոցեսը, որը բացահայտվում է կյանքի նկատմամբ մարդու հայացքներում, աշխարհի, ուրիշ մարդկանց և իր իսկ նկատմամբ ունեցած հարաբերություններում, նրա արժեքային կողմնորոշումներում: Հասկանալի է, կուլտուրայի պատմությունն ընդգրկում է բազմապիսի երևույթներ, որոնք ոչ միշտ են արտահայտում մարդու հումանիզացման վերընթաց պրոցեսը, բայց դա վկայում է միայն այն, որ պատմության զարգացման ընթացքում լինում են նաև նահանջներ, և այն, ինչ այսօր գնահատվում է բացասաբար, ժամանակին կարող է մի աստիճան լինել մարդու ձևավորման պրոցեսում:

Ինչպես անձի, այնպես էլ հասարակության կուլտուրայի զարգացման ցուցանիշը, վերջին հաշվով, այն է, թե անհատը կամ հասարակությունը ինչպես են վերաբերվում մարդուն, ինչ չափով է հարգվում մարդկային արժանապատվությունը, կամ, ինչպես Կ. Մարքսն է գրել, թե որքանով է ուրիշ մարդը դարձել մարդու պահանջմունք: Բայց հարգել մարդկային արժանապատվությունը, նշանակում է հարգել նրա համոզմունքները, հայացքները, ճաշակները, հարգել նրա կուլտուրան: Որքան էլ ուրիշ մարդկանց հայացքները, ճաշակները. համոզմունքները տարբերվեն մեր ունեցածներից, մենք չպետք է առաջին իսկ առիթով մերժենք դրանք և ուրիշներին բռնի պարտադրենք մեր հայացքներն ու ճաշակները: Դա նշանակում է, որ իսկական կուլտուրան երկխոսական է, այլ ոչ թե մենախոսական:

Երկխոսայնությամբ պետք է բնութագրվեն ոչ միայն գիտական վեճերը կամ միջազգային բանակցությունները, այլև մեր բոլոր փոխհարաբերությունները: Երկխոսայնությունը պետք է ներհատուկ լինի կոլեկտիվի և նրա ղեկավարների փոխհարաբերությանը. զուտ վարչարարությունը խեղդում է կոլեկտիվի նախաձեռնությունը, ղեկավարներին զրկելով ակտիվ աջակցությունից: Թվում էր, թե երկխոսայնությունը անհասանելի է լսարանի, ընթերցողների հետ մասսայական հաղորդակցման միջոցների հարաբերություններում, սակայն երկխոսության տրամադրվածությունը այդ միջոցներին ստիպում է հաշ-



վի առնել ընթերցողների և ունկնդիրների պահանջները, որոնել աշխատանքի այնպիսի ձևեր, որոնք ուղի կգտնեն դեպի նրանց սրտերը: Այն պետք է լինի աշակերտների հետ ուսուցիչների հարաբերության հիմքը, որպեսզի կարելի լինի նրանց ակտիվորեն ներգրավել ուսումնական պրոցեսում և դաստիարակել մտածողության ինքնուրույնություն:

Կուլտուրայի երկխոսայնությունը չի հանգում լոկ երկխոսության՝ որպես մարդկային հաղորդակցման ձևի, այլ նշանակում է հրաժարում քարացածությունից, դոգմատիզմից, ձգտում՝ չմերժելու ամեն օտարը լոկ այն պատճառով, որ այն օտար է, այլ փորձելու հասկանալ ուրիշ հայացքներ ու կուլտուրաներ, բացահայտել նրանց ռացիոնալ իմաստը, դրանցով հարստացնելով սեփական կուլտուրան: Մյուս կողմից, կուլտուրան երկխոսային չէ նաև այն դեպքում, երբ կուրորեն հետևում են օտարին, թերագնահատելով սեփական հարստությունները:

Կուլտուրայի երկխոսայնությունը դրսևորվում է ավանդույթների և նորույթի փոխհարաբերության մեջ. ինչպես որ կուլտուրան չի կարող գոյություն ունենալ առանց ավանդույթների, այնպես էլ այն չի կարող զարգանալ առանց ավանդույթների նորացման, առանց նոր արժեքներով հարստացման: Բոլոր ավանդույթները անձեռնմխելի պահելու ձգտումը ստեղծում է կուլտուրայի մենախոսայնացման վտանգ, որը կաշկանդում է հասարակության անդամների ամեն մի ինքնուրույնություն:

Կուլտուրայի երկխոսայնությունը ենթադրում է դեմոկրատիայի, հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի զարգացում: Պատահական չէ, որ կուլտուրայի երկխոսայնությունը առանձնապես հրատապ է դարձել այսօր: Մենք սկսում ենք ավելի ու ավելի հստակ գիտակցել, որ սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության պլանները օդում կախված կմնան, եթե դրանք չդառնան յուրաքանչյուր սովետական մարդու գործունեության ծրագիր: Իսկ դրա համար պետք է, որ մարդիկ ոչ միայն լավ իրազեկ լինեն մեր հասարակական կյանքի, քաղաքականության հարցերին, այլև մասնակցեն դրանց քննարկմանն ու գործնական լուծմանը: Կյանքը ցույց է տալիս, որ «շարքային» աշխատողները ոչ թե պարզապես ավելի սուր են զգում մեր շատ թերությունները, այլև առաջարկում են դրանց լուծման ճիշտ ուղիներ:

Կուլտուրայի երկխոսայնությունը, իհարկե, չի նշանակում տարբեր գաղափարախոսությունների հավասարեցում, հետադիմական ուսմունքների դեմ մղվող պայքարի որևէ թուլացում: Հարցն այն է, թե ինչպես պետք է մղել այդ պայքարը, մերկապարանոց մեղադրանքների, թե ուշադիր վերլուծության և գիտական փաստարկման միջոցով: Քննադատությունը նպատակին չի հասնում հենց այն ժամանակ, երբ որևէ ուսմունք հերքվում է զանազան գրքերից կորզված մեջբերումների հիման վրա, առանց հաշվի առնելու դրա իրական իմաստը:

Մարդու՝ որպես հասարակական հարաբերությունների ամբողջության էության մասին Կ. Մարքսի հայտնի դրույթը հիմնարար նշանակություն ունի ամբողջ մարդկային աշխարհը հասկանալու համար: Այդ դրույթն այնպես մեկնաբանելու փորձերը, որ իբր դա նշանակում է ժխտել անհատական տարբերությունները մարդկանց և մարդկային ազատության միջև, հիմնված են նրա նեղ ըմբռնման վրա: Մարդու սոցիալական բնությունը նույնքան չի հակասում անհատների գոյությանը, որքան և անհատապաշտությունը ինքնին չի ապահովում անձի եզակիությունը, քանի որ անհատապաշտությունը նույնպես կարող է համահարթիչ ներգործություն ունենալ մարդու վրա, ինչպես և կոլեկտիվիզմի սկզբունքի միակողմանի ըմբռնումը և կիրառումը պրակտիկայում:

Մարդկանց միջև հասարակական հարաբերությունները իբրև իրենց հատուկ հանգամանք ներառում են մարդկանց անմիջական կապն ու փոխգործողությունը: Հաղորդակցումը փոխադարձ կապի յուրահատուկ մարդկային ձև է, այն երկկողմ պրոցես է, ենթադրում է ո՛չ միայն անհատի ցանկությունը՝ մեկ ուրիշին հաղորդելու իր մտքերը, զգացմունքները, այլև վերջինիս ցանկությունն ու ընդունակությունը՝ հասկանալու առաջինին, ինչ-որ չափով բաժանելու նրա զգացումները, տրամադրությունները, ընդունակությունը՝ գո-

նե լրջորեն ընկալելու այն, ինչ այդ մյուսը ցանկանում է հաղորդել իրեն և համապատասխանորեն արձագանքելու։ Այսպիսով, իսկական հաղորդակցումը մարդկանց հասարակ փոխգործողություն չէ, ինֆորմացիայի և իր գործունեության արդյունքների փոխանակում, այլ տարբեր անհատների՝ միմյանց նկատմամբ ունեցած պահանջմունքի արտահայտություն։ Այդ պահանջմունքը, որը պայմանավորված է մարդու սոցիալական էությամբ, տարբեր պայմաններում տարբեր կերպ է դրսևորվում։ Դրա համապատասխան դրսևորմանը, բնականաբար, խոչընդոտում է մասնավոր սեփականության տիրապետությունը, որը մարդկանց ստիպում է միմյանց վերաբերվել որպես իրենց նպատակներին հասնելու միջոցների, որպես հնարավոր և իրական ախոյանների։

Մասնավոր սեփականությունը, որը հազարամյակներ շարունակ եղել է հասարակական կյանքի սկզբունք, չէր կարող չազդել մարդկանց ձևավորման վրա, չնպաստել անհատապաշտական ու եսասիրական հոգեբանության մշակմանը նրանց մեջ, որը իր հերթին ծնում էր նաև համապատասխան հայացքներ այն հարցում, թե ինչպես պետք է վերաբերվել մարդկանց, ինչպես սանձել նրանց եսասիրական նկրտումները։ Մարդու բնածին եսասիրության մասին պատկերացումը սխալ է։ Իհարկե, յուրաքանչյուր կենդանի էակ ձգտում է ինքնապահպանման, բայց դա դեռ եսասիրություն չէ։ Մանավանդ որ մարդը ոչ միայն կենսաբանական էակ է, նա իր կյանքի արժեքը զգում է լոկ այնքանով, որքանով նա իր կենսաբանական էությունից վեր է բարձրանում և հաղորդակից դառնում ավելի վսեմ, զուտ մարդկային արժեքների, վարժվում է գնահատել ոչ միայն այն, ինչը բավարարում է իր կենսաբանական պահանջմունքները, այլև այն, ինչն իրեն տալիս է այն բարոյական բավարարությունը, որ նրան պարգևում է, մասնավորապես, ստեղծագործությունը, հաղորդակցումը ուրիշ մարդկանց հետ։ Մասնավոր սեփականության անբաժան տիրապետության դեպքում անգամ մարդիկ գնահատել են ոչ միայն իրենց շահը, այլ, թերևս, է՛լ ավելի շատ անշահախնդրությունը, սերը, բարեկամությունը, նույնիսկ կյանքը զոհելու ընդունակությունը՝ մարդկային վեհ արժեքները հաստատելու համար։

Այսպիսով, մարդու բնածին եսասիրության մասին պատկերացումը սխալ է։ Բայց չպետք է նաև պարզունակ ձևով ենթադրել, թե մասնավոր սեփականության ոչնչացմամբ մարդիկ նույնպես կազատվեն ամեն տեսակ եսասիրությունից և կսկսեն հոգ տանել միայն ընդհանուր բարօրության մասին։ Իրոք, մարդկային հարաբերությունների հաստատումը մարդկանց միջև կարող է լինել լոկ տևական զարգացման, ամենից առաջ հասարակության կուլտուրական առաջընթացի արդյունք։ Պահանջվում են մեծ ջանքեր հազարամյա եսասիրական սովորությունները վերացնելու, իրոք, մարդկային կեցություն հաստատելու համար, որպեսզի մարդկանց բոլոր հարաբերություններն ստանան իսկական հաղորդակցման բնույթ։

Կուլտուրաների տարբերությունը բնորոշվում է ամենից առաջ սոցիալ-դասակարգային հարաբերություններով ու շահերով, էթնիկական և ռեգիոնալ առանձնահատկություններով, պատմական ժամանակաշրջանով։

Թեև կուլտուրայի վերելքը վերջին հաշվով պայմանավորվում է հասարակական-տնտեսական զարգացմամբ, չպետք է կարծել, թե նրա բոլոր ոլորտներն էլ առաջադիմում են հասարակության արտադրողական ուժերին ուղղակի համապատասխան։ Կ. Մարքսը, մասնավորապես, նշում էր, որ այդպիսի համապատասխանություն չի եղել հին Հունաստանի արվեստի ու նրա արտադրողական ուժերի զարգացման միջև։ Կուլտուրայի մեջ դրսևորվում է այն ստեղծած ժողովրդի տաղանդը, բայց նման դրսևորումը պայմանավորված է պատմական հանգամանքներով, որոնք լինում են շատ բարդ և ոչ միանշանակ. կուլտուրայի ծաղկմանը կարող է նպաստել նաև ընդհանուր վերելքը, հաջողությունները ժողովրդի և պետության համախմբման գործում, ինչպես դա եղել է Վրաստանում՝ Ռուսթավելու դարաշրջանում, կամ հասարակական փոփոխությունների հասունացած խնդիրները, ինչպես այդ եղել է բուրժուական հեղափոխությունների նախապատրաստման դարաշրջանի Եվրոպայում կամ XIX դարի Ռուսաստանում։

Կուլտուրայի մակարդակը դրսևորվում է նաև այն բանում, թե ինչպես են վերաբերվում այդ կուլտուրան կրողներին՝ էթնիկական հանրություններին, ազգերին ու ազգություններին։ Դասակարգային հասարակության մեջ կուլտուրայում արտահայտվում են դասակարգային շահերը։ Յուրաքանչյուր կուլտուրայի մեջ, դիտված այդ տեսանկյունից, կա, ինչպես շեշտում էր Վ. Ի. Լենինը, երկու կուլտուրա։ Դա չի նշանակում, սակայն, թե կուլտուրաները զուրկ են ամեն մի միասնությունից։ Ճնշողները հաճախ ազգային տարբերություններն օգտագործում էին ժողովուրդներին հակադրելու, ազգամիջյան թշնամանք բորբոքելու համար, որպեսզի խանգարեն աշխատավորների միասնության ձևավորմանը։ Մենք, իհարկե, դրան չպետք է հանգեցնենք ազգամիջյան տարբերությունների նշանակությունը և դիտենք որպես խոչընդոտ ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության ձևավորման գործում։ Չպետք է կարծել, թե ազգային տարբերությունները խաղում են լոկ բացասական դեր։ Էթնիկական միասնության գիտակցությունը անցյալում ևս մարդկանց ուժ էր տալիս իրենց ինքնուրույնությունը պահպանելու համար օտարերկրյա զավթիչների դեմ նրանց մղած պայքարում, մարդկանց մեջ զարգացնում էր ազատության ձգտում։ Հանուն ազգային անկախության մղված պայքարը ամենուրեք վերածվում էր և ամենից հաճախ այժմ էլ վերածվում է սոցիալական ճնշման դեմ մղվող, սոցիալական ազատագրության համար մղվող պայքարի։ Այսպես, արդի աշխարհում գաղութատիրության դեմ մղվող պայքարը զարգացող երկրներին մղելով վճռական մարտի ընդդեմ իմպերիալիզմի, նրանց դնում է սոցիալական ազատագրության խնդիրները լուծելու անհրաժեշտության առջև։

Կուլտուրաների զարգացմանը վնաս են հասցնում ոչ միայն ռազմական ընդհարումները, այլև առաջավոր կապիտալիստական երկրների տնտեսական ներթափանցումը թույլ զարգացած և կամ հետամնաց երկրները։ Գոյություն ունեն կուլտուրական էքսպանսիոնիզմի շատ եղանակներ։ Այսպես, Արևմտյան Եվրոպայում ավելի ու ավելի հաճախ են բողոքում այն բանից, որ ամերիկյան սարսափ-կինոֆիլմերը ողողում են կինոթատրոնները և վնաս հասցընում ազգային կինեմատոգրաֆին։ Նույնը նաև գրականությունը, էստրադային երաժշտությունը և այլն։

Սոցիալիզմի օրոք հարաբերությունները ժողովուրդների և ազգային կուլտուրաների միջև ձևավորվում են սկզբունքորեն նոր կերպով։ Նրանց փոխգործողությունը սոցիալիստական երկրների միջազգային համագործակցության շրջանակներում տեղի է ունենում պլանաչափորեն և նպատակ ունի նպաստել ընդհանուր տնտեսական և կուլտուրական առաջադիմությանը։ Մեր երկրում սոցիալիստական հեղափոխությունը տեղի ունենալուց հետո, ժողովրդական տնտեսության զարգացումը պլանավորելիս խնդիր էր դրվում հավասարեցնել զանազան ռեգիոնների, հանրապետությունների տնտեսական մակարդակը, բարձրացնել նախկինում հետամնաց ռեգիոնների էկոնոմիկան և կուլտուրան։ Սովետական իշխանությունը ելնում էր ոչ միայն երկրի ընդհանուր տնտեսական վերելքի նկատառումներից, այլև հաշվի էր առնում ազգերի ու ազգությունների տնտեսական ու կուլտուրական շահերը։

Զանազան ռեգիոնների էկոնոմիկայի հավասարեցումը հանգեցրեց ժողովուրդների միասեռ սոցիալական կառուցվածքների կազմավորման, նրանց սոցիալական միասնության։ Դա իր հերթին առաջ բերեց ազգային կուլտուրաների համապատասխան փոփոխություններ։ Ըստ որում սխալ կլիներ այդ պրոցեսների մեջ դիտել լոկ համահարթման միտումներ։ Ազգամիջյան հարաբերությունների ինտենսիվացման և կուլտուրայի ընդհանուր վերելքի հետ զուգընթաց ամրապնդվում է ազգային համախմբումը, աճում ազգային ինքնագիտակցությունը։

Հասարակական զարգացման արդի փուլում ազգամիջյան հարաբերությունները դառնում են ավելի ու ավելի բազմապիսի ու ինտենսիվ։ Մեր երկրում այս կամ այն ռեգիոնի զարգացման մեծ խնդիրների լուծման ժամանակ մասնակցություն են ունենում զանազան ժողովուրդների ներկայացուցիչներ, և այդ կապակցությամբ տեղի են ունենում միգրացիոն պրոցեսներ, և ինտենսիվանում է ազգամիջյան հաղորդակցումը։ Այդ պրոցեսները պահանջում են սևեռուն ուշադրություն։ Անհրաժեշտ է խնամքով հոգ տանել այն մասին, որ զանազան ժողովուրդների ներկայացուցիչների հաղորդակցումը հիմնված լինի փոխադարձ հարգանքի վրա։ Առանձնահատուկ շրջահայացություն պետք է ցուցաբերել նաև այն պատճառով, որ ազգերի փոխհարաբերությունների

վրա անցյալում ազդել են տիրապետության և շահագործման վրա հիմնված սոցիալական հարաբերությունները, ինչը կանխակալ հայացքներ էր ծնում այս կամ այն ժողովրդի ազգային բնավորությունների նկատմամբ, որոնք հաղթահարելու համար պահանջվում են ժամանակ և համբերատար աշխատանք։ Այդպիսի աշխատանքի շնորհիվ միայն ազգամիջյան հաղորդակցումը կունենա իսկական երկխոսային բնույթ, ինչը կհանգեցնի կուլտուրաների փոխհարստացման։

Ազգամիջյան հաղորդակցումը չի սպառվում զանազան ժողովուրդների և կուլտուրաների ներկայացուցիչների անմիջական շփումներով։ Այդպիսի հաղորդակցում է նաև ծանոթացումը ուրիշ ժողովուրդների կուլտուրային։ Մեր հանրապետությունում շատ բան է արվում նման կարգի հաղորդակցումը ինտենսիվացնելու համար. բավական է նշել գեղարվեստական թարգմանությունների ու գրական փոխհարաբերությունների կոլեգիայի բավականին արգասավոր գործունեությունը։ Դրական շատ բան է արել բարեկամության թանգարանը, որը դեռ շատ չօգտագործված հնարավորություններ ունի ազգամիջյան հաղորդակցման զանազան կողմերի ուսումնասիրման գործում և էլ ավելի շատ հնարավորություններ՝ այդ հաղորդակցմանը ավելի մեծ երկխոսայնություն հաղորդելու համար։ Իր ոչ բոլոր հնարավորություններն է օգտագործում, հավանաբար, նաև հեռուստատեսությունը, որը հեռուստադիտողներին կարող էր էլ ավելի լավ ծանոթացնել մեր հանրապետությունում ապրող ժողովուրդների կուլտուրական նվաճումներին։ Ուրախալի է, որ հանրապետության մայրաքաղաքի գրախանութներում հայերեն և ադրբեջաներեն գրքերից բացի, երևացել են նաև աբխազերեն և օսերեն գրքեր. ցանկալի է միայն այս լավ նախաձեռնությանը հաղորդել ավելի մեծ սիստեմատիկություն։

Ցանկանում ենք ասել նաև մի բոլորովին նոր ձևի՝ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի հարևան շրջաններում գործող բարեկամության ժողովրդական համալսարանների մասին։ Կարևոր է ժամանակին պաշտպանել նման նախաձեռնությունները՝ հաղթահարելով միայն արդեն հավանություն գտած և ստուգված ձևերին հետևելու բյուրոկրատական միտումը։

Համատեղ աշխատանքը բազմազգ կոլեկտիվներում բարենպաստ պայմաններ է ստեղծում ազգամիջյան ինտենսիվ հաղորդակցման, անցյալից ժառանգություն մնացած ազգային նախապաշարմունքները հաղթահարելու համար։ Բայց սխալ կլիներ կարծել, թե այդպիսի կոլեկտիվների գոյությունը ազատում է ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ տարվող գաղափարախոսական աշխատանքն ակտիվացնելու անհրաժեշտությունից։ Չէ՞ որ կոլեկտիվում ծագում են նաև կոնֆլիկտային իրավիճակներ, իսկ զանազան ազգերի ներկայացուցիչների մասնակցությունը դրանց կարող է վատասողջ տրամադրություններ ծնել որոշ մարդկանց մեջ, որոնք կարող են մտածել, որ իրենց շահերը ոտնահարվում են իրենց ազգային պատկանելության պատճառով և այլն։ Ուստի հենց այստեղ, այս հասարակական կազմակերպություններում է պետք հատուկ ուշադրություն ցուցաբերել ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին։

Ազգամիջյան հաղորդակցումը մարդկանց ու կուլտուրաների երկխոսություն է։ Մարդը հասարակական և հաղորդակցման ձգտող էակ է։ Հանդիպումը, հաղորդակցումը, երկխոսությունը ոչ միայն կենսական պրոբլեմների լուծման եղանակ են, այլև կարող են մեծ ուրախություն պարգևել մարդկանց։ Մեր կյանքի բոլոր ոլորտներում, արտադրական կոլեկտիվների կյանքում, սովետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքում երկխոսության սկզբունքին լայն ասպարեզ տալը հասարակական զարգացման արդի փուլում մարդկանց հոգեբանության, նրանց մտածողության վերակառուցման կարևոր խնդիրներից մեկն է։

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՌԵԳԻՈՆԱԼ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Զ. ՍԱՄԵԴ-ԶԱԴԵ**
**Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի տնտեսական բաժնի վարիչ, հանրապետության ԳԱ թղթակից անդամ**

70-ԱՄՅԱԿԻ ԲԱՐՁՈՒՆՔԻՑ իր ողջ վեհությամբ բացահայտվում է Հոկտեմբերյան հեղափոխության պատմական նշանակությունը։ Յոթ տասնամյակը մեր դինամիկ դարի համար բավական մեծ ժամկետ է, որպեսզի համակողմանիորեն ստուգենք, փորձենք սոցիալիստական կարգերի կենսունակությունն ու ամրությունը, նրանց կենսահաստատ ուժը։ Մեծ Հոկտեմբերը, հսկայական ասպարեզ բացելով արտադրողական ուժերի զարգացման համար, գործով ապացուցեց նոր հասարակական ֆորմացիայի անվիճելի առավելությունները։ Սոցիալիստական արարման ընթացքում մեր երկիրը վերածվեց հզոր ինդուստրիալ տերության՝ տնտեսական ու գիտատեխնիկական հզոր պոտենցիալով, հաստատվեցին ժողովուրդների հավասարությունը, նրանց եղբայրական ընկերակցությունը։ Այժմ ՍՍՀՄ-ում ստեղծվել է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս։ Դրա զարգացման գործում ավանդ են ներդնում բոլոր հանրապետությունները, այդ թվում և Անդրկովկասյան ռեգիոնի հանրապետությունները, որոնք իրենց ծննդով պարտական են Հոկտեմբերին։ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը այժմ դարձել են առաջավոր հանրապետություններ՝ արագ աճող արդյունաբերությամբ, ինտենսիվորեն զարգացող գյուղատնտեսությամբ, մասսաների կրթության ու կուլտուրայի բարձր մակարդակով, առաջավոր գիտությամբ։ Այդ նվաճումները կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իսկական հաղթանակն են, սովետական ժողովուրդների բարեկամության և եղբայրության գաղափարների պրակտիկ մարմնավորումը։

I.

Սովետական իշխանության տարիներին էապես աճել են Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի արտադրողական ուժերը, արմատական տեղաշարժեր են կատարվել էկոնոմիկայի, սոցիալական ոլորտի բոլոր բնագավառներում։ Արդեն մինչև 1940 թվականը Վրացական ՍՍՀ-ի արդյունաբերական արտադրության ծավալը նախահեղափոխական մակարդակը գերազանցել էր 10 անգամ, Ադրբեջանական ՍՍՀ-ում՝ 5,9, Հայկական ՍՍՀ-ում՝ 8,7 անգամ։ Միայն վերջին երեք հնգամյակում արտադրված ազգային եկամուտը այդ երեք հանրապետություններում զգալիորեն մեծացել է և 1985 թվականին կազմել 28,8 միլիարդ ռուբլի կամ ՍՍՀՄ-ում դրա ընդհանուր ծավալի մոտ 5 տոկոսը։ Այդ հանրապետություններից յուրաքանչյուրը կատարում է իր ֆունկցիաները աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման և կոոպերացիայի գործում։ Սույն հոդվածի շրջանակները թույլ չեն տալիս լրիվ չափով բացահայտելու ձեռք բերվածի բոլոր կողմերը, ուստի կցանկանայինք բերել սովետական իշխանության տարիներին հիշյալ հանրապետությունների զարգացման լոկ առավել կարևոր, սկզբունքային արդյունքները։

Վրացական ՍՍՀ-ի ժողովրդական տնտեսությունը ամուր կանգնել է ընդ-

հանուր տնտեսական և ինդուստրիալ պոտենցիալի ուժեղացման ուղու վրա։ Կայուն բնույթ է ստացել կարևորագույն սոցիալ-տնտեսական շատ ցուցանիշների առաջանցիկ աճի միտումը։ Հաստատուն տեմպերով են աշխատում էկոնոմիկայի բազային ճյուղերը։ 1971—1985 թթ. արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը աճել է 2,7 անգամ։ Առաջանցիկ տեմպերով է զարգացել մեքենաշինությունը, մասնավորապես, սարքաշինությունը, էլեկտրոնային և ռադիոտեխնիկական արդյունաբերությունը և գիտատար այլ ճյուղեր։ Այստեղ թողարկվում են էլեկտրաքարշեր, բեռնատար ավտոմոբիլներ, զանազան հաստոցներ ու ապարատներ, էլեկտրաշարժիչներ, հաշվողական տեխնիկա, գյուղատնտեսական մեքենաներ, տեխնոլոգիական սարքավորումներ թեթև և սննդի արդյունաբերության համար և այլն։

Հանրապետության էկոնոմիկայում ծանրակշիռ տեղ է գրավում սև և գունավոր մետալուրգիան, որի առաջատար ձեռնարկություններն են Ռուսթավիի մետալուրգիական և Զեստաֆոնիի երկաթամիահալվածքի գործարանները, Մառնեուլիի լեռնահարստացուցիչ կոմբինատը։ Հաջողությամբ է զարգանում արդյունահանող արդյունաբերությունը. մարգանեցի արդյունահանումն ու վերամշակումը Ճիաթուրայի հանքավայրում, պղնձի կոնցենտրատի արդյունահանումն ու մշակումը Մառնեուլիի հանքավայրում, ածխի արդյունահանումը Թղիբուլիի և Տղվարչելիի հանքավայրերում, նավթի արդյունահանումը Վրաստանի արևելյան շրջաններում և այլն։ Հանրապետության ինդուստրիայում կարևոր դեր են խաղում «Բ» խմբի ճյուղերը՝ սննդի և թեթև արդյունաբերությունները, որոնց բաժին է ընկնում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի կեսից ավելին։

Հանրապետության՝ բազմաճյուղ բնույթ ունեցող գյուղատնտեսությունը մեծ ավանդ է ներդնում երկրի պարենային ծրագրի իրականացման գործում։ Ճյուղը մասնագիտանում է թեյի, մերձարևադարձային կուլտուրաների և գինեգործության գծով։ Վրաստանի բնական պայմանները հնարավորություն են տալիս աճեցնել խաղողի, մրգերի ու բանջարեղենի հազվագյուտ տեսակներ։ Հանրապետությունը անշեղորեն ընդլայնում է իր մասնակցությունը վերոհիշյալ գյուղատնտեսական կուլտուրաների մթերումներին երկրում։ Կուտակվել է գյուղատնտեսության կառավարման կազմակերպական ձևերի կատարելագործման արժեքավոր փորձ (Աբաշայի փորձը), որը լայն կիրառում է գտել երկրում։ Գյուղատնտեսական հողատարածությունների 100 հեկտարի համախառն արտադրանքի արտադրությամբ Վրացական ՍՍՀ-ն հաստատուն կերպով մտել է երկրի առաջավոր ռեգիոնների շարքը։

Գնալով ավելի է մեծանում Հայկական ՍՍՀ-ի միութենական տնտեսական պոտենցիալը։ Արմատապես փոխվել է ժողովրդական տնտեսության կառուցվածքը, առաջնահերթ զարգացում են ստացել գիտատեխնիկական առաջադիմությունը որոշող ճյուղերը։ Իններորդ, տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակների տարիներին միասին վերցրած արդյունաբերական արտադրանքի ծավալը գրեթե եռապատկվել է։ Ինդուստրիայի ճյուղերի կոմպլեքսում առաջատար դիրք է գրավում բազմաճյուղ մեքենաշինությունը, որը ներկայացված է ոչ մետաղատար արտադրություններով։ Այդ ճյուղի աճի տեմպերը (մետաղամշակման հետ միասին) կազմել են 5,7 անգամ, այժմ դրա բաժինը 1970 թվականի 15,8 տոկոսից 1985 թվականին բարձրացել է մինչև 30,3 տոկոս։ Հանրապետության մեքենաշինական գործարաններում պատրաստում են էլեկտրաապարատներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, զանազան չափիչ սարքեր, մետաղահատ հաստոցներ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, հատուկ մեքենաներ և այլն։ Զարգացել են նաև քիմիական արդյունաբերությունը, էլեկտրաէներգետիկան, գունավոր մետալուրգիան, շինարարական նյութերի արդյունաբերությունը, որին մեծապես նպաստել է տեղական հումքի և էներգառեսուրսների առկայությունը։ Հանրապետության էկոնոմիկան հետևողականորեն փոխադրվում է զարգացման ինտենսիվ ուղու վրա։ Հաջողությամբ է գործում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կոմպլեքսը։

Լենինյան կոոպերատիվ պլանի կենսագործումը անսահման հնարավորություններ է բացել հայկական գյուղի արտադրողական ուժերի զարգացման, նրա աշխատողների բարեկեցության բարձրացման, գյուղում արտադրական հարաբերությունների ամրապնդման համար։ Ագրարային սեկտորի գլխավոր ուղղությունն է պտղաբուծությունը, խաղողագործությունը, անասնապահությունը, հացահատիկային և արժեքավոր տեխնիկական կուլտուրաների մշակումը։ Անշեղորեն բարձրանում է ճյուղի տեխնիկական հագեցվածության մակարդակը։ Կառուցվել են ոռոգման հզոր համակարգեր, ջրամբարներ։ Այդ ամենը ապահովել է կոլտնտեսությունների և սովխոզների տընտեսական վիճակի բարելավումը, հողագործության և անասնապահության արդյունավետության բարձրացումը։

Տնտեսական և սոցիալական զարգացման գործում նշանակալի առաջընթաց քայլ է կատարել Սովետական Ադրբեջանը։ Հետևողականորեն մեծանում է նրա ավանդը համապետական խնդիրների լուծման գործում։ Էապես ամրապնդվել է հանրապետության էկոնոմիկայի նյութատեխնիկական բազան. զգալիորեն աճել են հիմնական ֆոնդերը։ Արդյունաբերական արտադրանքի համախառն ծավալը 1985 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, մեծացել է գրեթե 5,6 անգամ, այդ թվում սպառման առարկաների արտադրությունը՝ 6,3 անգամ, աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 3,0 անգամ։ Այսօր ինդուստրիայի կառուցվածքում ներկայացված է ոչ միայն ավանդական ճյուղը՝ նավթի արդյունաբերությունը։ Ստեղծվել են բազմաթիվ նոր ճյուղեր, որոնց արտադրանքը ապահովում է ներհանրապետական պահանջմունքները, ինչպես նաև արտահանվում է Ադրբեջանի սահմաններից դուրս։ Միայն հետպատերազմյան տարիներին շահագործման է հանձնվել զանազան ճյուղերի 430 նոր արդյունաբերական ձեռնարկություն, դրանց թվում ալյումինի, պողպատաձուլական, կենցաղային կոնդիցիոներների, ստացիոնար խոր ջրային հիմքերի, ծանր էլեկտրաեռակցման սարքավորումների գործարանները, սարքաշինական մի շարք ձեռնարկություններ. մեծ ծրագիր է իրականացվել նավթամեքենաշինության, ռադիոէլեկտրոնային և էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման ուղղությամբ։ Բարելավվել են միջճյուղային համամասնությունները, ինդուստրիալ արտադրության ընդհանուր ծավալում մեծանում է մեքենաշինության տեսակարար կշիռը։

Հիրավի հսկայական են հանրապետության նվաճումները ագրարային սեկտորում։ Այստեղ մեծ աշխատանք է կատարվել ճյուղի նյութատեխնիկական բազայի ամրապնդման, ջրատնտեսային և մելիորատիվ շինարարության ուղղությամբ։ Այսօր ընդհանուր միութենական արտադրության մեջ Ադրբեջանը մասնագիտանում է մի շարք կարևորագույն գյուղատնտեսական կուլտուրաների բնագավառում, ակտիվորեն մասնակցում է ՍՍՀՄ պարենային ծրագրում առաջադրված խնդիրների լուծմանը։

Անցած տարիները եղել են հանրապետության տնտեսական պոտենցիալում փոքր ու միջին քաղաքների դերի ուժեղացման ժամանակաշրջան։ Ներկայումս Բաքու—Սումգայիթ ինդուստրիալ շրջանի սահմաններից դուրս արտադրվում է արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի 42 տոկոսը՝ սովետական իշխանության առաջին տարիների 7—8 տոկոսի դիմաց, այստեղ ստացվել է անցած հնգամյակի տարիներին ձեռք բերված դրա հավելաճի կեսից ավելին։ Բարենպաստ պայմաններ են ստեղծվել հանրապետությունում եղած բնական հարստությունների ավելի լավ օգտագործման համար։

Այսպիսով, Անդրկովկասի հանրապետությունների անցած ուղին համոզիչ կերպով վկայում է տնտեսական և սոցիալական ոլորտներում ձեռք բերված առաջադիմության մասին, լենինյան գաղափարների կենսականության, նրանց համագործակցության ամրապնդվող կապերի մասին, երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսում նրանց ընդհանուր ավանդի մեծացման մասին։ Դրա հետ մեկտեղ այդ հաջողությունները, անկասկած, կարող էին ավելի նշանակալից լինել, եթե ավելի լրիվ օգտագործվեին հանրային արտադրության ինտենսիվացումն արագացնելու համար եղած հնարավորությունները։ Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման մեջ առանձին փուլերում, հատկապես վերջին տարիներին, կուտակվել էին ոչ քիչ թվով չլուծված պրոբլեմներ, իջել էր տնտեսական աճի, աշխատանքի արտադրողականության աճի դինամիկան, վատացել էին արդյունավետության մի քանի այլ

ցուցանիշներ, մինչև վերջ չէր հաջողվել իրականացնել նաև այդ ժամանակաշրջանի համար նախանշված սոցիալական ծրագիրը։

Այդ անբարենպաստ միտումները այս կամ այն չափով բնորոշ էին նաև Անդրկովկասի հանրապետությունների համար։ Տվյալ ռեգիոնի ժողովրդական տնտեսության մեջ դեռևս կան անհամամասնություններ, որոնք կասեցնում են նրանց զարգացման տեմպերը։ Հիշյալ և մի շարք այլ պատճառների հետևանքով պահպանվում է խզումը միութենական մի քանի միջին ցուցանիշների հետ, մեծ լարվածությամբ են ձևավորվում առանձին ընդհանրացնող ժողովրդատնտեսական ցուցանիշներ։

Խորապես վերլուծելով ստեղծված իրավիճակը, ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը առաջադրեց սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, կյանքի բոլոր կողմերը վերակառուցելու կուրսը։ Կուսակցության XXVII համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան և հունիսյան պլենումները, լենինաբար իմաստավորեցին մեր ապրած ժամանակը, իրենց որոշումներում միավորեցին նպատակների վեհությունն ու հնարավորի իրատեսությունը, անհաշտվողաբար, բացահայտորեն գնահատեցին այն ամենը, ինչը խանգարում է առաջընթացին։ Էկոնոմիկայի հետագա կատարելագործման, նրա ինտենսիվացման գործում շրջադարձային պետք է դառնա տասներկուերորդ հնգամյակը։ Անդրկովկասի հանրապետությունների տնտեսական և սոցիալական զարգացման ընթացիկ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները որոշվել են ՍՄԿԿ XXVII համագումարում, Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կոմունիստների վերջին համագումարներում, կոնկրետացվել Կենտկոմի հետագա պլենումներում։ Առաջիկա ժամանակաշրջանում ռեգիոնի ժողովրդական տնտեսության մեջ նախատեսված է ապահովել արտադրության աճի բարձր տեմպեր և էական որակական փոփոխություններ՝ գիտատեխնիկական առաջադիմության արագացման, հիմնական ֆոնդերի նորացման, ստեղծված արտադրական պոտենցիալի ինտենսիվ օգտագործման հիման վրա։ Անդրկովկասյան հանրապետությունների համար արմատական ու ստրատեգիական խնդիր է եղել ու մնում է բնակչության մեկ շնչի հաշվով ազգային եկամտի արտադրության ու սպառման միութենական միջին մակարդակին հասնելը։

II.

Կցանկանայինք ընթերցողներին ծանոթացնել ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրների իրականացման ուղղությամբ Ադրբեջանում ծավալված բազմակողմանի աշխատանքի մի քանի կողմերին, այն բանին, ինչ դեռ արվելու է տասներկուերորդ հնգամյակում։

Այսօր ըստ էության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը արտադրության ռացիոնալացման, տեխնոլոգիայի նորացման, բառացիորեն հեղափոխական տեղաշարժերի ապահովման կարիք են զգում։ Հենց այդպիսի մոտեցումների էլ նպատակամղում են Ադրբեջանի կոմկուսակցության XXXI համագումարի, Կենտկոմի հետագա պլենումների որոշումները։ Գիտատեխնիկական առաջադիմության կառավարման կատարելագործման հարցերը սկսել են ավելի խորը մշակվել տասներկուերորդ հնգամյակի պլաններում։ Նոր մոտեցումներ են իրականացվում կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության նկատմամբ, ավելի շատ է ուշադրություն նվիրվում առաջադիմական ճյուղերի առաջանցիկ զարգացմանը։ Ձևակերպված է հանրապետական, ճյուղային և ռեգիոնալ կոմպլեքսային գիտատեխնիկական ծրագրերի համակարգ, որի առանցքն են կազմում «Ինտենսիվացում—90» և «Նյութատարություն» նպատակային տերիտորիալ-ճյուղային ծրագրերը։ Ծրագրերում կանխատեսված առաջադրանքների իրականացումը հնարավորություն կտա մինչև 1990 թվականի վերջը զգալիորեն բարելավել արդյունավետության ցուցանիշները, մասնավորապես, կանգնեցնել ֆոնդահատուցման իջեցման միտումը և ապահովել դրա աճը 3—5 տոկոսով, ազգային եկամտի նյութատարությունը իջեցնել 2,5—3,0 տոկոսով, մետաղատարությունը՝ 15 տոկոսով, էներգատարությունը՝ 10 տոկոսով, բարձր կարգի որակի արտադրանքների տեսակարար կշիռը մեծացնել 2 անգամ։ Ծանրակշիռ են նաև հիշյալ ծրագրերի սոցիալական հետևանքները։



Առաջին քայլերն այդ ուղղությամբ արդեն արվել են։ Արդյունաբերության ճյուղերում, հատկապես մեքենաշինության մեջ, արագացել են արտադրության նորացման տեմպերը, նրա վերահագեցումը առաջադիմական տեխնիկայով, վերակառուցվում և արդիականացվում են գործող ձեռնարկությունները, հաջողությամբ են արմատավորվում խնայողության անձնական հաշիվները, հումքի և նյութերի ծախսման տնտհաշվարկային քարտերը։ Կազմակերպվել և գործում են 5 միջճյուղային գիտատեխնիկական համալիրներ, գիտատեխնիկական ինֆորմացիայի ավտոմատացված համակարգի առաջին հերթը, գիտական հետազոտությունների հանրապետական միջբուհական կենտրոնը։ Աշխատանքներ են իրականացվում նավթ և գազ արդյունահանող արդյունաբերության, կոլեկտիվ օգտագործման հաշվողական կենտրոնի պրոբլեմների գիտաարտադրական միավորումների ստեղծման ուղղությամբ։

Անցումը ինտենսիվ էկոնոմիկայի սերտորեն կապված է կառուցվածքային քաղաքականության, միջճյուղային և ներճյուղային համամասնությունների ձևավորման կատարելագործման հետ։ Պետք է նշել, որ ժողովրդական տնտեսության կառուցվածքը Անդրկովկասի հանրապետություններում ընդհանուր գծերի հետ միասին ունի նաև ուրույն առանձնահատկություններ։ Նրանց էկոնոմիկայի ձևավորման պատմական պայմանները, հանքահումքային, աշխատանքային ռեսուրսների առկայությունը և դրանց օգտագործման աստիճանը ժողովրդատնտեսական շրջանառության մեջ, արտադրողական ուժերի տեղաբաշխման բնույթը, ժողովրդական իրավիճակը և այլն, այս բոլոր գործոնները այս կամ այն չափով որոշում են տնտեսության կառուցվածքային վերակառուցման մասշտաբներն ու ուղղությունները։ Դրանց համակողմանի հաշվառումը վճռական նշանակություն է ստանում տերիտորիալ համամասնությունների բարելավման գործում։

Ներկայումս անդրկովկասյան հանրապետությունների հասարակական արդյունքի և ազգային եկամտի կառուցվածքում առաջատար տեղ է պատկանում արդյունաբերությանը, ինչը վկայում է ռեգիոնի արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակի մասին։ Հենց ժամանակակից խոշոր ինդուստրիայի շնորհիվ նյութական ամուր հիմք դրվեց տնտեսական աճի համար։

Արդյունաբերության կառուցվածքը բնութագրող հիմնական ցուցանիշների վերլուծությունը վկայում է նրա բազմաճյուղ բնույթի, կառուցվածքային որակական տեղաշարժերի մասին, եղած ռեսուրսներին համապատասխան ճյուղային մասնագիտացման հետագա խորացման մասին։ Ըստ որում առաջանցիկ տեմպերով զարգանում են այն ճյուղերը, որոնք որոշում են գիտատեխնիկական առաջադիմությունը, նպաստում աշխատանքային և բնական ռեսուրսների ավելի ռացիոնալ օգտագործմանը։ Մասնավորապես, Ադրբեջանական ՍՍՀ-ում տասներկուերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործման ստրատեգիական կուրսին համապատասխան առաջնահերթ զարգացում կստանա մեքենաշինությունը։ Դա թույլ կտա ապահովել բնակչության ավելի մեծ զբաղվածությունը, բանվորական և ինժեներական կադրերի տեխնիկական և պրոֆեսիոնալ բարձր մակարդակի ձևավորումը, հանրապետության էկոնոմիկայի դինամիկ աճը։ Մեքենաշինական արտադրանքի ծավալը կաճի 64 տոկոսով, որը 2,8 անգամ գերազանցում է ամբողջ արդյունաբերության զարգացման տեմպերը։ Դրա բացարձակ հավելաճը կկազմի արդյունաբերական արտադրության ամբողջ հավելաճի գրեթե 40 տոկոսը։

Զարգացում կստանա նաև արդյունաբերության ավանդական ճյուղը՝ նավթարդյունահանող ճյուղը։ Դրա գլխավոր խնդիրն է՝ արագացնել խոր ընկած նոր նավթաշերտերի յուրացումը Կասպիականի շելֆում, ինչպես նաև հանրապետության արևմտյան և կենտրոնական շրջաններում։ Լայն կիրառում պետք է գտնեն նավթաշերտերի հատույցի բարձրացման երկրորդային և երրորդային մեթոդները։ Առաջավոր տեխնոլոգիաների յուրացում, տեխնիկական վերահագեցում է նախատեսված նաև էներգետիկայում, նավթավերամշակման, քիմիական արդյունաբերության մեջ, սև և գունավոր մետալուրգիայում։

Հանրային արտադրության կառուցվածքային վերակառուցումը անբաժա-

նելի է ինվեստիցիոն քաղաքականության կատարելագործումից։ Տասներկուերորդ հնգամյակում նախատեսվում է յուրացնել 17,3 մլրդ ռուբլու կապիտալ ներդրումներ, որը գրեթե 30 տոկոսով ավելի շատ է, քան տասնմեկերորդ հնգամյակում։ Հարկ կլինի նաև նոր շինարարությունից ծանրության կենտրոնը փոխադրել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման վրա, այդ նպատակներին ուղղվող միջոցների բաժինը կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալում բարձրացնել առնվազն մինչև 50 տոկոս, դրանց մեջ ավելացնել սարքավորումների և մեքենաների վրա կատարվող ծախսումների տեսակարար կշիռը։

Տասներկուերորդ հնգամյակի բնորոշ առանձնահատկությունն է ինվեստիցիոն ցիկլի կրճատումը 1,6 անգամ, շինարարական աշխատանքների ճակատի նեղացումը։ Հիմնական արտադրական ֆոնդերի նախանշված գործարկումը, դրանց դուրսգրման ծավալների կրկնապատկման հետ զուգակցված, թույլ կտա ավելի քան մեկ երրորդով նորացնել այդ ֆոնդերի ակտիվ մասը, նոր տեխնիկայի բաժինը դրանցում հասցնել մինչև 40 տոկոսի։

Մեծ ջանքեր են ուղղվում ագրոարդյունաբերական համալիրի զարգացմանը։ Այդ համալիրում գործում է հիմնական արտադրական ֆոնդերի հինգերորդ մասը. այստեղ զբաղված է 600 հազարից ավելի մարդ, իրականացվում է մանրածախ ապրանքաշրջանառության մինչև 70 տոկոսը, կազմավորվում է արտադրվող ազգային եկամտի մոտ 40 տոկոսը։ Տասներկուերորդ հնգամյակում հարկ կլինի արմատապես բարելավել գործերի վիճակը ագրոարդյունաբերական համալիրում, ապահովել արտադրության կայուն աճը և սննդամթերքներով բնակչության մատակարարման բարելավումը։

Ընթացիկ հնգամյակի հանգուցային խնդիրներից մեկն է աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը։ Այդ բնագավառի աշխատանքը պահանջում էր լուրջ վերակառուցում։ Հաշվի առնելով տվյալ պրոբլեմի բացառիկ կարևոր քաղաքական նշանակությունը, հանրապետությունում մշակվել էր նպատակային կոմպլեքս ծրագիր՝ «Ժողովրդագրական զարգացումը և Ադրբեջանի աշխատանքային ռեսուրսների օգտագործումը 1986—1990 թվականներին և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում»։

Հիշյալ ծրագրին համապատասխան զգալիորեն կընդլայնվի աշխատանքի կիրառման ոլորտը, նախադրյալներ կստեղծվեն աճող աշխատանքային ռեսուրսները ավելի լրիվ հանրային արտադրության մեջ ներգրավելու համար։ Միջոցառումներ են իրականացվում աշխատաշատ շրջաններում նոր աշխատատեղերի կազմակերպման, տնային աշխատանքի լայն կիրառման, ոչ լրիվ աշխատաժամանակի ռեժիմի կիրառման, ձեռնարկությունների երկհերթ-եռահերթ աշխատանքի փոխադրման ուղղությամբ։ Նախատեսվում են արդյունաբերության առաջադիմական աշխատատար ճյուղերի աճի առաջանցիկ տեմպեր։ Ակտիվանում է աշխատանքը սպասարկման ոլորտի ավելի արագ զարգացման՝ որպես աշխատունակ բնակչության (և ամենից առաջ կանանց) հանրօգուտ աշխատանքի ներգրավելու կարևոր ուղղության բնագավառում։ Հետևողականորեն լուծվում են կոոպերատիվների ստեղծման հետ կապված հարցերը։ Առաջին քայլերն են արվել անհատական աշխատանքային գործունեության, տնայնագործության ընդլայնման ճանապարհին։

Հատուկ ուշադրություն է նվիրվում գյուղի աշխատանքային պոտենցիալի օգտագործմանը։ Այդ կապակցությամբ մի ամբողջ շարք լրացուցիչ միջոցառումներ են իրականացվում գյուղատնտեսական աշխատանքի սեզոնայնությունը մեղմացնելու, հումքը վերամշակող, շինարարական նյութեր և ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ոչ մեծ ձեռնարկություններ ստեղծելու, օժանդակ արհեստագործությունները զարգացնելու ուղղությամբ։ Ադրբեջանի փոքր քաղաքներում և շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի, արտադրամասերի և արտադրությունների ստեղծման հաշվին միայն 1986—1990 թթ. նախատեսված է արդյունաբերական-



արտադրական անձնակազմի թվաքանակը ավելացնել 18 հազար մարդով։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ արդեն 1986 թվականին նշմարվել էր հանրային արտադրության մեջ չզբաղված աշխատունակ բնակչության թվաքանակի կրճատում։

Ընդլայնվում են երկրի կարևոր ժողովրդատնտեսական կառույցները աշխատուժով ապահովելու գործում հանրապետության մասնակցության մասշտաբները, որ մեր ինտերնացիոնալ պարտքն է։ Միայն տասներկուերորդ հնգամյակի անցած ժամանակամիջոցում աշխատուժի միջհանրապետական կազմակերպված հավաքագրման կարգով Հեռավոր Արևելքի, Սիբիրի և աշխատուժի պակաս զգացող մյուս շրջանների կառույցներն է ուղարկվել մոտ 4 հազար մարդ։ Ընդհանուր առմամբ 1986—1990 թթ. նախորդ հնգամյակի համեմատությամբ նախատեսված է երկու անգամ ավելացնել այդ ցուցանիշը։

Արագացման, հասարակական կյանքի բոլոր ոլորտների վերակառուցման կուսակցության կուրսը պահանջում է նոր մոտեցում սոցիալական ոլորտի զարգացմանը, պահանջում է հաղթահարել այստեղ հասունացած պրոբլեմները։ Ենթադրվում է մինչև 2000 թվականը վերացնել բնակչության բարեկեցության և սպասարկման ոլորտի զարգացման հիմնական ցուցանիշներով հանրապետության հետ մնալը միութենական միջին մակարդակից։

Առաջնահերթ կարևորություն ունեցող խնդիր է՝ շուկան հագեցնել բարձրորակ արտադրանքներով և ծառայություններով, արմատական բեկման հասնել այդ գործում։ Հաշվի առնելով այդ հարցի նշանակությունը, մշակված է նպատակային պետական ծրագիր։ Ընդունվել են որոշումներ ժողովրդական սպառման մի շարք ապրանքների թողարկումը ավելացնելու, ծառայությունների շատ տեսակներ զարգացնելու վերաբերյալ։ Այժմ ամեն ինչ կախված է նրանից, որ լրիվ կենսագործվի ամբողջ կանխատեսվածը, որ հանրապետության յուրաքանչյուր բնակիչ ավելի արագ զգա այստեղ ամբողջ բարեշրջումը։

Տասներկուերորդ հնգամյակում առաջադիմական տեղաշարժեր կկատարվեն հանրապետության արտադրողական ուժերի տեղաբաշխման բնագավառում։ Պլանավորված է էլ ավելի զարգացնել Նախիջևանի ԻՍՍՀ-ի և Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի ժողովրդական տնտեսությունը։ Ավելի կկատարելագործվի այդ ռեգիոնների արդյունաբերության և ագրոարդյունաբերական համալիրի կառուցվածքը, նրանց ենթակառուցվածքը։ Այսպես, նախատեսվում է Նախիջևանի ԻՍՍՀ-ում արագ թափով զարգացնել շինարարական նյութերի ինդուստրիան, մեքենաշինությունն ու թեթև արդյունաբերությունը, կոմունալ տնտեսության, առողջապահության օբյեկտները և այլն։ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում զարգացում կստանան գյուղատնտեսական մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական և սննդի արդյունաբերությունը։ Կկառուցվեն մոտ 140 հազար քառ. մետր տարածությամբ բնակելի տներ, 7 հազար տեղով դպրոցներ, առևտրական կենտրոն, կենցաղային սպասարկման մի շարք ձեռնարկություններ, ավտոկայան, մանկական սանատորիա, գազամուղ, կսկսվի մարզային հիվանդանոցի շինարարությունը։

Շեշտված ուշադրություն է նվիրվում հանրապետության լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու վերաբերյալ Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի նախաձեռնությամբ մշակված կոմպլեքսային ծրագրի իրագործմանը։ Այդ նպատակով մեծ աշխատանք է կատարվում հարևան հանրապետություններում՝ Վրաստանում և Հայաստանում։

## III.

Համապետական, գերատեսչական և տեղական շահերի լավագույն զուգորդման տեսակետից մեծ նշանակություն ունի տերիտորիալ-միջճյուղային արտադրական համալիրների ձևավորումը։ Այս աշխատանքին, որը իր ժամանակ սկսվել էր Փոթի քաղաքում և Թբիլիսիի Գործարանային շրջանում, որտեղ տեղական պլանային հանձնաժողովների բազայի վրա ստեղծվել էին միջճյուղային միավորումներ, դրական գնահատական են տվել ՍՄԿԿ Կենտ-

կոմը և միութենական կառավարությունը։ Այժմ նման միավորումներ են գործում Վրացական ՍՍՀ-ի գործնականորեն բոլոր խոշոր և միջին քաղաքներում։ Մենք պետք է համակողմանիորեն վերլուծենք և ընդհանրացնենք այդ փորձը, կոնկրետ միջոցառումներ նշենք մեր հանրապետությունում այդ փորձը արմատավորելու ուղղությամբ։

Մեծ Հոկտեմբերի 70-ամյակի նախօրյակին տեղին կլիներ բնութագրել նաև մեր հանրապետության տնտեսական կապերը։ Հենց դրանք են կարծես այն «ծանրաչափը», որը որոշում է բարեկամական հարաբերությունների, եղբայրական համագործակցության վիճակը մեր երկրի ռեգիոնների միջև։ Ադրբեջանական ՍՍՀ-ը տնտեսական կապեր ունի առանց բացառության բոլոր միութենական հանրապետությունների հետ։ Ադրբեջանի արտահանրապետական ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալի մեջ միջհանրապետական առաքումների բաժինը կազմում է՝ արտահանության գծով 95,6 տոկոս, իսկ ներմուծման գծով՝ 81,3 տոկոս։ Միայն տասնմեկերորդ հնգամյակի ընթացքում այն ընդհանուր առմամբ մեծացել է 18 տոկոսով, ըստ որում արտադրանքի արտահանությունը՝ 26 տոկոսով։

Հանրապետության տնտեսական կապերի աշխարհագրության մեջ կարևոր տեղ է պատկանում Վրացական ՍՍՀ-ին, որին բաժին է ընկնում Անդրկովկասյան տնտեսական շրջանի հանրապետությունների հետ կատարվող ապրանքափոխանակության մոտ 52,5 տոկոսը։ Եթե նախկինում Ադրբեջանը Վրաստան էր արտահանում համեմատաբար նեղ անվանացանկի նավթամթերքներ, ապա հանրապետության ինդուստրիալ հզորության ուժեղացման հետ զուգընթաց էապես փոխվեցին այդ հանրապետությունը առաքվող ապրանքահոսանքի ծավալն ու կառուցվածքը։ Ներկայումս ապրանքաշրջանառության ծավալը նրանց միջև կազմում է մոտ կես միլիարդ ռուբլի։

Հետևողականորեն ամրապնդվում են Ադրբեջանի տնտեսական կապերը Հայաստանի հետ։ Ապրանքաշրջանառության ծավալը նրանց միջև արդեն գերազանցել է 400 միլիոն ռուբլուց։ Միայն անցած հնգամյակում այդ ցուցանիշը մեծացել է 1,6 անգամ։ Ադրբեջանից Հայկական ՍՍՀ արտահանվող արտադրատեսակների կառուցվածքում գերակշռում են այնպիսի արդյունքներ, ինչպիսիք են նավթամթերքները, բնական գազը, սինթետիկ կաուչուկը, ֆոսֆատային պարարտանյութերը, սինթետիկ խեժերը և պլաստմասսաները, բամբակի մանրաթելը, մետաքսե գործվածքները և թեթև արդյունաբերության այլ առարկաներ, ոսկերչական իրերը և այլն։ Հայաստանից մեր հանրապետությունն ստանում է տարբեր տեսակի արդյունաբերական արտադրատեսակներ, այդ թվում՝ ազոտային պարարտանյութեր, ծծմբաթթու, ավտոմեքենաներ, կուլտուր-կենցաղային նշանակության առարկաներ, բժշկական տեխնիկա, թեթև արդյունաբերության առարկաներ և այլ ապրանքներ։

Սոցիալ-տնտեսական արագացումը պահանջում է անշեղորեն ընդլայնել միջհանրապետական տնտեսական կապերը։ Ադրբեջանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման տևական հեռանկարի համար նախատեսվող բարձր տեմպերը, նրա ճյուղային ու տերիտորիալ կառուցվածքի կատարելագործումը կնպաստեն երկրի մյուս ռեգիոնների հետ մեր հանրապետության ապրանքափոխանակության հետագա աճին։

Վերակառուցման պայմաններում կատարված աշխատանքի արդեն առաջին ժամանակաշրջանը վկայում է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի ընդունած կուրսի հսկայական նշանակության մասին։ Այդ ընդհանուր գործում որոշակի ավանդ են մուծում նաև Անդրկովկասի հանրապետությունները։

Մեր երկրում լայնորեն ծավալված վերակառուցումը հասարակության հեղափոխական վերափոխումների անմիջական շարունակությունն ու զարգացումն է, որի սկիզբը դրել է մեծ Հոկտեմբերը։ Հստակ նպատակը, կուսակցության աննկուն կամքը, անսպառ եռանդը հանդես են գալիս որպես մոբիլիզացնող հսկայական ուժ, որը սովետական մարդկանց տանում է դեպի նորանոր վիթխարի մեծագործություններ՝ կոմունիզմի կառուցման ճանապարհին։

---

*Գրագետ տնտեսավարել, հմուտ կառավարել*

# ՄՐՑԵԼ, ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԵԼ, ՕԳՆԵԼ

**Մ. ՂՈՒԿԱՍՅԱՆ**
**Սևանի «Ապակեէլեկտրամեկուսիչներ» գործարանի դիրեկտոր**

ՍԵՎԱՆԻ «ԱՊԱԿԵԷԼԵԿՏՐԱՄԵԿՈՒՍԻՉՆԵՐ» գործարանը հանրապետությունում միակ ձեռնարկությունն է, որ թողարկում է ապակյա մանրաթել և ապակյա պլաստիկներ։ Մեր բազմաթիվ արտադրատեսակներ՝ ապակյա մանրաթելը, ժապավենը, գործվածքը, ապակյա մանրաթելից պատրաստված քուղգուլպան, շտապելային մանրաթելը բազալտից և այլն, որպես ջերմամեկուսիչ նյութեր, լայն կիրառում են գտնում շինարարության, ինչպես նաև էլեկտրատեխնիկական ու ավիացիոն արդյունաբերության մեջ։ Գործարանի արտադրանքն առաքվում է երկրի ավելի քան 160 քաղաքներ, ինչպես նաև ԳԴՀ, ՉՍՍՀ, Նիգերիա։

Արդեն մեկուկես տասնամյակ է, ինչ մենք մրցության մեջ ենք Մինգեչաուրի ապակյա մանրաթելի գործարանի կոլեկտիվի հետ։ Մեր փոխայցելությունները, նվաճումների ու պրոբլեմների վերլուծությունը, փորձի փոխանակումը նպաստում են ոչ միայն ընդհանրապես արտադրական գործերի բարելավմանը, այլև երկու կոլեկտիվների բարեկամության ամրապնդմանը։

Տարին երկու անգամ բանվորների, վարպետների, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների խմբերն այցելում են միմյանց, ամփոփում սոցիալիստական մրցության արդյունքները։ 1986 թվականին, երկու եռամսյակում հաղթող ճանաչվեց մեր կոլեկտիվը, մյուս երկուսում՝ Մինգեչաուրի գործարանը։ Մենք ձգտում ենք ժամանակին ու որակով կատարել պայմանագրային պարտավորությունները Բաքվի և Ադրբեջանական ՍՍՀ-ի մյուս քաղաքների ձեռնարկությունների հանդեպ։

Մեր գործարանի աշխատողները հաջողությամբ են կատարում Վրաստանի ձեռնարկություններին մեր արտադրանքն առաքելու առաջադրանքները, և, կարծում ենք, որ Թբիլիսիի էլեկտրամեխանիկական գործարանը, Քութայիսի, Գագրայի, Մառնեուլիի ձեռնարկությունները դժգոհ չեն մեր արտադրանքից։ Ձգտելով առավել գործուն օգնություն ցույց տալ եղբայրական վրաց ժողովրդին՝ նրա հետ տեղի ունեցած տարերային աղետի կապակցությամբ, մեր կոլեկտիվն արտադրանքի առաքումների կիսամյա առաջադրանքները կատարեց երեք ամսում։

Տարեցտարի գործարանը մեծացնում է իր կարողությունը։ Եթե 1978 թվականին մեզ մոտ աշխատում էր մոտ հազար մարդ, իսկ արտադրության ծավալը կազմում էր հինգ միլիոն ռուբլուց քիչ ավելի, ապա ներկայումս, աշխատողների թվաքանակը նույնիսկ որոշ չափով պակասեցնելու պայմաններում, արտադրանքի թողարկումը կրկնապատկվել է։

Բարձր արդյունքների հասնելու հիմնական գործոններից մեկն էլ գործարանի կոլեկտիվի աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավումն է, սոցիալական զարգացման հարցերի ճիշտ լուծումը։ Ձեռնարկությունում կազմակերպված է բանվորների անվճար սնունդ։ Բացի դրանից, գործարանի տարածքում գործում են խանութներ, ճաշարան, դեղատուն, խնայդրամարկղ։ Մենք ունենք երկու մանկապարտեզ, կառուցվել են նաև նոր բարեկարգ հանրակացարան, պանսիոնատ չափահասների և սանատորիա-առողջարանային տիպի պիոներական ճամբար երեխաների համար։ Վերջիններիս տրամադրության տակ կան խաղասենյակներ ու մարզահրապարակներ, նրանց համար կազմակերպվում են տուրիստական արշավներ, էքսկուրսիաներ և երեկոներ։

Կադրերի հոսունության պատճառները ուսումնասիրելու և դրանք հաղթահարելու նպատակով գործարանում ստեղծված է «Ուշադրություն, մա՛րդ է» ծառայությունը, որի հիմնական խնդիրներն են աշխատողների ստեղծագործական ակտիվության բարձրացումը, գործարանի առօրյային ու աշխատանքին նորեկների ընտելացումը, ստացվող նամակների, առաջարկությունների, բողոքների ու այլ հարցերի վերլուծությունը: Ծառայությունը ձեռնարկության աշխատողների շրջանում անցկացրեց գրավոր հարցում՝ աշխատանքով, աշխատավարձով, աշխատանքի, հանգստի և կենցաղի պայմաններով նրանց բավարարվածության, գործարանի տեխնիկական ապահովվածության, աշխատատեղի կազմակերպման, ղեկավարության հետ ունեցած փոխհարաբերությունների մասին: Հաշվի առնելով մարդկանց ցանկությունները՝ միջոցառումներ մշակվեցին աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմաններն է՛լ ավելի բարելավելու համար:

Գործարանի կոլեկտիվը բազմազգ է. այստեղ ուս-ուսի աշխատում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, ուկրաինացիներ, քրդեր, հույներ, թաթարներ, հրեաներ՝ մոտ 10 ազգությունների ներկայացուցիչներ:

Ինչպես գործարանի, այնպես էլ ուրիշ ձեռնարկությունների կոլեկտիվների հետ ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման նպատակով 1981 թվականից մեզ մոտ գործում է ինտերնացիոնալ «Արեգ» ակումբն՝ իր դիսկոտեկայով: Նրա հիմնական աշխատանքն ուղղված է այն նպատակին, որ համախմբի երիտասարդությանը, նրանց դաստիարակի սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով, միշտ կազմակերպի պատանիների ու աղջիկների կուլտուրական հանգիստը:

Տարեցտարի գործարանն ընդլայնվում ու բարելավվում է: Եվ այսօր, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման փուլում, մենք նոր միջոցառումներ ենք նախանշում ժողովրդական սպառման ապրանքների, մասնավորապես, կերամիկական իրերի բարձրորակ ապրանքների թողարկումն ավելացնելու համար. այդ առարկաների բաղադրության մեջ կան նաև ապակու մանրաթելի թափոններ: Մեծ աշխատանք է տարվում արտադրության տեխնիկական վերազինման և որակյալ կադրերի պատրաստման նպատակով:

Ձեռնարկության կոմունիստները, բոլոր աշխատողները ձգտում են իրենց ավանդը ներդնել կուսակցության XXVII համագումարի առաջադրած արագացման ստրատեգիան իրականացնելու գործում:

---

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

**Ք. ԴԱԴԻԱՆԻ**

***Վրաստանի պետպլանին կից էկոնոմիկայի, պլանավորման ու կառավարման գիտահետազոտական ինստիտուտի բաժնի վարիչ***

ՎՐԱՍՏԱՆԻ, ԻՆՉՊԵՍ ԵՎ ԱՄԵՆ ՄԵԿ ՈՒՐԻՇ միութենական հանրապետության էկոնոմիկայի հաջող զարգացման հիմնական պայմաններից է նրա տնտեսական կապերի ընդլայնումն ու խորացումը: Այս հանգամանքը առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի գոյության պայմաններում:

Տնտեսական կապերի հաստատումը առանձին ռեգիոնների միջև պայմանավորված է տերիտորիալ մասնագիտացման և երկրի ժողովրդատնտեսական կոմպլեքսի աշխատանքի միջշրջանային բաժանման բնույթով: Այդ կապերի բացառիկ կարևորությունը որոշվում է նրանով, որ դրանք սերտորեն կապակցվում են տերիտորիալ ստորաբաժանումների բնական և տնտեսական ռեսուրսների արդյունավետ օգտագործման պրոբլեմի հետ:

Վրացական ՍՍՀ-ի ժողովրդատնտեսական կոմպլեքսում գյուղատնտեսությունը հատուկ կարևոր դեր է խաղում: Նրա բաժինը հանրապետության ամբողջական հանրային արդյունքի ու ազգային եկամտի մեջ զգալիորեն ավելի բարձր է, քան դա բնորոշ է երկրի համար՝ ամբողջությամբ վերցրած: Այսպես, եթե 1975, 1980, 1985 թվականներին գյուղատնտեսության բաժինը ՍՍՀՄ ամբողջական հանրային արդյունքի մեջ համապատասխանաբար կազմում էր 14,8, 14, 15,3 տոկոս, ապա Վրաստանում այդ ցուցանիշը եղել է 18,6, 18, 18,8 տոկոս: Ազգային եկամտի մեջ քննության առարկա ճյուղի բաժինը ամբողջ Միությունում նույն այդ տարիներին կազմել էր համապատասխանաբար 16,9, 15, 19,4 տոկոս, իսկ Վրացական ՍՍՀ-ում՝ համապատասխանաբար 30,8, 29,8, 29,2 տոկոս:

Գյուղատնտեսական արտադրությունը բնութագրելիս անհրաժեշտ է նշել, որ երկու գործոնների, այսինքն՝ սակավահողության և մերձարևադարձային, տեխնիկական և հարավային պտուղ-բանջարեղեն կուլտուրաների աճեցման համար հազվագյուտ կլիմայական և հողային պայմանների առկայության ազդեցության տակ Վրաստանի գյուղատնտեսությունը զարգանում է ինտենսիվացման, թեյի, խաղողի, մրգերի, ցիտրուսների, դափնետերևի և եթերայուղային կուլտուրաների տարածությունների մեծացման ուղղությամբ:

Չնայած այն բանին, որ Վրաստանի ժողովրդական տնտեսության մեջ գյուղատնտեսությունը խաղում է ավելի կարևոր դեր, քան դա բնորոշ է ամբողջ երկրի համար, գյուղատնտեսության արտադրանքին բաժին է ընկնում միջռեգիոնալային փոխանակության մի փոքրիկ մասը միայն հիմնականում այն պատճառով, որ այդ արտադրանքը գնում է գլխավորապես արդյունաբերական վերամշակման՝ հանրապետության ներսում: Միջռեգիոնալ փոխանակությանը մասնակցում է նախ և առաջ (բայց ոչ միայն) սննդի արդյունաբերությունը, որում առաջատար դերը պատկանում է թեյի և գինեգործական, պահածոների, ծխախոտի, հանքային ջրերի արտադրությանը:

Հանրապետության տնտեսական կապերի բնույթը զգալի չափով որոշվում է ճյուղերի մասնագիտացման մակարդակով: Հանրապետության արդյունաբերության ճյուղերի ու ենթաճյուղերի մասնագիտացման մակարդակը որոշելու համար սովորաբար օգտագործում են տեղայնացման գործակիցները: Որքան բարձր է դրանց նշանակությունը, այնքան բարձր է ճյուղերի մասնագիտացման մակարդակը: Հանրապետությունում մասնագիտացման առավել բարձր մակարդակով է բնութագրվում թեթև արդյունաբերությունը: Թեթև արդյունաբերության մասնագիտացված ենթաճյուղերին են վերաբերում մետաքսի, տրիկոտաժի, բրդեղենի, ինչպես նաև կոշիկի ու կարի արդյունաբերության ճյուղերը:

Արտադրանքի ընդհանուր արտահանության մեջ նշանակալից է սննդի, թեթև արդյունաբերության մասնագիտացված ճյուղերի և մեքենաշինության բաժինը: 1970 թվականին այդ ճյուղերին բաժին էր ընկնում ամբողջ արտահանության 70,6 տոկոսը, 1980 թվականին՝ 75,7 տոկոսը, իսկ 1984 թվականին՝ 75,7 տոկոսը: Այս տվյալները վկայում են մասնագիտացված ճյուղերի արտադրանքի արտահանության ծավալի սիստեմատիկ աճի մասին, ինչպես նաև ամբողջ Միության մասշտաբով աշխատանքի տերիտորիալ բաժանման պրոցեսի հետագա խորացման մասին:

Վրացական ՍՍՀ-ի տնտեսական կապերի առանձնահատկությունները ի հայտ բերելու համար բացառիկ նշանակություն ունի արտադրանքի արտահանման աշխարհագրական կառուցվածքը, որը բնութագրվում է մեր հանրապետության արտադրանքի սպառողների լայն տարանկենտրոնացմամբ երկրի ողջ տարածքով մեկ:

Վրաստանի արտադրանքը իր սպառողին է գտնում բոլոր հանրապետություններում և տնտեսական շրջաններում, ինչպես նաև արտասահմանյան երկրներում: Սովետական Միությունում այդ արտադրանքի գլխավոր սպառողներն են Ռուսաստանյան Ֆեդերացիան, Ուկրաինան, Ղազախական ՍՍՀ-ն, Ուզբեկական ՍՍՀ-ն: Իսկ ինչ վերաբերում է Անդրկովկասյան հանրապետությունները կատարվող առաքումներին, ապա դրանք շատ մեծ չեն: Բավական է ասել, որ 1984 թվականի տվյալներով, Ադրբեջանական ՍՍՀ-ի բաժինը ընդհանուր արտահանության մեջ կազմում էր 2,3 տոկոս, իսկ Հայկական ՍՍՀ-ինը՝ 1,7 տոկոս:

Այդ նույն թվականին Ադրբեջանական ՍՍՀ էր արտահանվել 58 ճյուղերի արտադրանք (այն դեպքում, երբ Վրաստանը միջճյուղային հաշվեկշռի դասակարգմամբ ընդհանրապես արտահանում է 112 ենթաճյուղի արտադրանք): Գումարային հաշվարկմամբ դա կազմել է 132,3 միլիոն ռուբլի, ըստ որում առավել նշանակալից է եղել այնպիսի արտադրատեսակների արտահանության ծավալը, ինչպիսիք են լեռնաքիմիական արդյունաբերության արտադրանքը, ձուլման սարքավորումները, մետաղյա կառուցվածքները: Ադրբեջան արտահանված արտադրատեսակների տեսակարար կշիռը դրանց ընդհանուր արտահանության մեջ կազմում է համապատասխանաբար 36,5, 22,9, 26,2 տոկոս: Մեծ է նաև ալյուրաղացման և ձավարեղենի ար-

դյունաբերության մթերքների արտահանության բաժինը (33,3 տոկոս), փայտասղոցման ու փայտամշակման արդյունաբերության արտադրանքի, կահույքի, հավաքովի երկաթբետոնի արտահանության բաժինը, ինչպես նաև սննդի ու համակցված կերերի արդյունաբերության տեխնոլոգիական սարքավորումների տեսակարար կշիռը (15,8 տոկոս), հիմնական քիմիայի արտադրատեսակների և շինարարական կերամիկայի բաժինը:

Հայկական ՍՍՀ կատարվող արտահանության ծավալը հավասար է 100 միլիոն ռուբլու: Արտահանվում է միայն 47 ենթաճյուղերի արտադրանքը, որոնցից արդյունաբերության արտադրանքը ընդհանուր արտահանության մեջ կազմում է 49 տոկոս: Նշանակալից է նաև Հայաստան արտահանվող էլեկտրաէներգիայի և ջերմաէներգիայի, ջրամեկուսիչ նյութերի, շինարարական կերամիկայի, ինչպես նաև մեքենաշինության ճյուղերի արտադրանքի բաժինը:

Մեր հանրապետության պրոֆիլը բնութագրող ճյուղերի զարգացման լայն մասշտաբները կանխորոշում են ինչպես արտադրանքի արտահանության նշանակալի ծավալները, այնպես էլ անհրաժեշտ քանակությամբ պատրաստի արտադրանքի, դետալների ու հանգույցների ներմուծման ծավալը, մասնագիտացված և սպասարկող ճյուղերի պահանջները, ինչպես նաև բնակչության կարիքների բավարարումը: Վրացական ՍՍՀ-ի ներմուծման ընդհանուր ծավալը 1984 թվականի տվյալներով կազմում էր 5.476 միլիոն ռուբլի, իսկ արտահանությունը անցել էր 403,1 միլիոն ռուբլուց: Հանրապետության ներմուծման աշխարհագրությունը նույնքան լայն է, որքան և արտահանությանը: Վրացական ՍՍՀ-ին արտադրանք են առաքում բոլոր միութենական հանրապետությունները և երկրի տնտեսական շրջանները: Գլխավոր առաքողը Ռուսաստանյան Ֆեդերացիան է, որի բաժինը կազմում է ընդհանուր ներմուծման 45,5 տոկոսը, ինչպես նաև Ուկրաինան (14,1 տոկոս):

Անդրկովկասյան հանրապետությունների մեջ համեմատաբար մեծ է Ադրբեջանական ՍՍՀ-ի արտադրանքի առաքումների տեսակարար կշիռը (45 ենթաճյուղերից). դա կազմում է 388,3 միլիոն ռուբլի՝ ընդհանուր ներմուծման 7,1 տոկոսը: Ընդորում այնպիսի արտադրատեսակների առաքումների ծավալը, ինչպիսիք են էլեկտրաէներգիան և ջերմաէներգիան, նավթավերամշակման, հիմնական քիմիայի արտադրանքները, սինթետիկ կաուչուկը, հիմնական օրգանական սինթեզի արտադրանքները կազմում են համապատասխան արտադրատեսակների ընդհանուր ներմուծման համապատասխանաբար 44,3, 39,4, 70,9, 40,2, 86,8 տոկոսը:

Հայկական ՍՍՀ-ից ներմուծվում են 47 ենթաճյուղերի արտադրատեսակներ, որոնց ընդհանուր արժեքը կազմում է 80,1 միլիոն ռուբլի: Քիմիական մանրաթելերի, էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի, կաբելային առարկաների, շինարարական այլ նյութերի, կաշվի ու կոշկեղենի արդյունաբերության առարկաների առաքումներում Հայկական ՍՍՀ-ի բաժինը համապատասխանաբար կազմում է 15,4, 5,2, 6,2, 7, 8,1 տոկոս, իսկ քիմիական և նավթաքիմիական մեքենաշինության, ասբեստի ու ցեմենտի արդյունաբերության և բամբակեղենի արտադրանքների ներմուծման մեջ՝ 3,9, 3,8, 3,3 տոկոս:

Տնտեսական գործունեության որակական վերակառուցման փուլում աճում է տնտեսական կապերի կատարելագործման պրոբլեմի նշանակությունը: Այդ պրոբլեմի լուծումը սերտորեն կապված է պլանավորման, այդ կապերի կարգավորման հիմքում դրվելիք սկզբունքների հիմնավորման հետ: Ներկայումս չի կիրառվում արտադրանքի ներմուծման ու արտահանման պլանային հաշվեկշռի կազմումը ըստ տնտեսական շրջանների ու միութենական հանրապետությունների: Ուստի միջռեգիոնալ տնտեսական կապերի պլանավորման գոյություն ունեցող մեթոդները պատշաճ չափով չեն նպաստում տնտեսական համագործակցության ռացիոնալացմանն ու ամրապնդմանը:

Միջռեգիոնալ տնտեսական կապերի կատարելագործման նպատակով անհրաժեշտ է մշակել միջռեգիոնալ առումով ներմուծման ու արտահանման հաշվետու և պլանային հաշվեկշիռներ: Այդ հաշվեկշիռների վերլուծության հիման վրա հնարավորություն կստեղծվի հետևելու արտադրանքի ներմուծման ու արտահանման կառուցվածքի փոփոխությունների դինամիկային, վերացնելու պատահական տարրերը միջտերիտորիալ տնտեսական կապերի կազմակերպման գործում և երկրի ժողովրդատնտեսական կոմպլեքսի տեսակետից գնահատելու պլանային ժամանակաշրջանում ստեղծված տնտեսական կապերի արդյունավետությունը:



# ԳՈՐԾԱՐԱՆԱՅԻՆ ՄԱԿՆԻՇԻ ՊԱՏՎԻ ՀԱՄԱՐ

**Ռ. ԱՂԱԵՎ**
**Բաքվի կենցաղային էլեկտրասարքերի արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր**

ԲԱՔՎԻ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱՍԱՐՔԵՐԻ արտադրական միավորումը իր կազմի մեջ ներառում է չորս գործարան: Գլխամասային ձեռնարկությունը (սառնարանների գործարանը) հիմնադրվել է 1960 թվականին: Դրա արտադրանքը գրեթե երկու տասնամյակ փաստորեն պահանջարկ չէր վայելում: Դեռ ավելին, ճյուղի վերակառուցման կապակցությամբ ծագեց նույնիսկ արտադրությունը փակելու հարցը: Սակայն մոբիլիզացնելով ներքին ռեզերվները, լրիվ թարմացնելով արտադրանքի անվանացանկը և անզիջում պայքար մղելով խոտանարարների դեմ, ձեռնարկության կոլեկտիվը հասավ արմատական որակական տեղաշարժերի: Եվ արդեն ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում միավորումը նշվեց բարձրորակ արտադրանք թողարկող ձեռնարկությունների թվում:

... Երբ 1971 թվականին ճապոնական «Նիպոն էլեկտրիկ ինդաստրի» ֆիրմայից գնվեց շարժիչ-կոմպրեսորների արտադրության գործարան, թվում էր, թե դրանով իսկ կհաջողվի միանգամից լուծել արդիական սառնարանների արտադրության պրոբլեմը: Սակայն շուկայում հաջողության հասնելու ուղին երկար էր ու դժվարին:

Արտադրության կազմակերպման արմատական պրոբլեմները լուծելուց առաջ հարկավոր էր գտնել թողարկվող արտադրանքի «չափանմուշը»: Այդպիսի չափանմուշ ընտրվեց Մինսկի գործարանի սառնարանների կոնստրուկցիան, որը լայն պահանջարկ է վայելում ներքին շուկայում: Ըստ որում մինսկցիները մեզ օգնեցին ամենագլխավոր հարցում. կադրերի պատրաստման, կոնստրուկտիվ խնդիրների լուծման գործում: Այդպիսով, սառնարանների որակը բարելավվեց, իսկ գործարանը ստացավ «գոյատևելու» իրավունք: Բայց կայուն պահանջարկ ապահովելու համար անհրաժեշտ էր բավարարել գնորդների կողմից մեր մակնիշին ներկայացվող պահանջները, ավելի խնայողական և հարմարավետ դարձնել թողարկվող սառնարանները, բարելավել դրանց արտաքին տեսքը: Դրան հասնելու համար լուրջ խնդիրներ էր դրվում միավորման կոնստրուկտորների և տեխնոլոգների առջև:

### ՄԻԱՅՆ ՓԱՍՏԵՐ

✦ *Բաքվի կենցաղային էլեկտրասարքերի արտադրական միավորման չորս գործարանում աշխատում է ավելի քան 7 հազար մարդ:*

✦ *1987 թվականի փետրվարին գլխամասային գործարանի հոսքագծից իջավ 4 միլիոներորդ սառնարանը, իսկ ամեն տարի արտադրվում է 320 հազարից ավելի:*

Այդ համատեղ գործունեության պտուղները մարմնավորվեցին նոր արտադրանքի՝ «Չինար» մոդելի սառնարանների մեջ, որ զանգվածաբար թողարկվում են 1982 թվականից: Ամեն տարի գնորդի դատին է հանձնվում մի նոր մոդել: Արհեստական սառնության մեր սարքերի ներկայիս պահանջարկն այնպիսին է, որ զգալիորեն կրճատել ենք պատրաստի արտադրանքի պահեստի տարածությունը, կազմակերպել դրա շուրջօրյա առաքում: Ամեն օր գլխամասային գործարանից ավելի քան 1200 սառնարան է առաքվում այլևայլ հասցեներով, այդ թվում՝ աշխարհի 20 երկրներ:

Թվում էր, թե մեր արտադրանքի կայուն պահանջարկ ենք ապահովել մի 10—15 տարվա համար և կարելի է միայն թեթևակի արդիականացնել կոնստրուկցիան ու ապրել «հին պաշարով»: Բայց մանրակրկիտ վերլուծությունը ցույց է տվել, որ ձեռնարկությունը 2—3 տարի հետո կարող է կանգնել «կոտրած տաշտակի» առաջ, ընկնել կրկին գնորդին նվաճելու հոգսի մեջ: Դրանից խուսափելու համար հարկավոր է սառնարանի տեխնիկական մակարդակը հասցնել համաշխարհային ստանդարտների մակարդակին: Այդ նպատակով գործարանի կոնստրուկտորները մշակել, իսկ տեխնոլոգներն ու տնտեսագետները հաշվարկել են մինչև 12-րդ հնգամյակի վերջը սկզբունքորեն նոր սերիայի սառնարանների արտադրության հնարավորությունը՝ «Չինար—11» «...—23»: Երեք խցիկով այդ սառնարանները, որոնց

բոլոր պարամետրերի կարգավորումը կիրականացվի միկրոպրոցեսորի օգնությամբ, կբավարարեն ամենախստապահանջ սպառողներին:

Ներկայումս միավորման առջև բացվել են նոր հեռանկարներ. որոնում ենք ազատ փոխարկելի վալյուտայով միջազգային շուկա դուրս գալու ելք, նախնական բանակցություններ ենք վարում արտասահմանյան ֆիրմաների հետ համատեղ ձեռնարկություններ ստեղծելու մասին: Պլանավորված է 1989 թվականին միավորումում ստեղծել արտաքին առևտրական տնտհաշվարկային ֆիրմա: Ուշագրավ է այն, որ միավորումը չունի և երբեք չի ունեցել արտահանության հատուկ տեղամաս կամ արտադրամաս. բոլոր սառնարանները իջնում են գործարանի միասնական հոսքագծից, այսինքն ներքին և արտաքին շուկա է ուղարկվում նույն արտադրանքը: Տարբերությունը որոշվում է միայն սպառողների ուրույն պահանջներով. ասենք, եվրոպական երկրներ առաքվող սառնարանները հանդերձվում են եռշիղ քուղով, իսկ Կուբա են ուղարկվում կոմպրեսորների արևադարձային տարբերակով սառնարաններ:

Այդ ամենի հետևում միավորման կոլեկտիվի, նրա մասնագետների, կուսակցական կազմակերպության մեծ ու լարված աշխատանքն է, ըստ որում՝ ամենօրյա, քրտնաջան, ստեղծագործական: Այդ աշխատանքի աշխուժացման կենսական անհրաժեշտությունը պայմանավորվում է էկոնոմիկայի կառավարման՝ երկրում ծավալված արմատական վերակառուցմամբ, որի ուղիները նշեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը:

Ձեռնարկության (միավորման) համար առաջին հերթին ստեղծվում է ավելի բարենպաստ տնտեսական միջավայր, ընդլայնվում են նրա իրավունքները և միաժամանակ բարձրանում է պատասխանատվությունը: Վերակառուցմանը համապատասխան, ուժեղացվում են ձեռնարկությունների ինքնազարգացման ներքին խթանները, աշխատողների եկամուտները ավելի սերտորեն են կապակցվում կոլեկտիվի աշխատանքի վերջնական արդյունքների, պայմանագրերի կատարման, արտադրանքի որակի, շահույթի հետ:

Վերցնենք, օրինակ, արտադրանքի որակը: Չէ որ հարկավոր է անշեղորեն բարելավել դրա սպառողական հատկությունները: Եվ այդ գործում անգնահատելի է վերահսկողության նոր ձևի՝ արտադրանքի պետական ընդունման օգնությունը:

Ի՞նչ է արված այդ ուղղությամբ: Խստացվել են տեխնոլոգիային ներկայացվող պահանջները, ստուգվել են բոլոր սարքավորումները, ամրապնդվել է կարգապահությունը, բարձրացվել յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը: Գլխամասային ձեռնարկությունում ստեղծվել է հատուկ հանձնաժողով՝ միավորման գլխավոր ինժեների ղեկավարությամբ, որն ամեն օր խստիվ որոշակի ժամին կատարում է վերադարձված արտադրանքի թերությունների վերլուծություն, պարզում, թե որտեղ, երբ և ում մեղքով է թույլ տրվել խոտանը: Այնուհետև ավտոմատորեն սկսում է գործել տեխնոլոգիական պրոցեսի խախտման պատճառով կրած վնասների փոխհատուցման՝ մեր տնտեսագետների առաջարկած կարգը: Խոտան թույլ տված արտադրամասը, տեղամասը պարտադիր կարգով փողը վերադարձնում է գործարանի դրամարկղը: Բացի այդ, նրանցից բռնագանձվում են ձեռնարկության ներկայացուցիչների գործուղման ծախսերը, ոչ պիտանի արտադրանքը ձեռնարկություն վերադարձնելու տրանսպորտային ծախքերը: Դրանք խիստ, բայց արդար և ամենագլխավորը՝ ներգործուն միջոցներ են:

Միավորումում սահմանված է ձեռնարկության ստանդարտ, որով կանոնակարգվում է արտադրանքի հանձնումը առաջին իսկ ներկայացմամբ: Դա խստորեն կապված է նյութական խթանման համակարգի հետ, որը նպատակամղված է ամենից առաջ որակին: Հիմա արտադրամասերում լավ գիտեն, որ վաստակի 30 տոկոսի չափով դրամապարգև է վճարվում միայն ամբողջ արտադրանքը առաջին ներկայացմամբ հանձնելու դեպքում: Իսկ եթե արտադրամասի կողմից արտադրանքի հանձնման մակարդակը 97 տոկոսից ցածր է լինում, տվյալ դեպքում որակի համար ոչ մի դրամական պարգև չի նախատեսվում: Այդպիսով, սահմանվել է կոլեկտիվ պատասխանատվություն, և խոտանարարի կողքով այժմ ոչ ոք անտարբեր չի անցնում:

Դրա շնորհիվ շեշտակիորեն կրճատվել են անարտադրողական ծախսերը, պատրաստի արտադրանքի ցածր որակի համար գանձվող տուգանքները, մի բան, որը համապատասխանաբար հանգեցրել է արտադրանքի ինքնարժեքի իջեցման: Ներկայումս միավորումում մշակվում են տեխնիկական վերահսկողության բաժինների պատասխանատվության բարձրացման միջոցներ: Փորձում ենք այստեղ ևս չսահմանափակվել տեղական միջոցառումներով, այլ ապահովել համակարգված մոտեցում, առավել ևս, որ այստեղ պրոբլեմները ավելի քան շատ են: Դրանցից ամենասուրը տեխնիկական վերահսկողության բաժինների վերահսկիչների որակական մակարդակն է, նրանց աշխատանքի հեղինակության հարցը: Արդեն առաջին քայլերն են արվել այդ ասպարեզում, մասնավորապես, վերանայվել է աշխատանքի վարձատրության համակարգը: Եթե առաջ այդ կատեգորիայի աշխատողների ամսվա միջին աշխատավարձը կազմում էր 145 ռուբլի, ապա այժմ բարձրացվել է մինչև 200 ռուբլու:



Միավորումը հաջորդ տարվանից անցնում է լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման: Բայց համախառն ցուցանիշները մնում են: Այդ «համախառն հանգույցը» խանգարում է նախաձեռնության ծավալմանը: Կարիք կա՞, արդյոք, ասելու, որ աշխատողներին տխրահռչակ համախառնի կատարմանը նպատակամղելը նրանց ստիպում է դեմ գնալու արտադրանքի որակը բարելավելու, ինքնարժեքն իջեցնելու, աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու իրենց իսկ կոչերին: Իսկ մենք պետք է ավելի հեռուն գնանք. կազմակերպենք նախավաճառքային և հետվաճառքային սպասարկում ինչպես երկրում, այնպես էլ արտասահմանում: Շուտով Բաքվում կբացվի «Էլմա» ֆիրմային խանութը, որտեղ կվաճառվի մեր միավորման արտադրանքը: Մինչև 12-րդ հնգամյակի վերջը շահագործման կհանձնվի կենցաղային տեխնիկայի վաճառքի, սպասարկման ու նորոգման տեխնիկատնտեսական կենտրոնը: Գործարանի ներկայացուցիչներն սկսել են մասնակցել արտասահմանում գործող սովետական տեխնիկատնտեսական կենտրոնների աշխատանքին:

Միավորումը սերտ կապերի մեջ է նաև անդրկովկասյան հանրապետությունների հետ, որոնցում «Զինար» մակնիշի սառնարանները կայուն հեղինակություն են նվաճել: Եթե անցյալ տարի Հայաստանում ու Վրաստանում վաճառվեց այդ մակնիշի 4,5 հազար սառնարան, ապա 1987 թվականի միջհանրապետական տոնավաճառում ներկայացվեց գրեթե 13 հազարի հայտ: Ասենք, որ մեր արտադրության համար Երևանից ստանում ենք քսանյութեր և փայլուն ցինկապատման բաղադրամասեր, Ռուսթավից՝ ազոտաթթու և ածխաթթու գազ, Քութայիսից՝ տարբեր տեսակի սոսինձ: Մի խոսքով, մեր մակնիշի հեղինակության բարձրացման գործում իրենց ավանդը ունեն նաև Վրաստանի ու Հայաստանի ձեռնարկությունները: Իսկ մեր միավորման աշխատողներն օգնություն են ցույց տվել Լենինականի կոմպրեսորների գործարանում տեխնոլոգիական գծի կարգավորմանը:

## ՄԻԱՅՆ ՓԱՍՏԵՐ

*✦ 12-րդ հնգամյակի տարիներին իրացվելու են 57 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, այդ թվում 37 միլիոնը տեխնիկական վերազինման նպատակներով:*

*✦ Նախատեսված է՝*

*— տեղակայել թվածրագրային կառավարմամբ 50 հաստոց և 5 ավտոմատ գիծ, 15 արդյունաբերական ռոբոտ, գրեթե 170 միավոր բարձրարտադրողական սարքավորում:*

*— ձեռքի աշխատանքի օգտագործման մակարդակն իջեցնել մինչև 20 տոկոս:*

*— սարքավորումների հերթափոխայնության գործակիցը հասցնել 1,71-ի:*

*— շահույթն ավելացնել 2,9 անգամ:*

Միավորումում կուտակված փորձը ցույց է տալիս, որ տնտեսավարման նոր պայմաններում արդյունավետ աշխատելու երաշխիքներն են. առաջին, արտադրական և սոցիալական հարցերում մարդկային գործոնի դերի ուժեղացումը. երկրորդ, թողարկվող արտադրանքի որակի խիստ վերահսկողությունը. երրորդ, արտադրության տեխնիկական վերազինման ու վերակառուցման ժամանակին իրականացումը. չորրորդ, անվանացանկի և տեսականու գծով պայմանագրային պարտավորությունների 100 տոկոսանոց կատարումը: Եվ վերջապես, գնորդների շահերի առավելագույն բավարարումը, ֆիրմային-սերվիսային սպասարկման կազմակերպումը:

# ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԼԻԱՐԺԵՔ ՀԱՏՈՒՑՄԱՄԲ

**Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**Կամոյի շրջանային ագրոարդի միավորման խորհրդի նախագահ**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԽՆԴԻՐ ԴՐԵՑ ամենակարճ ժամանակամիջոցում երկիրն ապահովել պարենով: Եվ այդ խնդիրը լուծելու համար, ինչպես նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, հարկավոր է բարձրացնել ագրոարդյունաբերական համալիրում արտադրական պոտենցիալի օգտագործման արդյունավետությունը, ուժերն ու միջոցները համակենտրոնացնել կարևորագույն տեղամասերում, որոնք ապահովեն դրանց առավել մեծ հատույցը:

Կուսակցության այս պահանջները գործողության ուղեցույց են Կամոյի շրջանային ագրոարդի միավորման, նրա խորհրդի համար: Այսօր մեր միավորումը, որն ընդամենը երկու տարվա կենսագրություն ունի, մի բարդ օրգանիզմ է, որը կառավարելու համար հարկավոր են բանիմացություն, ուժերի գերագույն լարում, նորը տեսնելու և արմատավորելու կարողություն:

Կուսակցության առաջադրած վերակառուցման և արագացման կուրսի գործողության պայմաններում մեր գլխավոր հոգսը տնտեսություններին ցույց տրվող մըշտական ու գործնական օգնությունն է, շրջանի գյուղատնտեսական արտադրության զարգացման արագացման, տնտեսական աճի ռեզերվների արդյունավետ օգտագործման ապահովումը:

Հիրավի, քիչ բան չի արվել անցած ժամանակաշրջանում: Միավորման խորհուրդը պարբերաբար ու համակողմանիորեն անդրադառնում է գյուղական վայրերի տնտեսական և սոցիալական զարգացման, մասնավորապես թույլ տնտեսություններին օգնություն ցույց տալու հարցերին, միջոցներ ձեռնարկում նրանց էկոնոմիկան որակական նոր մակարդակի բարձրացնելու համար: Արդյունքները վատ չեն. գյուղատնտեսական արտադրությունն այսօր դարձել է ավելի արտադրողական, ավելի ֆոնդազինված ու էներգազինված: Միավորման հիմնական ֆոնդերը 1986 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, մեծացել են 8,7 տոկոսով: Հզորացել է տնտեսությունների մեքենատրակտորային համալիրը, աճել են հանքային պարարտանյութերի և մյուս նյութատեխնիկական միջոցների ծավալները: Անցած տարի կառուցվել և գործարկվել են Բասիկյանի պետական տնտեսությունում՝ 2000-ական տոննա տարողությամբ կարտոֆիլի երկու պահեստ, Այրիվանում՝ երինջների անեցման համալիրի երեք տիպային գոմ: Անցկացվել են ոռոգման նոր ցանցեր:

Մեծ ուշադրություն ենք նվիրում գյուղի սոցիալական զարգացմանը: Պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվել ու շահագործման է հանձնվել մի քանի բնակելի տուն, Կամոյի սովխոզ-տեխնիկումի բանվոր-ծառայողների ընտանիքները, Ծաղկաշեն և Լճափ գյուղերն ապահովվել են բնական գազով, Լանջաղբյուրը՝ խմելու ջրով:

Ագրոարդի միավորման ստեղծմամբ վերակառուցվել և կատարելագործվել է պլանաֆինանսական աշխատանքը: Այսօր այդ ասպարեզում շեշտը դրվում է տնտեսական լծակների և խթանների ներգործության ուժեղացման, պլանավորման առաջադիմական նորմատիվների կիրառման վրա: Պլանավորման հիմքում ընկած է տնտեսության ռեսուրսային պոտենցիալը: Արտադրական հարցերի լուծման գործում



ընդլայնվել է տնտեսությունների ղեկավարների և կոլեկտիվների ինքնուրույնությունը, բարձրացել նրանց պատասխանատվությունը աշխատանքի արդյունավետության համար: Դեռևս անցած տարվա հուլիսի 1-ից, միավորման խորհրդի որոշմամբ ինչպես մեր ապարատի, այնպես էլ տնտեսությունների ղեկավար աշխատողները փոխադրվել են վարձատրության նոր կարգի՝ ըստ վերջնարդյունքների:

Վերակառուցման ու արագացման արդի պայմաններում առավել կարևորվում է նյութատեխնիկական մատակարարման պատշաճ կազմակերպումը: Այդ նպատակով ստեղծված մեր բազան միավորման վճռական օղակն է: Նրա ստեղծումը հնարավորություն ընձեռեց վերացնել գերատեսչական քաշքշուկները, պարզեցնել, անմիջական դարձնել մատակարարումները, կրճատել տեխնիկայի նորոգման ծախսերը, էժանացնել սպասարկումը: Գյուղատնտեսական տեխնիկան, պահեստամասերը, շինանյութերը, նավթամթերքներն ու քսայուղերը կենտրոնացած կարգով տնտեսություններին է բաշխում միավորման խորհուրդը:

Ակնհայտ են կապալային եղանակի առավելությունները: Անցած տարի, օրինակ, այդ եղանակով գործող կոլեկտիվներում աշխատանքի արտադրողականությունը 15—25 տոկոսով բարձր էր, քան սովորական ստորաբաժանումներում: Նորույթին ապավինած բանվորների ամսական միջին աշխատավարձը կազմեց 250—350 ռուբլի կամ գրեթե 1,5—2 անգամ ավելի, քան ստացան սովորական բրիգադներում ընդգրկվածները: Կապալային եղանակով աշխատողների համար հեկտարից 30 ցենտներից ավելի հացահատիկի, 300 ցենտներից ավելի կարտոֆիլի, 500 ցենտներից ավելի բանջարեղենի ստացումն արդեն անցած փուլ է: Նրանք ձգտում են նվաճել ավելի բարձր բնագծեր:

Մեր միավորման խորհուրդը, կուսակցության շրջանային կոմիտեի ղեկավարությամբ և աջակցությամբ, միջոցներ է ձեռնարկում՝ հանրային արտադրությունը կուսակցության առաջադրած վերակառուցման ու արագացման կուրսի պահանջներին համապատասխան կազմակերպելու համար: Իսկ կուսակցությունը այսօր պահանջում է վերակառուցումն իրականացնել բոլոր ոլորտներում, բոլոր մակարդակներում: Ուրեմն, առաջին հերթին պետք է վերակառուցվենք մենք՝ շրջանային ագրոարդի միավորման աշխատողներս:

---

# ՀԱՆԴԻՊՈՒՄ ՂԱԶԱԽՈՒՄ

**ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ամյակին նվիրված միացյալ համարը պատրաստվել է Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմների տեսական-քաղաքական ամսագրերի ստեղծագործական կոլեկտիվների ջանքերով: Խմբագրությունների ներկայացուցիչների աշխատանքային հանդիպումներից մեկը տեղի ունեցավ Ղազախում (Ադր. ՍՍՀ): Ընտրությունը պատահական չէր. այդ շրջկենտրոնը գտնվում է Անդրկովկասի երեք հանրապետությունների սահմանագծում: Ասենք նաև, որ նույն հաջողությամբ ու իրավունքով հանդիպումը կարող էր անցկացվել Իջևանում, Նոյեմբերյանում կամ Մառնեուլում:**

**Անդրկովկասյան հանրապետությունների այս երեք հարևան սահմանամերձ շրջանները հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում միմյանց հետ սերտորեն կապված են համագործակցության ամենօրյա կապերով: Այս առումով նրանց համար գործունեության տևական ժամանակի կոնկրետ ծրագիր է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ուժեղացման վերաբերյալ համատեղ միջոցառումների պլանը, որը հաստատել են բոլոր չորս շրջանների կուսշրջկոմների բյուրոները:**

**Տասներկուերորդ հնգամյակի լարված պլանների կատարմանը նպաստում են չորս շրջանների արդյունաբերական ու ագրոարդյունաբերական ձեռնարկությունների սոցիալիստական մրցությունը, գյուղատնտեսության առաջավորների, մասնավորապես խաղողագործների աշխատանքի փորձի փոխանակումը: Օգտակար շատ բան է տալիս նաև «Ագրոարդի» շինարարության համակարգում արտադրության կազմակերպման արդի եղանակների ներդրումը:**

**Գաղափարաքաղաքական աշխատանքի ներգործունությանը, դաստիարակչական պրոցեսի արդյունավետությանը էապես նպաստում են սովորողների ինտերնացիոնալ դաստիարակության, ռուսաց լեզվի՝ ազգամիջյան հաղորդակցության լեզվի ուսուցման, ինչպես**

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱԳՐՈԱՐԴԸ ԵՐԵԿ ԵՎ ԱՅՍՕՐ

**Գ. ՄԳԵԼԱՁԵ**
**Վրացական ՍՍՀ պետագրոարդի նախագահ**

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1987 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ մեր բոլորիս ուշադրությունը բևեռեց ագրոարդյունաբերական արտադրության կառավարման նոր համակարգի արդյունավետ օգտագործման հարցերի վրա: Դրա բարելավման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման խնդիրը Վրաստանի համար առանձնահատուկ հրատապություն է ձեռք բերել վերջին 10—15 տարում, երբ հանրապետությունում լայնորեն ծավալվել են գյուղատնտեսության կառավարման ժամանակակից ձևերի որոնման աշխատանքները:

Ինչպես պրակտիկան է վկայում, մեր հետագա առաջընթացին խանգարում էր հիմնականում երկու հանգամանք՝ գերատեսչական ցրվածությունը և հողի միասնական տիրոջ բացակայությունը: Դրան պետք է ավելացնել ռեգիոնի լեռնային ռելիեֆի հետևանքով առաջացած դժվարությունները, յուրահատուկ բնական պայմանները, տնտեսություն վարելու պատմականորեն ստեղծված մեթոդները, սահմանված պահանջները հողագործության և անասնապահության արտադրանքի արտադրության նկատմամբ, գյուղատնտեսության և վերամշակող արդյունաբերության լավագույն փոխհաշվեկշռված կապերի համամասնականության պահպանումը և այլ գործոններ: Ուստի ամենևին էլ պատահական չէր, որ իրականացվեց ամբողջ գյուղատնտեսական արտադրության ինտեգրացման, գյուղատնտեսության կառավարման այնպիսի մի մարմնի ստեղծման փորձը, որը ոչ միայն հաղթահարեր գոյություն ունեցող դժվարությունները, այլև լուծեր կոլտնտեսային, սովխոզային արտադրության կազմակերպման խնդիրը, որ նախկինում ի վիճակի չէր լուծել գերատեսչորեն փոշեցրված ապարատը:

---

նաև բուժպաստարկման բարելավման նպատակին ուղղված համատեղ գիտագործնական կոնֆերանսները, գաղափարախոսական աշխատողների սեմինար խորհրդակցությունները, ժողովուրդների բարեկամության համալսարանի պարապմունքները: Մեծ նշանակություն են ձեռք բերում երիտասարդության կապերն ու կոնտակտները, նրանց համատեղ միջոցառումները, ինչպիսիք են կոմերիտական ու պիոներական աշխատողների սեմինար խորհրդակցությունները, դպրոցների ու պրոֆտեխուսումնարանների սովորողների հետ կուսակցության, աշխատանքի ու պատերազմի վետերանների հանդիպումները, Կարմիր կամըրջի մոտ պատանի զբոսաշրջիկների հավաքները, մարզական միջոցառումները, երիտասարդ ստեղծագործողների աշխատանքների ցուցահանդեսների կազմակերպումը:

Ուշագրավ էր Անդրկովկասի երեք եղբայրական հանրապետությունների երիտասարդության ավանդական՝ քառերորդ հանդիպումը, որ տեղի ունեցավ Իջևանում, Հայաստանի հյուսիսային մուտքը խորհրդանշող հուշարձանի մոտ: Այստեղ էին եկել Ղազախի, Մառնեուլի և Գարդաբանի շրջանների պատվիրակները: Հյուրերը եղան Աչաջրի սովխոզում, որտեղ միմյանց պատմեցին իրենց աշխատանքային հաջողությունների մասին, ծանոթացան առաջավոր փորձին: Հանդիպման ծրագիրը հարուստ էր բազմաբնույթ միջոցառումներով: Գործարար հանդիպումների ժամանակ, որոնք կայացան Իջևանի կուլտուրայի և հանգստի զբոսայգում, զրույցների գլխավոր թեման կոմերիտական աշխատանքի բարելավումն էր: Աշխույժ ու հետաքրքիր անցավ «Երիտասարդությունը և վերակառուցումը» պրոբլեմի քննարկումը:

Ժողովրդական իմաստությունն ասում է. «Մարդը առանց բարեկամների նույնն է, ինչ ծառն առանց արմատների»: Սեփական փորձով վաղուց այդ ճշմարտությանն են հանգել բարեկամ-հարևանները: Եվ ապրած յուրաքանչյուր օր այդ է հաստատում:



Նշենք, որ ագրոարդյունաբերական համալիրի կառավարման ժամանակակից ձևերի որոնումները հանրապետությունում սկսվեցին ամենևին ոչ տնտեսապես ուժեղ ռեգիոնում (որտեղ փորձի արդյունքները կարող էին ավելի մեծ չափով պայմանավորված լինել այլ մոմենտներով), այլ առավել հետամնաց շրջաններից մեկում՝ Աբաշայի շրջանում: 1974 թվականին այստեղ սկսված փորձը անցել է բավական բարդ ուղի: Գիտական ընդհանրացման ու դրա արդյունքների տարածման անհրաժեշտությունը լրիվ բխում էր կուսակցության այն հայտնի ցուցումից, որ արտադրական հարաբերությունների ձևերը այն փուլում չէին համապատասխանում գյուղի արտադրողական ուժերի զարգացման մակարդակին:

1978 թվականից փորձն ընդունեց ավելի լայն մասշտաբներ: Հանրապետության 14 շրջաններում ստեղծվեցին գյուղատնտեսության և ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի կառավարման նոր մարմիններ: Այդ ժամանակից սկսած կյանքը, որը թելադրել էր հողագործության և անասնապահության արտադրանքի արտադրության, մթերման, վերամշակման ու իրացման պրոցեսների կառավարման միասնական մարմին ստեղծելու անհրաժեշտությունը, ուղղումներ մտցրեց նաև Աբաշայի փորձի մեջ: 1982 թվականին Աբաշայի, Մախարաձեի և մյուս շրջանների փորձի հիման վրա հանրապետության բոլոր շրջաններում ստեղծվեցին ագրոարդյունաբերական միավորումներ: Գյուղատնտեսական արտադրության պետական կոմիտեի կազմավորմամբ բարելավվեց ագրոարդյունաբերական համալիրի կառավարման կառուցվածքը հանրապետական մակարդակով: Դրանով իսկ հնարավորություն ստեղծվեց էական փոփոխություններ մտցնելու հանրային արտադրության կազմակերպման ձևերի մեջ, սոցիալիստական ընդլայնված վերարտադրության կառուցվածքում, ինտեգրացման խնդիրներին համապատասխան կատարելագործելու արտադրանքի արտադրության ու սպառման հարցերը՝ դրա արտադրության, վերամշակման, փոխադրման ու իրացման օրգանական փոխկապակցության հիման վրա:

Երկու տարի է անցել այն ժամանակից, երբ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ կազմվել է պետական ագրոարդյունաբերական կոմիտե: Ներկայումս հանրապետության ագրոարդում կենտրոնացված է գրեթե վեց միլիարդ ռուբլու արդյունաբերական պոտենցիալ, այդ թվում գյուղատնտեսության բնագավառում՝ չորս միլիարդ ռուբլու, որը գրեթե երկու անգամ գերազանցում է 1975 թվականի փաստական մակարդակը:

Ագրոարդի համակարգում կենտրոնացված են ավելի քան 25000 ձեռնարկություն և կազմակերպություն, այդ թվում 1300 կոլտնտեսություն և սովխոզ, ավելի քան 80 հազար տրակտոր, բեռնատար ավտոմեքենա, կոմբայն և այլ տեխնիկա: Համակարգի ձեռնարկություններում և կազմակերպություններում աշխատում են մոտ մեկ միլիոն մարդ, այդ թվում 45.000 մեխանիզատոր, տասնյակ հազարավոր գյուղատնտեսներ, ինժեներներ, անասնաբույժներ, տնտեսագետներ և այլն: Ագրոարդյունաբերական արտադրության գիտական ապահովման գործին են ծառայում 16 գիտահետազոտական և նախագծային ինստիտուտներ՝ հինգ և կես հազար գիտական աշխատողներով:

Արդեն տասներկուերորդ հնգամյակի սկզբին հանրապետության պետագրոարդը հասել է որոշակի հաջողությունների: 1986 թվականին գյուղատնտեսության արտադրանքի համախառն ծավալը 1985 թվականի համեմատությամբ մեծացել է 1,2 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը հանրային սեկտորում աճել է 0,2 տոկոսով, հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը կազմել է 23,9 ցենտներ, որը 16 տոկոսով գերազանցում է տասնմեկերորդ հնգամյակի ցուցանիշը: Մսի արտադրությունը հանրային տնտեսությունում աճել է 3 տոկոսով, կաթինը՝ 5, ձվինը՝ 8 տոկոսով:

Հաջողություններ կան նաև սննդի արդյունաբերության մեջ, որտեղ ապրանքային արտադրանքը մեկ տարում աճել է 5,9 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 6,9 տոկոսով: Գերակատարվել են մսի, յուղի, պանրի, կաթի, մարգարինի, շաքարի, թեյի, պահածոների և ոչ ալկոհոլային խմիչքների արտադրության պլանները: Անցյալ տարի նախորդ տարվա համեմատությամբ իրացվել է 227 միլիոն ռուբլով ավելի արտադրանք:

Չնայած ակնառու հաջողություններին, Վրաստանի պետագրոարդի գյուղատնտե-

ության և սննդի արդյունաբերության առանձին ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքի վերակառուցումը ընթանում է չափազանց դանդաղ, թույլ են օգտագործվում գոյություն ունեցող ռեզերվները: Վարչությունը և կենտրոնական ապարատի մյուս կառուցվածքային ստորաբաժանումները աշխատում են հին ձևով: Ավելին, որոշ ճյուղային օղակներ ինտեգրացված միավորումներից ժառանգություն են ստացել նրանց նեղ գերատեսչական վերաբերմունքը գործի նկատմամբ: Պտուղ-բանջարեղենի արտադրության ու վերամշակման վարչությանը չափազանց քիչ են հուզում հացահատիկի արտադրության պրոբլեմները, ճիշտ այդպես էլ խաղողի արտադրության ու վերամշակման վարչությունը ոչ մի հետաքրքրություն չի ցուցաբերում բանջարեղենի մթերման վիճակի նկատմամբ:

Դեռևս թույլ են օգտագործվում գյուղատնտեսական ձեռնարկությունների և վերամշակող արդյունաբերության ինտեգրացման հնարավորությունները: Այստեղ չափազանց դանդաղ են արմատավորվում նորարարությունները. շարունակում է պահպանվել մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության ղեկավարման իրեն սպառած պրակտիկան: Միայն դրանով կարելի է բացատրել, թե պետկոմիտեի վարչությունները ինչու են թերագնահատում շրջանային օղակները: Այսպես, ընթացիկ տարվա չորս ամսում պետագրոարդի կենտրոնական ապարատից շրջանային միավորման գլխի վրայով Սագարեջոյի և Գուրջաանիի անասնավերամշակող ձեռնարկությունները ստացել են 50 զանազան ցուցումներ ու առաջադրանքներ:

Եթե անցյալ տարվա հունվարի 1-ից մինչև մայիսի 1-ը պետական կոմիտեն տեղերն էր ուղարկել 58 հազար կարգադրություն, ապա ընթացիկ տարվա համապատասխան ժամանակաշրջանում այդ թիվը մեծացել է 40 հազարով, այդ թվում 100 միավորով ավելացել է հրամանների թիվը: Ինչպես տեսնում ենք, կենդանի կազմակերպչական աշխատանքը փոխարինվում է թղթաբարությամբ:

Ոչ քիչ մեղադրանքների առիթ է տալիս նաև կոմիտեի պլանային ծառայությունների գործունեությունը, որոնք առաջվա նման թելադրում են տնտեսություններին, թե ինչ կուլտուրաներ ցանեն, ինչպես բերքը հավաքեն, ինչ ծավալով պլանավորեն դաշտերի ու ֆերմաների բերքատվությունն ու մթերատվությունը: Դրա հետևանքով ժամանակ չի մնում իրական օգնություն ցույց տալու շրջանային ագրոարդյունաբերական միավորումների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներին ու մասնագետներին այնպիսի հարցերի լուծման գործում, ինչպիսիք են տնտեսավարման տնտեսական մեխանիզմի տիրապետումը, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության և տնտհաշվարկի առաջադիմական ձևերի արմատավորումը, անցումը ինքնածախսածածկման ու ինքնաֆինանսավորման և այլն:

Ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավար աշխատողները դեռևս լավ չեն կողմնորոշվում ֆինանսական տնտեսության կազմակերպման, պետբանկի հետ ունեցած փոխհարաբերության հարցերում, անբավարար են համակարգի ֆինանսական մեխանիզմի կատարելագործման, համաչափ աշխատանքի ապահովման ուղղությամբ գործադրվող ջանքերը:

Վերջին տարիներին որպես կոլտնտեսությունների ու սովխոզների ամրապնդման հիմնական միջոցի՝ սկսել են ավելի ու ավելի հաճախ դիմել ղեկավարների փոփոխմանը: Այդ պատճառով միայն տասնմեկերորդ հնգամյակում փոխվել է տնտեսությունների ղեկավարների 95 տոկոսը: Եվ թեպետ աշխատանքից ազատվել է գրեթե 400 մարդ, դա իր հետ չբերեց տնտեսական ցուցանիշների բարելավում:

Ինչպես ագրոարդյունաբերական միավորման նախագահը, այնպես էլ վարչության ապարատի ողջ կոլեկտիվը պետք է գործիմացորեն լուծեն ենթակա տնտեսությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեության հետ կապված հարցերը, տեղերում ակտիվորեն կիրառեն կուսակցության ագրարային քաղաքականությունը, ամրապնդեն պլանաֆինանսական, տեխնոլոգիական, պայմանագրային ու կատարողական կարգապահությունը: Պետք է այդ դեպքում կարողանալ հաշվի առնել պարտնյորների տնտեսական շահերը, շահագրգռել աշխատավորական կոլեկտիվներին՝ վերջնական բարձր արդյունքներ ստանալու գործում:

---

# ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

**Կ. ՄԱՄԵԴՈՎ**
**Ադրբեջանական ՍՍՀ պետագրոարդի նախագահի առաջին տեղակալ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ համակողմանի վերակառուցման բարդ պրոցեսը գնալով ընդլայնվում է, թափ առնում և խորանում: Դա նկատելի է ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում, այդ թվում նաև ագրոարդյունաբերական համալիրում: Վերակառուցմանը հուժկու ազդակ տվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումների որոշումները, որոնք էական տեղաշարժեր են նախատեսում գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի զարգացման մեջ:

«Կարելի է ասել, մենք սկսել ենք արդեն հերկել, փխրեցնել հողը,— նշել է Մ. Ս. Գորբաչովը,— սկսել ենք սերմնացանքը: Հետո վերակառուցումը ծիլեր կտա, կտա և՛ բերք: Դրա համար, իհարկե, կպահանջվեն և՛ ժամանակ, և՛ ջանքեր: Բայց կարծում եմ, որ դա այնքան անհրաժեշտ, այնքան ազնիվ աշխատանք է, որ նա, ով մասնակցում է դրան, կարող է համարել, որ իր բախտը բերել է կյանքում»:

Երևի, որոշակի օրինաչափություն կա այն բանում, որ մեր կուսակցության ղեկավարը վերակառուցման պատկերը վերցրել է վարուցանք անողների ազնիվ աշխատանքից, որոնք բազմապատկում են հողի դյուցազնական ուժը, հետևողականորեն ու հաստատակամորեն լուծում պարենային ծրագրի ոչ հասարակ առաջադրանքները:

Սոցիալական նշանակություն ունեցող այդ ծրագրի իրագործման արագացման գաղափարները գիտական հստակ հիմնավորում, խորություն, մասշտաբայնություն, տնտեսական ուղղվածություն են ստացել կուսակցության և կառավարության մյուս փաստաթղթերում: Դրանք իրենց անմիջական մարմնավորումն են գտնում նաև Ադրբեջանի ագրոարդյունաբերական համալիրի բարդ մեխանիզմի կարգավորման մեջ:

Ագրոարդի համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը XI հնգամյակում, նախորդի համեմատությամբ, ավելացավ 24,4 տոկոսով և հասավ 2,7 մլրդ ռուբլու: Հանրապետությունը կատարեց գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության ու մթերման պլանները: Իրացվեցին պետությանը հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի, պտուղների և խաղողի վաճառքի՝ պարենային ծրագրով սահմանված առաջադրանքները: Գերակատարվեցին մսի, կաթնամթերքների, կենդանական յուղի և պանրի, պտուղ-բանջարեղենի պահածոների, հրուշակեղենի, պարենային այլ ապրանքների արտադրության առաջադրանքները:

Սակայն էկոնոմիկայում տեղ գտած լճացման երևույթներից զերծ չմնաց հանրապետության նաև ագրոարդյունաբերական համալիրը: Գյուղատնտեսական մթերքների արտադրության արագացման և բնակչության պարենի պահանջմունքների ավելի լիովին բավարարման բնավ ոչ բոլոր ռեզերվներն էին օգտագործվում: Գյուղատնտեսական նշանակության հիմնական արտադրական ֆոնդերը 49 տոկոսով աճելու պայմաններում համախառն արտադրանքը XI հնգամյակի տարիներին աճեց 35,9, ֆոնդահատույցը կոլտնտեսություններում՝ 24, սովխոզներում՝ 17,8 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ այդ կարևորագույն ցուցանիշը, բարձրացավ ընդամենը 2,8 տոկոսով:

Չնայած ձեռք բերված որոշակի աճին, ֆոնդա և էներգազինվածությունը չհասան այն օպտիմալ մակարդակին, որն ապահովում է գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի ինտենսիվացման արագացումը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը:

Հանրապետության համար հողերի մելիորացման վճռական նշանակության կապակցությամբ կապիտալ ներդրումների զգալի ծավալն ուղղված է մելիորատիվ նոր

համակարգերի ստեղծմանը և եղածների վերակառուցմանը, ճյուղի տեխնիկական վերազինմանը:

Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունը, ղեկավարվելով Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումների հիմնադրույթներով, նյութական և աշխատանքային ռեսուրսները նպատակամղում է ագրոարդի ճյուղերի զարգացման մեջ առկա անհամամասնությունների վերացմանը: Դրան է միտված գիտատեխնիկական առաջընթացի արագացման հիման վրա Ադրբեջանական ՍՍՀ էկոնոմիկայի ինտենսիվացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի համալիր ծրագիրը:

Ծրագրով նախատեսված է ԱԱՀ-ի տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի և տեխնոլոգիաների ներդրման հիման վրա զգալիորեն ավելացնել սննդամթերքների արտադրությունը: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը հնգամյակի ընթացքում ավելացնել 26 տոկոսով, այդ թվում բուսաբուծական մթերքներինը՝ 26,6, անասնապահական մթերքներինը՝ 23,3 տոկոսով: Զգալիորեն կաճեն սննդի արդյունաբերության զարգացման տեմպերը: Այդ ամենը հնարավորություն կտա մսեղենի, կաթնամթերքի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների սպառումը մինչև 2000 թվականը հասցնել միջին միութենական ցուցանիշին:

Հնարավո՞ր է արդյոք նվաճել նախանշված բնագծերը: Անշուշտ: Այդ նպատակին է ուղղված «Երկրի ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը, որով սկզբունքային նորություններ են նախատեսված ԱԱՀ-ի պլանավորման, տեխնիկական վերազինման, նյութական խթանման, գյուղի և վերամշակող ճյուղերի աշխատավորական կոլեկտիվների իրավունքների ընդլայնման բնագավառներում:

Տնտեսավարման կարևորագույն սկզբունքներից մեկը անցումն է գյուղատնտեսական արտադրանքի գնումների նորմատիվ պլանավորմանը՝ ըստ տնտեսությունների ունեցած ռեսուրսների: ՍՍՀՄ պետպլանի պլանավորման և նորմատիվների գիտահետազոտական ինստիտուտի մասնագետների հետ համատեղ աշխատանք է կատարվել ըստ հանրապետության շրջանների որոշելու տարեկան պետական գնումները գումարային ու բնական արտահայտությամբ, հողի, աշխատանքային ռեսուրսների, հիմնական ֆոնդերի և նյութական շրջանառու միջոցների տնտեսագիտական գնահատման հաշվառումով: Այդ նպատակով հաշվարկվել է յուրաքանչյուր շրջանի ռեսուրսային պոտենցիալը (մլն ռուբլիներով), որոշվել ու վերլուծվել դրա օգտագործման XI հնգամյակի մակարդակը, հաշվվել պլանային ռեսուրսային պոտենցիալը, որի հաշվառմամբ էլ բաշխվել է արտադրանքի վաճառքի 1987 թ. ծավալը:

«Ադրբեջանական ՍՍՀ լեռնային շրջանների տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի համալիր ծրագրի մասին» Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի որոշմանը համապատասխան, տնտեսություններին հատկացվել են լրացուցիչ նյութատեխնիկական ռեսուրսներ, կապիտալ ներդրումներ:

Դաշքեսանի և Կուբաթլիի շրջաններում գործարկվել են կովանոցներ, հորթանոցներ, ոչխարանոցներ, կերի արտադրամասեր, բնակելի տներ, Լաչինի շրջանում՝ ոչխարաբույծների հասարակական կենցաղային կենտրոն, ինչպես նաև կուլտուր-կենցաղային նշանակության մի շարք այլ օբյեկտներ: Շրջաններում ստեղծվում են անասնապաարկման մասնագիտացված բաժանմունքներ, ամրապնդվում է նորոգման կազմակերպությունների նյութատեխնիկական բազան: 1986—1987 թթ. տնտեսություններն ստացան որոշմամբ նախատեսված գրեթե ամբողջ տեխնիկան և ազնվացեղ անասունները:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործումն իրականացնում է տնտհաշվարկային հարաբերությունների զարգացման, կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական ստորաբաժանումները կոլեկտիվ կապալի և տնտհաշվարկի փոխադրման հիման վրա: Այսպես, մեզ շատ օգնեց Վրաստանի և Հայաստանի առաջավոր տնտեսությունների փորձը: Մեր հերթին, մենք էլ նրանց հետ կիսում ենք ժամանակի քննությունը բռնած մեր փորձը: Օրինակ, տնտեսությունների ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման անցնելու բնագավառում: Նախատեսված է եկող տարի այդ սկզբունքով աշխատելու փոխադրել հանրապետության տնտեսությունների 50, իսկ մինչև 1990 թվականը՝ 80 տոկոսը: Պետագրոարդը հատուկ ուշադրություն է դարձնում տնտեսավարման հակածախսումային մեխանիզմի լայն ներդրմանը: Հանրապետության բոլոր շրջանային ագրոարդյունաբերական համալիրներում ստեղծվել են աշխատանքի վարձատրության նոր ձևի փորձարկման բազային տնտեսություններ: Հիմնական սկզբունքը վաստակը կախման մեջ դնելն է համախառն եկամտի ծավալից, այսինքն արտադրանքի արտադրությունը ավելացնելուց և որակը բարձրացնելուց, նյութական ու աշխատանքային ծախսումները կրճատելուց:

Մեծ նշանակություն է տրվում եղբայրական հանրապետությունների գյուղի աշխատավորների ավանդական մրցությանը: Այսպես, Զաքաթալայի և Կախիի շրջանների մի շարք տնտեսություններ աշխատանքային մրցության և փոխօգնության պայմանագիր ունեն Վրացական ՍՍՀ Ծիթելի Ծղարոյի շրջանի տնտեսությունների հետ: Ադրբեջանցի հարևանները անցած ձմռանը ծիթելծղարոցի անասնապահներին զորավիգ եղան անասնակերի հարցում: Կախիի շրջանից կալսող-հնձող մեքենաների 15 անձնակազմեր իրենց վրացի բարեկամների դաշտերում հավաքեցին ավելի քան 2.200 տոննա հացահատիկ: Իրենց հերթին, հնձի եռուն շրջանում մեր տնտեսությունների ցանքատարածություններում բազմիցս աչքի են ընկել օգնության հասած վրացի մեխանիզատորները: Դրացիները աջակցել են նաև Զաքաթալայի շրջանի գյուղերում դպրոցների, կենցաղի տների կառուցմանը մասնակցելով, շինանյութեր մատակարարելով և այլն: Ահա ձեզ իրենց պարտքի ինտերնացիոնալ ըմբռնման եղբայրական օգնության օրինակներ: Եվ պատահական չէ, որ նշված շրջանների տնտեսությունները տարեցտարի գերակատարում են պլանային առաջադրանքները:

Դրա հետ մեկտեղ բոլորս պարտավոր ենք նոր խթան հաղորդել ավանդական մրցությանը, դա հագեցնել ժամանակին համապատասխան կոնկրետ նոր բովանդակությամբ, փոխանակել լավագույն փորձը, օրինակ՝ ինտենսիվ տեխնոլոգիայով հացահատիկային կուլտուրաների մշակության, հանրային անասնապահության ու կերարտադրության զարգացման պրոբլեմների լուծման փորձը, բերքահավաքի շրջանում միմյանց օգնել տեխնիկայով, փոխադրամիջոցներով, ջրով և վերջապես, երեք ագրոարդների ուժերը միավորել ամբողջ ռեգիոնի գյուղատնտեսական արտադրության զարգացման խոշոր պրոբլեմների լուծման գործում:

Էկոնոմիկան, այդ թվում ԱԱՀ-ի էկոնոմիկան է այն նյութական բազան, որի վրա խարսխվում է մեր հասարակության միասնությունը, սոցիալիստական հանրապետությունների միությունը: Ամբողջական տնտեսական օրգանիզմի նորմալ զարգացումը, որ խարսխվում է Անդրկովկասյան հանրապետությունների միջև մասնագիտացման ու կոոպերացման խորացման վրա, պահանջում է նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների մշտական փոխանակում ի շահ ռեգիոնի ագրոարդյունաբերական համալիրի արագ զարգացման: Այստեղից էլ՝ մրցության գլխավոր նպատակն է գյուղի աշխատավորներին, ԱԱՀ-ի բոլոր օղակներին մոբիլիզացնել պարենային ծրագրի, ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումների կատարման գործում Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի ավանդի մեծացմանը: Մեծ Հոկտեմբերի գործերի շարունակումը հենց դրա մեջ է:

---

## *Կուսակցական կյանք. մտածել և գործել նորովի*

# ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՐԱՎԱԿԱՆԸ

**Վ. ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆ**
**Երևանի մետրոպոլիտենի կուսկոմիտեի քարտուղար**

ԵՐԵՎԱՆԸ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ մայրաքաղաքներից վեցերորդն է, իսկ Միության քաղաքներից՝ ութերորդը, որն ունի մետրոպոլիտեն: Այն գործարկվել է 1981 թվականի մարտի 7-ին: Դա ուժերի ու ջանքերի գերագույն լարման արգասիք է: Մետրոշինարարները դժվարությամբ ու համառորեն կատարում էին յուրաքանչյուր մետր հորատանցումը, նվաճում յուրաքանչյուր քայլ հաղթանակը: Մետր առ մետր առաջ անցնելով, հաղթահարելով ստորգետնյա առավել բարդ պայմանները՝ նրանք մայրաքաղաքի խիստ ծանրաբեռնված հատվածները կապեցին միմյանց արագընթաց տրանսպորտային միջոցով, կառուցեցին հոյակերտ ճարտարապետական կոթողներ հանդիսացող կայարանները:

Կառույցը, իրավի, համաժողովրդական է, ինտերնացիոնալ: Այն կարելի է անվանել բարեկամության կառույց: Չէ՞ որ այստեղ ուս-ուսի տված աշխատում էին շատ ազգությունների ներկայացուցիչներ: Մետրոպոլիտենի շինարարության մեջ անգնահատելի ավանդ ներդրեցին Մոսկվայի, Լենինգրադի, Մինսկի, Թբիլիսիի, Բաքվի, Խարկովի մետրոշինարարները: Նրանք բարեկամի, տիրոջ սրտացավությամբ էին մասնակցում կառույցի գործարկմանը: Բարեկամական սերտ կապերի շնորհիվ հնարավոր էր լինում լուծել բազմաբնույթ բարդ խնդիրներ, հաղթահարել շատ դժվարություններ, ապահովել նախատեսված աշխատանքների շուտափույթ կատարումը: Մետրոպոլիտենի տարեգրության մեջ ոսկե տառերով են գրված թունելագործներ, սոցիալիստական աշխատանքի հերոս Միխայիլ Տիխոնովիչի, Ալեքսանդր Սուխանովի, Իլյա Ծեպելևի, Դմիտրի Դրոֆևի և շատ ու շատ ուրիշների անունները, որոնք իրենց հարուստ փորձը ու գիտելիքները ամենայն սիրով էին հաղորդում «Հայթունելշին» շինմոնտաժային վարչության գործընկերներին:

Դժվար է գերագնահատել մետրոպոլիտենի նշանակությունը մայրաքաղաքի սոցիալ-տնտեսական զարգացման գործում: Այժմ այն հնարավորություն է ընձեռում խոշոր արդյունաբերական Լենինյան շրջանը ամենակարճ, հարմարավետ տրանսպորտային հանգույցով կապել քաղաքի կենտրոնի հետ:

Ավարտվել է մետրոպոլիտենի առաջին հերթի շինարարությունը: Նրա կառուցումն այսօր հանրապետության առջև ծառացած առավել կարևոր պրոբլեմներից է, որի լուծմանն ակտիվորեն մասնակցում են հազարավոր մարդիկ՝ նախագծողներ, ինժեներներ, ճարտարապետներ, շինարարներ: Ու նրանց մեջ սովետական բազմազգ ժողովրդի ներկայացուցիչներ:

Մետրոպոլիտենը բարդ տրանսպորտային ձեռնարկություն է, որը ղեկավարելու համար պահանջվում է ունենալ բարձր որակավորում ունեցող կադրեր: Սկզբնական շրջանում նրանց ընտրության հարցում մեծ դժվարությունների էինք հանդիպում: Խնդիրն այն է, որ մեր հանրապետությունում մետրոշինարարների մասնագիտություններով կադրեր չեն պատրաստվում: Այստեղ նույնպես դրական դեր խաղաց ինտերնացիոնալ բարեկամությունը: Մեզ օգնության ձեռք մեկնեցին երկրի մյուս մետրոշինարարները: Այսպես, օրինակ, թբիլիսցիները պատրաստեցին էլեկտրագնացքների և շարժասանդուղքների մեքենավարներ, մեքենավարների օգնականներ: Կադրերի վերապատրաստման դասընթացներ կազմակերպվեցին Բաքվում, Մոսկվայում, Լենինգրադում: Երկրի տարբեր մետրոպոլիտեններից հրավիրվեցին ավելի



քան 40 որակյալ երիտասարդ մասնագետներ, որոնք այժմ էլ իրենց ողջ գիտելիքները, փորձն ու կարողությունն են ներդնում գնացքների անվտանգ երթևեկությունն ապահովելու, ուղևորների սպասարկումն արմատապես բարելավելու գործում: Նրանց մեծ մասի համար մետրոպոլիտենի կոլեկտիվը դարձել է հարազատ ընտանիք: Նրանք շրջապատված են ամենայն հոգատարությամբ: Դրա արտահայտություններից մեկն այն է, որ մայրաքաղաքում հարմարավետ բնակարաններ են ստացել Պրիշչեպա, Կոլեսնիկով, Ծիպիցին, Մամեդով և շատ այլ ընտանիքներ, դարձել երևանցիներ:

Մետրոպոլիտենի գործարկման օրվանից երթևեկության ծառայությունում որպես ավագ օպերատոր է աշխատում էստոնացի Ելիզավետա Լիլը: Նա բարեխիղճ աշխատանքով վայելում է իր գործընկերների սերն ու հարգանքը, արժանանում բարձր վստահության: Մետրոպոլիտենի կոլեկտիվի առաջադրմամբ ընտրվել է Երևանի քաղաքային սովետի դեպուտատ: Նա ՀԿԿ 26 կոմիսարների շրջկոմի անդամ է, եղել է ՀԿԿ XXVIII համագումարի պատգամավոր:

Մետրոշինարարների կոլեկտիվը լուրջ անելիքներ ունի ընթացիկ հնգամյակում: Նախատեսվում է շահագործման հանձնել «Հոկտեմբերյան» կայարանը: Շինարարական աշխատանքները կշարունակվեն դեպի Աջափնյակ: Այս խնդիրների լուծումը պահանջում է հիմնովին վերակառուցել տնտեսական և կուսակցական աշխատանքը: Ի դեպ, կուսակցության առաջադրած վերակառուցման և արագացման կուրսը նոր լիցք է հաղորդել նաև մետրոպոլիտենի բազմազգ կոլեկտիվին:

Մետրոպոլիտենի կուսկազմակերպությունը, նրա կոմիտեն մշտապես իրենց տեսադաշտում են պահում կոլեկտիվի աշխատանքի ոճի վերակառուցման ու կատարելագործման ընթացքը, նպաստում բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի ստեղծմանը: Մշակվել և իրականացվում են կոնկրետ միջոցառումներ՝ կուսակցության առաջադրած վերակառուցման կուրսին համապատասխան: Գլխավորը, որին այսօր նպատակամղված են մեր կոմունիստները, ողջ կոլեկտիվի ջանքերի կենտրոնացումն է ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների, տասներկուերորդ հնգամյակի խնդիրների լիակատար ու անվերապահ կատարման վրա, համարձակ պլանների ու մտահղացումների վերածումն է պրակտիկ գործողությունների:

Մետրոպոլիտենի կուսկոմիտեն, արտադրամասային կազմակերպություններն ու խմբերը հետևում են աշխատանքի կազմակերպման առաջադիմական եղանակների լայն արմատավորմանը, գնացքների անվտանգ երթևեկության ապահովմանը, կայարաններում սանիտարական պատշաճ վիճակի ստեղծմանը:

Սոցիալիստական մրցությունն ամրապնդում է բարեկամական կապերը Թբիլիսիի, Բաքվի և Երևանի մետրոշինարարների կոլեկտիվների միջև: Այդ բարեկամությունը խթան է դառնում նոր հաջողությունների համար:

## *1917 ~ պատմության էջերից*

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ (հոկտեմբեր-նոյեմբեր)

ՀԱՅԱՍՏԱՆ

Հոկտեմբերի 7-ին *ՌՍԴԲ(բ)Կ Կովկասի կազմակերպությունների առաջին երկրային համագումարի ավարտից անմիջապես հետո (այն տեղի ունեցավ Թիֆլիսում) Ստ. Շահումյանը գալիս է Ալեքսանդրապոլ: Հոկտեմբերի 8-ին նա զեկուցմամբ հանդես է գալիս բոլշևիկների կազմակերպած միտինգում: Հաջորդ օրը բացվում է Ալեքսանդրապոլի գավառի գյուղացիների համագումարը, որտեղ ելույթ է ունենում Ստ. Շահումյանը: Նույն օրը նա հանդես է գալիս նաև քաղաքի կայազորի զինվորների առջև:*

*Ստ. Շահումյանի այցն ու ելույթները վիթխարի հեղափոխականացնող ազդեցություն են ունենում Ալեքսանդրապոլի աշխատավորության շրջանում:*

Հոկտեմբերի 10-ին *հրավիրվեց Կարսի բոլշևիկյան կազմակերպության ընդհանուր ժողովը, որը դատապարտեց մենշևիկների դավաճանական քաղաքականությունը և որոշեց կազմակերպորեն անջատվել նրանցից: Կուսակցության Կենտկոմին հղած ողջույնում նրանք հավաստում են լենինյան Կենտկոմի շուրջը իրենց համախմբվածությունը:*

*Արձագանքելով սովետների Համառուսաստանյան համագումարի հրավիրման համար պայքար ծավալելու՝ կուսակցության Կենտկոմի կոչին, Հայաստանի բոլշևիկները անմիջապես ձեռ-*

# ՆՈՐ ՄԵԹՈԴՆԵՐԻ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ա. ՆԻԿՈՆՈՎ**
**«Գրուզսելմաշ» գործարանի**
**կուսկոմիտեի քարտուղար**

**Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցությունում, որտեղ քննարկվեցին թեյի արտադրության ավելացման և որակի բարելավման միջոցառումները, նշվեց, որ թեյաբուծության մեջ թույլ է օգտագործվում կոմպլեքսային մեքենայացումը, ճյուղի պահանջմունքներից հետ է մնում վերամշակման նյութական բազան:**

**Այս ոլորտում գործերի վիճակի համար պատասխանատու մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարվեց արագացնել թեյի մշակության և ճյուղի տեխնիկական վերազինման արդի բարձրարտադրողական մեքենաների ու սարքավորումների թողարկումը:**

**Թբիլիսիի «Գրուզսելմաշ» գործարանը երկրի թեյահավաք տեխնիկա թողարկող միակ ձեռնարկությունն է: Գործարանի կուսկոմիտեի քարտուղարը պատմում է տնտեսավարման նոր պայմաններին անցնելու, կուսակցության առաջադրած խնդիրները լուծելու ասպարեզում կոլեկտիվի անելիքների մասին:**

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ կատարելագործման կարևորագույն խնդիրը, որ առաջադրվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի որոշմամբ, ամբողջ արդյունաբերության փոխադրումն է ինքնաֆինանսավորման և կատարյալ տնտեսական հաշվարկի:

ՍՍՀՄ տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրության Թբիլիսիի «Գրուզսելմաշ» գործարանի կոմունիստները իրենց համար արդեն պարզել են, որ դրան չի կարելի հասնել՝ առանց կոլեկտիվում դաստիարակչական աշխատանքի մակարդակի որակական բարձրացման: Գործարանի կուսակցական կազմակերպությունը մի ամբողջ շարք միջոցառումներ է իրականացրել տնտեսավարման և տնտեսական խթանման նոր մեթոդների առավելությունների պարզաբանման ուղղությամբ, որոնց պայմաններում ձեռնարկությունը կսկսի աշխատել 1988 թվականի հունվարից: Դա գործարանի կոլեկտիվին հնարավորություն կտա կատարել լավագույն համաշխարհային նմուշների մակարդակով նոր մրցունակ գյուղատնտեսական տեխնիկա ստեղծելու խնդիրը:

Արտադրամասերում և բաժիններում անցկացված կուսակցական դռնբաց ժողովներում քննարկվել են պետընդունման, ինքնաֆինանսավորման և տնտհաշվարկի,

*նամուխ են լինում բանվորների ու զինվորների բազմամարդ ժողովների անցկացմանը, որտեղ բանաձևեր են ընդունվում ի պաշտպանություն համագումարի հրավիրման: Մասսաների ճնշման տակ և բոլշևիկների պահանջով նոյեմ-բերի 14-ին Ալեքսանդրապոլի սովետի նախագահությունը հրաժարական է տալիս: Հաջորդ օրը նրա ընդլայնված նիստը քվեարկում է սովետի վերընտրություն անցկացնելու մասին բոլշևիկների առաջարկի օգտին: Առաջին հաղթանակին հաջորդում է երկրորդը. սովետը ձայների ճնշող մեծամասնությամբ արտահայտվում է սովետների Համառուսաստանյան երկրորդ համագումարի հրավիրման օգտին:*

*Պետրոգրադում զինված ապստամբության հաղթանակի լուրը Հայաստան է հասնում հոկ-տեմբերի 27—28-ին: «Կավկազսկի ռաբոչի», «Բանվորի կռիվը», «Պրավդա ժիզնի» թերթերը տպագրում են նորաստեղծ սովետական իշխանության դեկրետները, Պետրոգրադի ռազմահեղափոխական կոմիտեի հրամանները և այլ նյութեր:*

*Երևանի աշխատավորությունն ու զինվորները պահանջում են անհապաղ ճանաչել սովետական իշխանությունը:*

*Նոյեմբերի 3-ին Կարսի զինվորների և քաղաքացիների ժողովը, լսելով ընթացիկ մոմենտի և բոլշևիկների տակտիկայի մասին Բ. Բորյանի զեկուցումը, ողջունում է հեղափոխական Պետրոգրադին ու հայտարարում, որ ինքը ճա-*



տարիֆային նոր դրույքների ու պաշտոնեական դրույքների կիրառման պայմաններում աշխատանքի անցնելու հարցերը: Միջոցներ են նախանշված կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարելավելու ուղղությամբ:

Արդեն մշակվել և իրականացվում են մի շարք կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ՝ նորացնելու թողարկվող մեքենաների տեսականին, ստեղծելու տեխնոլոգիական սարքեր, առաջադիմական տեխնիկա և դրանց կառուցման ժամանակակից մեթոդներն ու տեխնոլոգիաները արմատավորելու, մետաղատարությունը կրճատելու և ֆոնդահատույցումը բարձրացնելու, ինչպես նաև ձեռնարկության ինքնուրույնությունն ընդլայնելու և ներարտադրական տնտհաշվարկը արմատավորելու ուղղությամբ: Հատուկ ուշադրություն է նվիրվում թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը և ստանդարտների պահպանմանը:

Մենք ուսումնասիրել ենք լիակատար տնտհաշվարկի պայմաններում աշխատող ճյուղի հարակից ձեռնարկությունների աշխատանքի փորձը:

Կուսակցական բյուրոյի նիստերում և կուսակցական դռնբաց ժողովներում լսվում են տնտեսական ղեկավարների հաշվետվությունները տնտեսավարման նոր պայմանների անցնելու նախապատրաստման ուղղությամբ կատարված աշխատանքի մասին:

Կատարված նախապատրաստական աշխատանքի առաջին փուլերը ի հայտ բերեցին մի շարք բարդ պրոբլեմներ, որոնք վերաբերում են, մասնավորապես, 1988 թվականին թողարկման համար պլանավորվող մեքենաների անվանացուցակին:

Բանն այն է, որ նախատեսվում է այդպիսի 22 մեքենաների 40-ից մինչև 60 տոկոսը արտադրել փոքր խմբաքանակներով, ըստ որում առանց հաշվի առնելու հանգույցների միասնականացումն ու ժամանակակից տեխնոլոգիայի ու արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդների կիրառումը: Լրացուցիչ դժվարություններ են սպասվում նաև այն կապակցությամբ, որ հանրապետության ագրոարդը կարող է հրաժարվել ԱՉՌ—330 և ՌՉԱ—350 ձեռքի թեյահավաք և թեյահատ մեքենաների մի մասից, որոնք կազմում են մեր բոլոր արտադրատեսակների թողարկման գրեթե 50 տոկոսը: Ուղղակի ասենք, տարօրինակ որոշում է, քանի որ այդ մեքենաները շատ շահութաբեր են և մեծ պահանջարկ ունեն գյուղատնտեսության աշխատողների շրջանում:

Դրա հետ մեկտեղ արտադրության ծավալի մեջ մեծանում է յուրացման պրոցեսում գտնվող մոտոբլոկի արսկիչ գործիքի բաժինը, որոնցից մենք պարտավորվել ենք եկող տարի թողարկել 8 հազար հատ: Ի դեպ, շարժիչների արտադրությունը բոլորովին նոր ուղղություն է մեր գործարանի գործունեության մեջ: Այդ նպատակով կառուցվել է նոր արտադրական մասնաշենք 20 հազար քառակուսի մետր տարածության վրա:

Ներկայումս կատարվում է ժամանակակից բարձր արտադրողական սարքավորումների՝ մշակող կենտրոնների և թվային ծրագրային կառավարում ունեցող հաստոցների տեղադրումն ու կարգավորումը: Պլանավորում ենք նախագծային կարողության հասնել 1989 թվականին: Իսկ առայժմ շրջանցիկ տեխնոլոգիայով արտա-

*նաչում է միայն սովետների իշխանությունը: Համանման ժողովներ ու միտինգներ են տեղի ունենում Սարիղամիշում, Ջալալօղլիում և այլուր:*

*Նոյեմբերի կեսերին Հայաստանում տեղի ունեցան Սահմանադիր ժողովի ընտրություններ, որոնք անցան Հոկտեմբերյան հեղափոխության, նորաստեղծ սովետական կառավարության ու նրա քաղաքականության պաշտպանության լոզունգի ներքո:*

ՎՐԱՍՏԱՆ

*Հոկտեմբերի 2—7: Թիֆլիսում կայացավ բոլշևիկների առաջին երկրամասային համագումարը, որը միավորել էր Կովկասի բոլոր բոլշևիկյան կազմակերպությունները, և ընտրեց ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան երկրամասային կոմիտե:*

*Հոկտեմբերի 6: Թիֆլիսում հուզումներ սկսվեցին տղամարդկանց առաջին գիմնազիայի սովորողների շրջանում: Հաջորդ օրը նրանց միացան Թիֆլիսի և Բաթումի ուսումնարանների սաները:*

*Հոկտեմբերի 7: Տեղի ունեցավ բանվորների և զինվորների դեպուտատների Թիֆլիսի սովետի նիստը, որտեղ բոլշևիկները դեմոկրատական խորհրդակցության հարցի վերաբերյալ հանդես եկան բանաձևով, պահանջելով ամբողջ իշխանությունը հանձնել սովետներին: Նրանք էլ առաջարկություն մտցրին սովետների Պետրոգրադի II համագումարի պատգամավորների ընտրության մասին:*

դրությունը շահութաբեր չէ, քանի որ ինքնաֆինանսավորման պայմաններում այն ոչ քիչ դժվարություններ է ստեղծում գործարանի համար:

Ձեռնարկված միջոցների շնորհիվ գործարանը փաստորեն հաջողությամբ գործում է իր շրջանառու միջոցներով, չունի ժամկետանց պարտքեր ու չվճարված հաշիվներ, ժամանակին մուծում է բանկի վարկերը: Մեզանում հայտնաբերվել է և իրացվել արտադրության մեջ չօգտագործվող 34 միավոր սարքավորում:

Այժմ մեզանում անցկացվում է աշխատատեղերի վերատեստավորում, արմատավորվում են արտադրության նոր առաջադիմական նորմաներ, որոնք հնարավորություն կտան աստիճանաբար անցնել աշխատանքի վարձատրության նոր համակարգի, կրճատել կառավարչական ապարատը, վերացնել հավասարեցումը և բանվորներին շահագրգռել աշխատանքի վերջնական արդյունքով:

«Գրուզսելմաշը» երկրում միակ ձեռնարկությունն է, որը արտադրում է թեյահավաք տեխնիկա՝ ավելի քան քսան տեսակի: Դրանք վրացի կոնստրուկտորների երախայրիքն են. նշանավոր «Սաքարթվելո» թեյահավաք կոմբայնը, թեյահավաք ու թեյահատիչ ձեռքի ապարատներ և այլն: Գործարանը գործարար կապերի մեջ է ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Ղազախստանի, Հայաստանի և Ադրբեջանի ձեռնարկությունների հետ:

Մեր թեյահավաք մեքենաները հաջողությամբ գործում են Ադրբեջանի և Կրասնոդարի երկրամասի թեյի պլանտացիաներում: Ադրբեջանի և Հայաստանի մի շարք ձեռնարկություններ իրենց հերթին առաքում են մեզ մեքենաների որոշ դետալներ ու հանգույցներ: Գոհունակությամբ կարելի է նշել, որ ինչպես մենք, այնպես էլ առաքման մեր պարտնյորները, պահպանում ենք պայմանագրային կարգապահությունը: Հեռանկարում մենք նախատեսում ենք է՛լ ավելի զարգացնել ու ամրապնդել մեր տնտեսական ու բարեկամական կապերը:

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ

## Ս.. ԱԲԱՍՈՎ
**«Կիրովաբադկավահողգունմետ» միավորման կուսկոմիտեի քարտուղար**

**ԸՆԹԱՑԻԿ ՏԱՐՎԱ ՍԿԶԲԻՆ** բարդ վիճակ ստեղծվեց Մուստաֆա Մուստաֆաևի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի տեղամասում: Ամբողջ անցած տարին այդ կոլեկտիվն ընթանում էր առջևից, թողարկում էր բարձրորակ արտադրանք, հմտորեն տնտեսում ռեսուրսները: Եվ հանկարծ գործերը վատացան: Ո՛չ, արտադրության ծավալը չնվազեց, և բրիգադի անդամներ Իգոր Կիսելյովը, Ռոման Հովհաննիսյանն ու մյուսները առաջվա պես գործում էին եռանդով, ստեղծագործական ավյունով, բնավ չիջեցնելով աշխատանքի արդյունավետությունը: Սեփական ուժերով իրավիճակը շտկել հնարավոր չեղավ: Եվ այդ ժամանակ մեզ

Հոկտեմբերի 14: *Թիֆլիսում կայացավ բանվորների և զինվորների դեպուտատների սովետի նիստը, որտեղ բոլշևիկները խիստ քննադատության ենթարկեցին մենշևիկներին և մյուս համաձայնողականներին, որոնք հանդես էին եկել սովետների II համագումար հրավիրելու և ամբողջ իշխանությունը սովետներին հանձնելու դեմ:*

Հոկտեմբերի 15, 22: *«Կավկազսկի ռաբոչի» և «Բրձոլա» թերթերում տպագրվել է Վ. Ի. Լենինի «Ճգնաժամը հասունացել է» հոդվածը:*

Հոկտեմբերի 18: *Անդրկովկասյան երկաթուղու գլխավոր արհեստանոցների բանվորների միտինգում ընդունվեց բոլշևիկյան բանաձևը՝ ամբողջ իշխանությունը սովետներին հանձնելու մասին:*

Հոկտեմբերի 20: *ՌՍԴԲ(բ)Կ Թիֆլիսի համաքաղաքային կոնֆերանսը խիստ բողոք հայտնեց բոլշևիկյան թերթերը հետապնդելու և ռազմաճակատում դրանց տարածումը արգելելու առթիվ:*

*Այդ ժամանակին է վերաբերում ՌՍԴԲ(բ)Կ Թիֆլիսի կոմիտեին կից ադրբեջանական «Հումմեթ» խմբի ստեղծումը:*

Հոկտեմբերի 23—26: *Թիֆլիսում կայացավ Կովկասյան երկրամասի ու ռազմաճակատի զինվորական կազմակերպությունների կոնֆերանսը: Այնտեղ ընդունվեց ողջույնի տեքստ Վ. Ի. Լենինին, բանվորների և զինվորների դեպուտատների Պետրոգրադի սովետին, Բալթիական նա-*



օգնության հասան բարեկամները՝ Վրաստանի և Հայաստանի համասեռ ձեռնարկությունների քիմիագործներն ու մետալուրգները:

Նախնական հաշվարկումներով սարքավորումների նորոգմանն ու կարգավորմանը հատկացվեց մեկ ամիս: Բայց զուր չէ ժողովուրդն ասում, թե՝ երբ կողքիդ են վաղեմի ու մոտ բարեկամներդ, կարող ես լեռներ շրջել: Օգտագործելով կուտակված փորձը, ոգևորությամբ ու վարպետորեն էին աշխատում եղբայրական երեք հանրապետությունների բրիգադները: Եվ նրանք չափազանց պատասխանատու առաջադրանքը կատարեցին սահմանված ժամկետից մեկ շաբաթ շուտ: Այժմ Մուստաֆա Մուստաֆաևի տեղամասում նորից գործերը լավ են գնում, թողարկվող արտադրանքի որակը հավանություն է գտնում սպառողների կողմից, և կոլեկտիվի համար բացվում են արտադրության ծավալի հետագա ընդլայնման հնարավորություններ:

Եվ դա գործընկերներին ու բարեկամներին՝ Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի քիմիագործներին և մետալուրգներին բնորոշ փոխօգնության ու համագործակցության բազում օրինակներից սոսկ մեկն է: Մեր գործարանը՝ Կիրովաբադի գունավոր մետալուրգիայի առաջնեկը, նույնպես ծնվել է սովետների երկրի մյուս ժողովուրդների, և առաջին հերթին անդրկովկասյան եղբայրական հանրապետությունների բանվորների, վարպետների, ինժեներների համատեղ աշխատանքով: Այսօր էլ ձեռնարկության արտադրամասերում ու տեղամասերում կհանդիպես մարդկանց, ներկայումս արդեն վետերանների, ովքեր դրել են Կիրովաբադի ալյումինի գործարանի հիմքը, կառուցել այն, տեղակայել մեքենասարքավորումները, ովքեր մերձակա շրջանների երեկվա գեղջուկ պատանիներին սովորեցրել են կավահողի, տարբեր քիմիական նյութերի մշակման գաղտնիքները:

«Այն ամենը, ինչ մենք արել ենք, արել ենք ընդհանուր աշխատանքով: Եթե մի ռեգիոնում նավթ է արդյունահանվում, ապա մյուսը հաց է ուղարկում նրան: Նրանք, ովքեր բամբակ են աճեցնում, մեքենաներ են ստանում: Հացահատիկի յուրաքանչյուր տոննայի, ոսկու ամեն մի գրամի, բամբակի, քարածխի, նավթի յուրաքանչյուր տոննայի, ամեն մի մեքենայի մեջ՝ ամենահասարակից մինչև եզակին, կա ամբողջ սովետական ժողովրդի, ամբողջ երկրի, մեր ամբողջ բազմազգ Միության աշխատանքի մասնիկը»— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ: Կուսակցության Կենտկոմի հունիսյան պլենումում ևս կարմիր թելի պես անցնում էր այն միտքը, որ էկոնոմիկայի կառավարման վերակառուցման հետ կապված մեծ ու կարևոր գործերի ամբողջ համալիրը հաջողությամբ կարելի է լուծել միայն բոլոր եղբայրական հանրապետությունների, սովետական բազմազգ պետության բոլոր ռեգիոնների ամենասերտ, շահագրգիռ մասնակցությամբ, բեղմնավոր փոխգործակցությամբ:

«Կիրովաբադկավահողգունմետ» միավորման կուսակցական կոմիտեն ձգտում է կոլեկտիվի բոլոր անդամներին դաստիարակել ժողովուրդների կենարար լենինյան բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով: Դա նշանակում է, որ պայմանագրային պարտավորությունների անվերապահ կատարումը պետք է լինի արտադրության յուրաքանչյուր աշխատողի գործունեության հիմքը: Ինտերնացիոնալ պարտքն անբաժանելի է ազնիվ և հայրենանվեր աշխատանքից, հարազատ

*վատորմի ծովայիններին, ինչպես նաև դիմում Կովկասյան բանակի զինվորներին՝ Պետրոգրադի ապստամբած պրոլետարիատին աջակցելու մասին:*

Հոկտեմբերի 26: *Թիֆլիսում բոլշևիկների ղեկավարությամբ կայացավ կայազորի 6 զորամասերի պատգամավորների ժողով, որը պաշտպանեց Պետրոգրադի սովետական կառավարությունը. ժողովը առաջ քաշեց Վրաստանում սովետական իշխանության համար պայքարի խնդիրը:*

Հոկտեմբերի 29: *Հրապարակվել է Երկրամասային կոմիտեի բյուրոյի, Կովկասի զինվորական կազմակերպությունների բյուրոյի և Թիֆլիսի կոմիտեի դիմումը «Կովկասյան բանակի բոլոր զինվոր ընկերներին» Պետրոգրադի պրոլետարիատին պաշտպանելու մասին:*

### ԱԴՐԲԵՋԱՆ

Սեպտեմբերի 27— նոկտեմբերի 3: *Բաքվում տեղի ունեցավ համընդհանուր գործադուլ, որին մասնակցեց ավելի քան 65 հազար մարդ: Գործադուլային կենտրոնական կոմիտեն գլխավորեցին Մ. Ազիզբեկովը, Մ. Բասինը, Պ. Ջափարիձեն և ուրիշներ: Գործադուլի կազմակերպման գործում մեծ դեր խաղաց «Հումմեթ» բոլշևիկյան կազմակերպությունը:*

Հոկտեմբերի 2—7: *Թիֆլիսում կայացավ ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան երկրամասային առաջին համագումարը: Բաքվից պատգամավորներ ու-*

հանրապետության, ամբողջ երկրի գործերին մասնակից լինելու ըմբռնումից: Անհրաժեշտ է, որ արտադրության աշխատողները, հատկապես երիտասարդները խորապես գիտակցեն իրենց կոլեկտիվի և անձամբ իրենց տեղը աշխատանքի համամիութենական բաժանման մեջ:

Իսկ մեր պատասխանատվությունը իրոք մեծ է: Միավորումը գործարար կապերի մեջ է Միության ավելի քան 400 քաղաքների ու շրջանների հետ: Միայն հանքային պարարտանյութեր ենք առաքում միութենական 6 հանրապետություններ, 322 հասցեներով:

Ձեռնարկության աշխատավորական ընտանիքը ներկայացնում են երկրի 20 ազգերի և ազգությունների ներկայացուցիչներ: Ադրբեջանցիների հետ ուս-ուսի աշխատում են ռուսներ, ուկրաինացիներ, վրացիներ, հայեր, թաթարներ, բելոռուսներ... Կուսկոմիտեն մեծ ուշադրություն է դարձնում այն բանին, որ ընտրովի կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմիններում անպայման ընդգրկվեն ամենատարբեր ազգությունների ներկայացուցիչներ: Եվ դա լավագույն ձևով է անդրադառնում կոլեկտիվի բարոյական մթնոլորտի, մարդկանց փոխհարաբերությունների վրա:

Հաճելի է նշել, որ ամենաառաջավոր բնագծեր են դուրս գալիս, սովորաբար իրենց կազմով բազմազգ բրիգադները: Ահա և հիմա, մեծ Հոկտեմբերի 70-ամյակի տարում, սոցիալիստական մրցությանը տոն է տալիս ծծմբաթթվի արտադրամասի այն բրիգադը, որը ղեկավարում է հանրապետության պետական մրցանակի դափնեկիր Լ. Սնիսարենկոն: Բրիգադավարն ինքը ազգությամբ ուկրաինացի է, իսկ նրա բրիգադում կան ադրբեջանցիներ, ռուսներ, հայեր, լեզգիներ: Բրիգադը հանդես է եկել ընթացիկ հնգամյակի երկու տարվա պլանը մինչև նոյեմբերի 7-ը կատարելու նախաձեռնությամբ:

Հայտնի է, որ աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում պետք է առաջնահերթ ուշադրություն դարձնել երիտասարդության վրա: Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, բնավ էլ ոչ միշտ են կոլեկտիվի շարքերը համալրում քաղաքականապես և բարոյապես հասուն պատանիներ ու աղջիկներ: Ոմանք գերի են լինում նախապաշարմունքներին, նրանց հոգեբանության վրա իրենց զգալ են տալիս ընտանեկան, դպրոցական դաստիարակության մեջ թույլ տրված վրիպումները: Եվ այստեղ մենք հենվում ենք կադրային բանվորների վրա, կոլեկտիվում արժանի հեղինակություն վայելող, գաղափարական կայուն մարդկանց վրա:

Երիտասարդ հերթափոխի հետ աշխատող ավելի քան 200 վարպետ-դաստիարակների մեծ մասը կոմունիստներ են: Անհավասիկ՝ ադրբեջանցի Ն. Շարիֆովը, ռուս Ն. Կազանովը, հայ Ս. Ղալեչյանը և ուրիշներ:

Իրեն լիովին արդարացնում է լավագույն վարպետ-դաստիարակի և լավագույն վարպետ-դաստիարակ-ռացիոնալիզատորի կոչման համար մեզանում մշտապես գործող ստուգատես-մրցույթը:

---

ղարկվեցին Գ. Ց. Ստուրուան, Ս. Գ. Շահումյանը, Ս. Դ. Յակուբովը:

**Հոկտեմբերի 6:** *ՌՍԴԲ(բ)Կ Կենտկոմը հրապարակեց համընդհանուր գործադուլում հաղթանակի հասած Բաքվի պրոլետարիատին ուղղված ողջույն:*

**Հոկտեմբերի 13:** *ՌՍԴԲ(բ)Կ Բաքվի կոմիտեի օրգան «Բակինսկի ռաբոչի» թերթը 65-րդ համարից կոչ էր անում քվեարկել սոցիալ-դեմոկրատների, բոլշևիկների, ինտերնացիոնալիստների և «Հումմեթ» բոլշևիկյան կազմակերպության անդամներ մուսուլմանական կազմակերպության № 5 ցուցակի օգտին: Այդ ցուցակի մեջ նշված էին Ս. Գ. Շահումյանը, Մ. Ա. Ազիզբեկովը, Պ. Ա. Ջափարիձեն, Ն. Ն. Նարիմանովը, Ի. Տ. Ֆիոլետովը, Մ. Վ. Բասինը, Մ. Մ. Իսրաֆիլբեկովը, Յա. Դ. Զևինը, Ն. Յա. Կոլեսնիկովան, Ց. Կ. Գուբանովը, Ի. Ի. Անաշկինը, Գ. Ց. Ստուրուան և ուրիշներ:*

*Մասսաների պահանջով Բաքվի սովետի մենշևիկյան-էսեռական գործադիր կոմիտեն հրաժարական տվեց: Ընտրվեց Սովետի ժամանակավոր գործկոմ՝ Ս. Գ. Շահումյանի գլխավորությամբ:*

**Հոկտեմբերի 15:** *Բոլշևիկների առաջարկությամբ, Բաքվի սովետի և նավթահանքերի-գործարանային հանձնաժողովների կոնֆերանսի համատեղ նիստը իրեն հայտարարեց Բաքվի ժամանակավոր ընդլայնված սովետ, որն ընդունեց բոլշևիկյան բանաձև:*



Արտադրական միավորումը սոցիալիստական մրցության հաղթողների, վարպետ-դաստիարակների և նրանց խնամարկյալների, պատերազմի ու աշխատանքի վետերանների համար պարբերաբար արշավներ է կազմակերպում դեպի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերը: Վերջին տարիներին ձեռնարկված արշավների մասնակիցները ծաղիկներ են դրել Մոսկվայի Անհայտ զինվորի գերեզմանին, Վոլգոգրադի Մամաև Կուրգանում, Սևաստոպոլում, Սիմֆերոպոլում, Յալթայում զոհվածների հիշատակին կանգնեցված հուշարձաններին, այն վայրերում, որտեղ կողք-կողքի կռվել են նաև ադրբեջանցի ռազմիկներ: Բնորոշ է, որ արշավորդները ծանոթացել են այն քաղաքների պատմությանն ու տեսարժան վայրերին, որոնցով անցել է նրանց երթուղին, ուղևորություններից հետո կազմակերպել են համապատասխան ցուցահանդեսներ, իրենց ընկերներին հայրենասիրությամբ և ինտերնացիոնալիզմով տոգորված հուզաթաթավ պատմություններ արել:

Ամեն տարի սովետական բանակի և ռազմածովային նավատորմի օրվա նախաշեմին պատերազմի և աշխատանքի վետերանների գործարանային խորհուրդը ԴՕՍԱԱՖ-ի կոմիտեի հետ համատեղ ավտոմրցավազք է կազմակերպում Կիրովաբադ—Ռուսթավի երթուղով: Այդ երթուղին անցնում է Շամխորի միջով, որտեղ գտնվում է Սովետական Միության կրկնակի հերոս, պանծալի զորավար Հովհ. Բաղրամյանի թանգարանը:

Ինտերնացիոնալ դաստիարակությանը միտված մեծ աշխատանք է տանում միավորման «Մետալուրգ» մշակույթի պալատը, որտեղ գործում են կուլտուրայի ժողովրդական համալսարան, աշխատանքի և պատերազմի վետերանների ակումբներ, «Հայրենիք» ռազմահայրենասիրական լեկտորիումը: Միշտ լեփլեցուն է մշակույթի պալատի ինտերնացիոնալ դաստիարակության կաբինետը: Իսկ երեք սերունդների ավանդական դարձած հանդիպումների ժամանակ անպայման հաղորդակցվում են ամենատարբեր ազգությունների բանվորներ: Կոլեկտիվի անդամների վրա խոր տպավորություն են թողել «Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել», «Զինվոր, անմար պահիր հաղթանակի կրակը», «Դաստան ախշամի», «Մենք լենինյան բարեկամությամբ ենք ուժեղ» և նման այլ թեմաներով կազմակերպված երեկոները:

Ինտերնացիոնալ դաստիարակության գործում չեն կարող և չպետք է լինեն լարված պահեր ու անկումներ, թեժ շրջաններ և «արձակուրդներ»: Այդ աշխատանքը պետք է տանել մշտապես ու հետևողականորեն, օգտվելով մասսաների վրա ներգործելու գաղափարաքաղաքական միջոցների հարուստ զինանոցից: Այստեղ մեզ համար փարոս են ծառայում ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները, հրապարակայնությունը, ճշմարտության այն դասը, որը մեզ տվել է ներկա ժամանակը, այն շիտակությունը, որով կուսակցությունը մեզ նպատակամղում է արվածի քննադատական իմաստավորմանը, տեղ գտած թերությունների հաղթահարմանը, նոր բնագծերի նվաճմանը:

---

**Հոկտեմբերի 27:** *Բացվեց Բաքվի սովետի ընդլայնված նիստը, որին մասնակցեցին նավթահանքերի-գործարանային հանձնաժողովների, գնդերի ու վաշտերի կոմիտեների ներկայացուցիչները:*

*ՌՍԴԲ(բ)Կ Բաքվի կոմիտեն հրապարակեց բանվորներին ուղղված դիմում, որով կոչ էր անում աջակցել Պետրոգրադի հերոսական պրոլետարիատին և ամբողջ իշխանությունը Բաքվի սովետին անցնելու մասին բոլշևիկների ընդունած բանաձևին:*

**Հոկտեմբերի 29:** *Բաքվում, Ազատության հրապարակում, կայացավ բանվորների, զինվորների և նավաստիների բազմամարդ միտինգ: Միտինգի մասնակիցները պաշտպանեցին բոլշևիկների բանաձևը, ողջունեցին Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը:*

**Նոյեմբերի 2:** *Բաքվի ընդլայնված սովետի կոնֆերանսը միաձայն հավանություն տվեց իշխանությունը գործնականորեն սովետների ձեռքն անցնելու ծրագրին, սովետի գործադիր կոմիտեն հայտարարեց Բաքվի և Բաքվի շրջանի բարձրագույն իշխանություն, ընտրեց նոր գործադիր կոմիտե:*

**Նոյեմբերի 4:** *Բաքվի սովետի գործկոմը քաղաքի և նրա շրջանների բնակչությանը դիմեց անհապաղ ու վճռականորեն Վ. Ի. Լենինի գլխավորած սովետական կառավարության կողմը կանգնելու և Բաքվի իշխանության հեղափոխական նոր մարմիններին աջակցելու կոչով:*

## Ժամանակ: Արագացում: Մարդ

# ԿՈՂՄՆՈՐՈՇԻՉԸ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՆ Է

**Հ. ՕՀԱՆՅԱՆ**
**ՀԿԿ Կիրովականի քաղկոմի**
**առաջին քարտուղար**

ԱՎԱՆԴԱԿԱՆ Է ԴԱՐՁԵԼ Կիրովական, Բաթում, Սումգայիթ և Չերկասի քաղաքների եղբայրական բարեկամությունը: Մեր քաղաքների աշխատավորության բարեկամությանն ու մրցակցությանը նոր շունչ է հաղորդել հատկապես կուսակցության հռչակած վերակառուցման հիրավի հեղափոխական կուրսը: Վերակառուցման գործում կուսակցությունն առանձնացնում է այն գլխավոր ուղղությունները, հանգուցային տեղամասերը, որտեղ անհրաժեշտ է առավելագույն չափով կենտրոնացնել ջանքերը: Դրանցից կարևորագույնը, անշուշտ, էկոնոմիկան է, մեր հայրենիքի հզորության հիմքը: Այդ գործում, մեր քաղաքի աշխատավորությունը, նրա կուսակցական կազմակերպությունը ունեն և արժանահիշատակ հաջողություններ, ձեռքբերումներ և, ի ցավ սրտի, բացթողումներ, թերություններ, որոնց վերացումը անհետաձգելի խնդիր է մեզ համար:

Եվ այնքանով, որքանով որ մեքենաշինությունն այսօր գիտատեխնիկական առաջընթացի խնդիրների իրականացման առանցքն է, վերցնենք թեկուզ այդ ճյուղը: Այդ բնագավառում արտադրանքի տեսակարար կշիռը քաղաքի ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալում ներկայումս կազմում է 30,5 տոկոս: Անցած ժամանակահատվածում քաղաքի մեքենաշինարարները յուրացրել են ավելի քան 20 անուն նոր մեքենաների, սարքերի, հաստոցների, շարժիչների արտադրությունը: Դրանց թվում են թվածրագրային կառավարմամբ էլեկտրակայծային հաստոցները, լազերային կտրման մոդեռնացված «Սևան—Մ», ինչպես նաև՝ թթվածնային կտրման, «Օգոնյոկ» մեքենաները: Դրանք, ի դեպ, իրենց տեխնիկական պարամետրերով չեն զիջում համաշխարհային ճանաչում ունեցող նմուշներին: Անցյալ տարվա արդյունքներով առաջին անգամ յուրացված արտադրանքի տեսակարար կշիռը մեքենաշինական արտադրանքի ընդհանուր ծավալում կազմել է 8,1 տոկոս, իսկ ընթացիկ տարվա համար պլանավորված է ավելի քան կրկնակին՝ 19,6 տոկոս:

Սակայն այսօր մեզ խիստ անհանգստացնում է, որ քաղաքի մեքենաշինությունը ձախողեց և՛ 1986, և՛ ընթացիկ տարվա անցած ամիսների ապրանքային արտադրանքի թողարկման պլանները, իսկ արտադրանքի մատակարարման պայմանագրային պարտավորությունները կատարել է ընդամենը 95 տոկոսով: Ստացվում է, որ դրանով մեր քաղաքի մեքենաշինարարները ձախողել են իրենց պատվիրատու կոլեկտիվների հստակ աշխատանքը:

Այդ մասին խիստ և անաչառ քննադատություն արվեց վերջերս կայացած ՀԿԿ քաղկոմի պլենումում: Նշվեց նաև, որ այս ճյուղի ձեռնարկություններում լուրջ թերություններ կան արտադրանքի ինքնարժեքի իջեցման, դրանց նյութատարության և էներգատարության կրճատման գործում: Ճյուղում դանդաղ են բարձրանում արտադրանքի տեխնիկական մակարդակն ու որակը: Մինչդեռ առաջադրված է, որ հնգամյակի վերջում արտադրվող մեքենասարքավորումների 85—90 տոկոսը պետք է ունենա համաշխարհային մակարդակ:

Թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի գործում լուրջ թերություններ ի հայտ եկան ճշգրիտ հաստոցաշինական գործարանում՝ պետընդունման անցնելուց հետո: Գործարանի կողմից պետընդունման պայմաններում աշխատելու անբավարար նախապատրաստությունը հանգեցրեց այն բանին, որ հաստոցաշինարարները ընթացիկ տարվա առաջին չորս ամիսներին պլանավորվածից պակաս թողարկեցին 737 հաստոց: Քաղկոմի հանձնախումբը խորապես ուսումնասիրեց հարցը և այն քննարկման դրեց քաղկոմի բյուրոյում: Կուսակցական պատասխանատվության ենթարկվեցին գործարանի դիրեկտորը, գլխավոր ինժեները, կուսկոմիտեի քարտուղարը: Միաժամանակ նշվեց, որ հաստոցաշինարարները օգնության խիստ կարիք ունեն, իսկ այդ գործում հապաղում են թույլ տվել թե՛ մինիստրությունը, թե՛ ՀԿԿ քաղկոմը:

Այժմ ոչ միայն մեքենաշինության ճյուղի, այլև քաղաքի աշխատավորության առջև լուրջ խնդիրներ են ծառացած: Դրանց լիովին լուծումը կիրովականցիները համարում են իրենց կուսակցական, քաղաքացիական պատվի գործը:

Նախատեսված նպատակներն իրագործելու, քաղաքի էկոնոմիկան ինտենսիվորեն զարգացնելու, գործող ձեռնարկությունների արտադրության արդյունավետությունը տեխնիկական հետագա վերազինմամբ ապահովելու, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու համար քաղկոմում մշակել և այժմ հաջողությամբ իրականացնում ենք «Գիտատեխնիկական առաջադիմություն—90» կոմպլեքսային ծրագիրը: Ելնելով որակյալ արտադրանքի թողարկման մեր խնդիրներից՝ մշակել ենք նաև «Որակ» ծրագիրը:

Կոմպլեքսային այդ ծրագրերի իրականացման շրջանակներում քաղաքի արդյունաբերական 22 ձեռնարկություններում ստեղծվել են ժամանակավոր ստեղծագործական կոլեկտիվներ, որոնցում տեղի ինժեներների, տեխնոլոգների, կոնստրուկտորների և արտադրության պետերի հետ մեկտեղ ընդգրկված են քաղաքի բուհերի և գիտահետազոտական ինստիտուտների առաջատար գիտնականները: Այդ կոլեկտիվները լուծում են միջճյուղային բնույթի գիտատեխնիկական հեռանկարային պրոբլեմներ, ստեղծում նոր տեխնիկա, մշակում նոր տեխնոլոգիա, դրանք ներդնում արտա-

---

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԵՐԹԸ (Թվեր և փաստեր)

## Հայկական ՍՍՀ

*Իր տարածքով Հայկական ՍՍՀ-ն ամենափոքրն է միութենական հանրապետությունների մեջ (29,8 հազար քառ. կմ): Դա կազմում է ՍՍՀՄ ընդհանուր տարածքի 0,13 տոկոսը: Բնակչության թվով այն 13-րդն է, բնակչության խտությամբ Մոլդավական ՍՍՀ-ից հետո երկրորդն է միութենական հանրապետությունների մեջ:*

*Հանրապետությունը տալիս է երկրի արդյունաբերական արտադրանքի շուրջ 1 տոկոսը: Արտադրանքի մի շարք տեսակների գծով նրա տեսակարար կշիռն ավելի բարձր է. տարբեր տեսակի էլեկտրաշարժիչներ՝ 2,2—3,8 տոկոս, հաշվիչ տեխնիկայի՝ 2,9, մետաղահատ հաստոցների՝ 8,1, գարբնամամլիչային մեքենաների՝ 5,1, գուլպա-նասկեղենի՝ 4,7 տոկոսը և այլն:*

*Հանրապետության արդյունաբերությունը տարեկան թողարկում է 7 միլիարդ 795 միլիոն ռուբլու արտադրանք: Բնակչության մեկ շնչի հաշվով դա կազմում է 2.334 ռուբլի:*

*Հայաստանում գործում են 713 արտադրական, գիտաարտադրական միավորումներ ու ձեռնարկություններ: Դրանք բոլորը, փոքր բացառությամբ, ստեղծվել են սովետական իշխանության տարիներին:*

*Հանրապետությունում օրական արտադրվում է 39,7 միլիոն կվտ/ժ էլեկտրաէներգիա: 1940 թվականին այդ ցուցանիշը 1,1 միլիոն էր:*

*Հայկական ՍՍՀ-ն այժմ մեկ օրում ավելի շատ արդյունաբերական արտադրանք է տալիս, քան ամբողջ 1922 թվականին: Հինգ օրում թողարկվում է նույնքան արտադրանք, որքան ամբողջ 1940 թվականին:*

*1970 թվականի համեմատությամբ 1986-ին հանրապետության երկաթուղային ցանցը ընդարձակվել է 205, իսկ ավտոխճուղայինը՝ 800 կիլոմետրով: Այդ նույն շրջանում ավելի քան երկու անգամ աճել է օդային տրանսպորտով ուղևորների փոխադրումը:*

*Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում կապիտալ ներդրումներին հատկացվել է ավելի քան 29 միլիարդ ռուբլի:*

*Հանրապետությունում գործում են 278 կոլտնտեսություն և 522 սովխոզ:*

*1970-ին գյուղատնտեսությունը սպառել է 511,6 միլիոն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, 1985-ին՝ 1 միլիարդ 905,5 միլիոն, այդ թվում՝ արտադրական նպատակներով համապատասխանաբար 356,4 միլիոն և 1 միլիարդ 447,4 միլիոն կվտ/ժամ:*

*Գյուղատնտեսության տարեկան համախառն արտադրանքը կազմում է 1 միլիարդ 454 միլիոն ռուբլի, դրանից 715,4 միլիոնը բաժին է ընկնում բուսաբուծությանը, 738,7-ը՝ անասնաբուծությանը:*

*Գյուղատնտեսության կապիտալ ներդրումները 1971—1975 թթ. 980 միլիոն ռուբլու գի-*

դրության մեջ, բացահայտում ռեսուրսների արդյունավետ օգտագործման փորձը: Օրինակ, քիմիական մանրաթելերի գործարանում ստեղծված ստեղծագործական կոլեկտիվը, որում ընդգրկված են պոլիտեխնիկական ինստիտուտի Կիրովականի մասնաճյուղի գիտնականները, մշակել է արտադրական թափոնների վերամշակման տեխնոլոգիա, որը հնարավորություն է տալիս ստանալ մեծ պահանջարկ ունեցող շինարարական երեսպատման սալիկներ ու վահանիկներ, լայն սպառման այլ առարկաներ: Միայն այդ գործարանի շուրջ 700 տոննա կազմող թափոնների վերամշակումը հնարավորություն կընձեռի ստանալ 50 հազար քմ երեսպատման վահանիկներ:

Հիրավի, տոգորված վերակառուցման և արագացման ոգով, Կիրովականի քաղաքային կուսակցական կազմակերպությունը, աշխատավորական կոլեկտիվները ապրում ու գործում են հանուն կուսակցության մեծ կանխագծումների իրականացման: Այդ գործում մեծ են մեր մրցակից քաղաքների աջակցությունն ու օգնությունը:

# ՊԱՇՏՊԱՆԵԼՈՎ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

**Շ. ՄԱԳԼԱԿԵԼԻՁԵ**
**Վրաստանի կոմկուսի Քութայիսի քաղկոմի քարտուղար**

«ԲԱՐԵԿԱՄԻՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԲԱՐԵԿԱՄԸ ԿՕԳՆԻ»՝ ասում է մեծ Ռուսթավելին: Հենց բարեկամության վեհ զգացումն է միավորում Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի ժողովուրդներին: Բազմադարյա հարևանությունը, ընդհանուր թշնամու դեմ մղված համատեղ պայքարում թափված արյունը պայմանավորել ու ամրապնդել են այդ զգացումը:

Քութայիսի, Լենինական, Կիրովաբադ... Այս քաղաքների եղբայրության կապերը է՛լ ավելի են ամրապնդվել մեր օրերում: Այդ կապերի ամրապնդման գործին նոր ուժեր հաղորդեց երեք հանրապետություններում ծավալված սոցիալիստական մրցությունը, որը ընդգրկել է հասարակական կյանքի բոլոր բնագավառները:

Գրեթե քառասուն տարի առաջ էին դրվել այդ քաղաքների ձեռնարկությունների աշխատանքային մրցության հիմքերը: Իսկ դա սկսվել է այսպես:

1949 թվականի ապրիլին Քութայիսիի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններից մեկը՝ մետաքսի կոմբինատը նամակ ստացավ Հայկական ՍՍՀ Լենինական քաղաքի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի առաջավորների ստորագրությամբ:

«Մենք որոշել ենք ստանձնել երիտասարդ բանվորների շեֆությունը, սովորեցնել նրանց տեքստիլ գործի «գաղտնիքները», օգնել նրանց հասնելու աշխատան-

*մաց 1981—1985 թթ. կազմել են 1 միլիարդ 632 միլիոն ռուբլի:*

*Հանրապետությունում մեծ ծավալի ջրաշինարարական աշխատանքներ են իրականացվում: Գործող ջրամբարների ընդհանուր տարողությունը շուրջ մեկ միլիարդ խոր. մետր է: Ընթացքի մեջ է ևս 9 ջրամբարների շինարարությունը. դրանց գործարկմամբ ջրամբարների ընդհանուր տարողությունը կմեծանա ևս 607 խոր. մետրով:*

*Նախասովետական Հայաստանում գործում էր 166 դպրոց, որտեղ սովորում էր 19 հազար աշակերտ: Կար ընդամենը 13 գրադարան: 100 մարդու հաշվով դրանց ֆոնդը պարունակում էր 1 գիրք: Այժմ Հայկական ՍՍՀ-ում ուսման բոլոր ձևերում ընդգրկված է 1374 հազար մարդ, նրանցից 600 հազարը սովորում են հանրակրթական դպրոցներում, 103 հազարը՝ 13 բարձրագույն և 65 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում: 1400 մասսայական գրադարաններում կենտրոնացված գրքային ֆոնդը հասնում է 22,5 միլիոնի: Հրատարակվում է շուրջ 180 անուն թերթ ու հանդես:*

*Այժմ Հայաստանում հաշվվում են ավելի քան 700 հիվանդանոց, պոլիկլինիկա, առողջարան և բուժական այլ հաստատություններ: Յուրաքանչյուր 10.000 բնակչի ընկնում է 38 բժիշկ և 93 միջին բուժանձնակազմի աշխատող:*

*Գիտահետազոտական և գիտական աշխատանքի այլ հաստատություններում զբաղված են 82 ակադեմիկոսներ և ակադեմիայի թղթակից-անդամներ, 760 դոկտորներ և շուրջ 7 հազար գիտության թեկնածուներ:*



քի բարձր արտադրողականության, կատարյալ կերպով տիրապետել մանող և գործվածքային հաստոցների աշխատանքին»,— ասված էր նամակում: Միաժամանակ լենինականցի տեքստիլագործները քութայիսցի գործընկերներին առաջարկում էին ծավալել սոցիալիստական մրցություն:

Կոմբինատի կոլեկտիվը անմիջապես արձագանքեց այդ կոչին: Բանվորները պաշտպանեցին իրենց գործընկերների հայրենասիրական նախաձեռնությունը, և արտադրամասերի ժողովներում հաստատվեցին կոնկրետ պարտավորություններ: Այդ նույն ժողովներում էլ քութայիսցի տեքստիլագործները ընդլայնեցին սոցիալիստական մրցության ոլորտը և սոցիալիստական մրցության հրավիրեցին Ադրբեջանի երկրորդ արդյունաբերական քաղաք Կիրովաբադի տեքստիլ կոմբինատի կոլեկտիվին:

Այդ նախաձեռնությունը պաշտպանեցին նաև մյուս ճյուղերի կոլեկտիվները: Քութայիսիի երկաթուղային հանգույցի լոկոմոտիվային դեպոյի մեքենավարներ Օ. Մելաձեն, Գ. Ջիբլաձեն և Ի. Բեշկենաձեն մրցության մեջ մտան Լենինականի և Կիրովաբադի լոկոմոտիվային դեպոների մեքենավարներ Ս. Մատնիշյանի, Ու. Սաֆարովի և Ի. Քասումովի հետ: Նրանց աշխատանքային մրցության նշանաբանն էր՝ գերակատարել բեռնափոխադրումների պլանը ճանապարհի բարդ հատվածներում: Նրանցից հետ չմնացին նաև քութայիսցի կոշկագործները, կարողները, տեղական արդյունաբերության ձեռնարկությունները, որոնք պայմանագրեր են կնքել Կիրովաբադի և Լենինականի հարակից կոլեկտիվների հետ: «Պրավդա» թերթը 1952 թվականի ապրիլի 6-ին գրում էր, որ հայրենասիրական նախաձեռնությունը ջերմ արձագանք ու պաշտպանություն է գտել կարագործ բանվորների, կոշկագործների, երկաթուղայինների և տեղական արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվներում:

Հաճախակի հանդիպումները, պատվիրակությունների փոխանակումները, ստանձնած պարտավորությունների կատարման եռամսյակային ստուգումները է՛լ ավելի մերձեցրին վրացի, հայ և ադրբեջանցի աշխատավորներին, ավելի լայնորեն բացահայտեցին նրանց ստեղծագործական հնարավորությունները: Հանդիպումների ժամանակ բարեկամները սիրով միմյանց են հաղորդում իրենց փորձը, օգնում են արմատավորելու ամենայն նորը: Այսպես, կիրովաբադցիները քութայիսցիներին պատմեցին գործվածքների ձևվածքի անթափոն մեթոդի փորձի մասին: Իրենց հերթին քութայիսցի կարագործ բանվորները ադրբեջանցի գործընկերներին պատմեցին արտադրամասը սեփական ուժերով վերակառուցելու, նոր առաջադիմական տեխնիկան ու տեխնոլոգիան արմատավորելու ուղղությամբ իրենց կուտակած փորձը և այլն: Քութայիսցի երկաթուղայինները մասնակցեցին Ադրբեջանի երկաթուղու Կիրովաբադի բաժանմունքի էլեկտրիֆիկացմանը, իսկ հացաբուլկեղենի և հրուշակեղենի արդյունաբերության մասնագետները՝ Կիրովաբադի հրուշակեղենի ֆաբրիկայի կառուցմանն ու նրա առաջին արտադրամասերի գործարկմանը: Տնաշինական կոմբինատի շինարարության ընթացքում հայ շինարարները հաշվի առան Քութայիսիի փորձը:

*Իրականացվել է բնակարանային շինարարության վիթխարի ծրագիր: Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում կառուցվել է ավելի քան 40 միլիոն քառ. մ բնակտարածություն, որից 25 միլիոնը՝ պետական և կոոպերատիվ միջոցների հաշվին:*

*Հայկական ՍՍՀ-ում ամեն օր ծնվում է 222 երեխա, կնքվում է 86 ամուսնություն: Ամուսնալուծությունների ամենացածր թվով Հայաստանը միութենական հանրապետությունների մեջ գրավում է առաջին տեղը:*

## *Վրացական ՍՍՀ*

*Սովետական Վրաստանում ձեռք-ձեռքի տված ապրում ու աշխատում են 80-ից ավելի ազգությունների ներկայացուցիչներ, այդ թվում հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, օսեր, հույներ, աբխազներ, ուկրաինացիներ, հրեաներ, քրդեր և այլն:*

*Վրաստանի կուսակցական կազմակերպությունը միավորում է 79 ազգությունների ներկայացուցիչների:*

*Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում կառուցվել է 1500-ից ավելի խոշոր արդյունաբերական ձեռնարկություն: Այժմ այստեղ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան արտադրում էին Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները մինչև Մեծ Հոկտեմբերը:*

*Լայնորեն մասնակցելով աշխատանքի ընդհանուր միութենական բաժանմանը, Վրաստանը արտադրում է (տոկոսային հարաբերությամբ)՝ մագիստրալային էլեկտրաքարշեր՝ 30,2, բեռնատար ավտոմոբիլներ՝ 2,7, մարգանեցի հանքա-*

Երեք քաղաքների համագործակցությունը վաղուց արդեն դուրս է եկել արդյունաբերական ոլորտի կոլեկտիվների կապերի շրջանակներից: Սերտ կապեր են հաստատվել մշակույթի հիմնարկների, գիտական, գիտահետազոտական կազմակերպությունների, ինստիտուտների, տեխնիկումների, դպրոցների միջև: Ուսանողների, աշակերտների, պրոֆեսորա-դասախոսական կազմի պատվիրակությունների փոխանակումը, համատեղ գիտական և ուսանողական կոնֆերանսները, ուսումնարանների սաների փոխադարձ համերգները սովորական երևույթ են դարձել: Սերտ կապեր գոյություն ունեն ստեղծագործական միությունների ու կազմակերպությունների միջև:

Երեք քաղաքների սոցիալիստական մրցության զարգացման և բարեկամության ամրապնդման գործում մեծ է «Բանվոր», «Կիրովաբադսկի ռաբոչի» «Կիրովաբադսկի կոմունիստ», «Քութայիսսկայա պրավդա» քաղաքային թերթերի դերը: Թերթերի խմբագրությունները հանդես են գալիս որպես բազմաթիվ արժեքավոր միջոցառումների նախաձեռնողներ ու կազմակերպիչներ, յուրաքանչյուր եռամսյակ լուսաբանվում են երեք քաղաքների աշխատանքային մրցակցության արդյունքները:

1964 թվականին այդ քաղաքներում մեծ հանդիսավորությամբ նշվեց դրանց բարեկամության ու սոցիալիստական մրցության 15-ամյակը, իսկ 1979 թվականին՝ այդ իրադարձության 30-ամյակը: Երկու տարի հետո կլրանա դրա 40-ամյակը: Մեզ մոտ արդեն նախապատրաստություններ են տեսնում այդ տարեթիվը դիմավորելու համար:

Երբ բարեկամները հյուր են գնում միմյանց մոտ, որպես հանդիպման հիշատակ և ի նշան անխախտ բարեկամության, ծառ են տնկում: Քութայիսում կա բարեկամության ծառուղի, որը հիմնվել է 1964 թվականին: Որպես խաղաղության պահապաններ ու բարեկամության խորհրդանիշ այսօր հասակ են առել հայերի, ադրբեջանցիների, ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, եղբայրական սոցիալիստական երկրների ներկայացուցիչների տնկած ծառերը:

# ԳԼԽԱՎՈՐ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ԲԱՅՐԱՄՈՎԱ**
**Ադրբեջանի կոմկուսի Սումգայիթի քաղկոմի երկրորդ քարտուղար**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումները (1987 թ.) գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերն օրգանապես կապեցին արագացման կոնցեպցիայի ու ստրատեգիայի հետ, սրությամբ դրեցին կյանքի հետ գաղափարախոսության միասնության ամրապնդման

*քար՝ 28,4, տեսակավոր թեյի տերև՝ 97, տունգի յուղ՝ 100, պահածոներ՝ 2,3, հանքային ջրեր՝ 23: Մոտ 300 արտադրատեսակներ նա արտահանում է աշխարհի 80-ից ավելի երկրներ: Դրանք են՝ էլեկտրաքարշեր, հաստոցներ, մետաղյա խողովակներ, մարգանեց, երկաթամիաձուլվածքներ, ջրօդերևութաբանական և անալիտիկ սարքեր, թեթև արդյունաբերության ապրանքներ, թեյ, գինի, հանքային ջուր և այլ արտադրատեսակներ:*

*Ագրոարդյունաբերական կոմպլեքսի արտադրանքի ընդհանուր ծավալը կհասնի 8998,7 միլիոն ռուբլու: Գյուղատնտեսության, վերամշակող արդյունաբերության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի ամբողջ ենթակառուցվածքի նյութատեխնիկական բազայի զարգացման, ընդլայնման ու ամրապնդման համար ծախսվելու են 4,1 միլիարդ ռուբլի ծավալի կապիտալ ներդրումներ: Նախատեսվում է այդ նույն ժամանակաշրջանում տնտեսություններին առաքել 17 հազար տրակտոր և 16 հազար բեռնատար ավտոմոբիլ:*

*Այսօր Վրաստանում գործում է 270-ից ավելի բարեկարգ ծովամերձ, բարձր լեռնային, ջերմուկաբուժական, կլիմայական առողջարան, հանքային ջրերի 1.400-ից ավելի վայր:*

*Մինչև սովետական կարգերի հաստատումը Վրաստանում կար ընդամենը հինգ թատրոն: Այժմ հանրապետությունում գործում է 32 պրոֆեսիոնալ և մոտ 200 ժողովրդական թատրոն, ինքնագործունեության 20 հազարից ավելի խումբ ու կոլեկտիվ, որոնք միավորում են գրեթե 500 հազար մարդ:*

*Վրաստանը երաժշտական մեծ ավանդույթների հանրապետություն է: Երաժշտական մշակույթի զարգացմանը հանրապետությունում նը-*



պրոբլեմը: Գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն ուղղություններից մեկը մենք համարում ենք աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը: Այդ աշխատանքում հաշվի են առնվում քաղաքի տնտեսական և սոցիալական զարգացման առանձնահատկությունները, աշխատավորական կոլեկտիվների ու ողջ բնակչության բազմազգ կազմը: Սումգայիթ քաղաքը, որտեղ ներկայումս ապրում են 83 ազգերի և ազգությունների ներկայացուցիչներ, տնտեսապես կապված է Միության ավելի քան 700 քաղաքների ու շրջանների, արտասահմանյան 25 երկրների հետ: Խողովակագլանման գործարանում, «Քիմարդ» արտադրական միավորումներում աշխատում են երեսունից ավելի, սուպերֆոսֆատների, ալյումինի գործարաններում և «Սումգայիթկենցաղքիմ» արտադրական միավորումում՝ քսան ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ:

Գործողության մեջ ինտերնացիոնալիզմի օրինակ է ծառայում քաղաքի ձեռնարկությունների սոցիալիստական մրցությունը միութենական մյուս հանրապետությունների աշխատավորների հետ: «Քիմարդ» և «Օրգսինթեզ» ա/մ քիմիագործները մրցում են Վոլգոգրադի ու Ստերլիտամակի, նավթաքիմիագործները՝ Տոլյատիի իրենց գործընկերների, սուպերֆոսֆատների գործարանի աշխատավորները՝ Օդեսայի ու Կեդայնյայի քիմիագործների, «Նավթաքիմավտոմատ» գիտահետազոտական-նախագծային ինստիտուտը՝ Հայաստանի «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվի հետ:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով մեր և մեր բարեկամների կողմից կատարվող աշխատանքում զգացվում է վերափոխումների թարմ շունչը: Հրաժարվում ենք թեև երկարամյա, բայց մեռած ձևերից: Թեկուզ վերցնենք եղբայրակից քաղաքներ Չերկասիի, Ռուսթավիի և Կիրովականի, Տագանրոգի և Չերեպովեցի մրցությունը, որը, շիտակ ասած, ներկայացուցչական բնույթ էր կրում: Գալիս էր ժամանակը, փոխադարձաբար այցելում էինք իրար, սեղմում միմյանց ձեռքը, պատմում այս կամ այն բանի մասին, պարծենում մեր հաջողություններով, շոշափում պրոբլեմներ՝ առանց խորամուխ լինելու դրանց էության մեջ, և «կատարած պարտքի» զգացողությամբ վերադառնում տուն: Հիմա էլ ենք պատվիրակությունների փոխայցելություններ կազմակերպում, բարեկամության ձուլվածքներ տալիս, համատեղ գլանում մետաղ: Այդ ամենը, ինչպես և առաջ, տոն է մեզ համար: Բայց այսօրվա մեր առնչությունները իրենց բովանդակությամբ իսկական աշխատանք են, ըստ որում՝ լարված ու պատասխանատու: Դրանք եզրափակվում են մտքերի փոխանակությամբ, որի ժամանակ բարեկամները շիտակորեն վերլուծում են այն ամենը, ինչ տեսել ու ըմբռնել են: Եվ դա մեծ օգուտ է բերում գործին:

Տարեցտարի ընդլայնվում են սումգայիթցիների կապերը Կիրովականի ձեռնարկությունների հետ: Ադրբեջանցի խողովակագլանողները տարեկան ավելի քան 400

*պատում է Վ. Սարաջիշվիլու անվան պետական կոնսերվատորիայի, 18 մասնագիտական միջնակարգ ուսումնարանների և 150-ից ավելի երաժշտական դպրոցների գործունեությունը:*

*Հանրապետությունում ամեն տարի հրատարակվում է 19 միլիոն օրինակից ավելի գիրք ու բրոշյուր վրացերեն, ռուսերեն, աբխազերեն, օսեթերեն, հայերեն, ադրբեջաներեն, ինչպես նաև օտար լեզուներով:*

*Լույս է տեսնում մինչև 80 անուն պարբերական հրատարակություն: ՍՍՀՄ ժողովուրդների վեց լեզուներով լույս է տեսնում մոտ 150 հանրապետական, մարզային, քաղաքային, շրջանային բազմատիրաժ թերթ՝ մոտ երեք միլիոն օրինակ միանվագ տպաքանակով:*

## *Ադրբեջանական ՍՍՀ*

*Սովետական իշխանության տարիներին Ադրբեջանում կառուցվել և շահագործման է հանձնվել 548 արդյունաբերական ձեռնարկություն:*

*1986 թվականին արդյունաբերական արտադրության ծավալը գերազանցեց 12 միլիարդ ռուբլուց և 1920 թվականի համեմատությամբ աճեց 229 անգամ: Ներկայումս արդյունաբերական արտադրանքը կազմում է ընդհանուր հանրային արտադրանքի ավելի քան երեք հինգերորդը:*

*Հանրապետությունում մեկ աշխատանքային օրում գրեթե նույնքան արտադրանք է թողարկվում, որքան ամբողջ 1920 թվականին:*

# ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԵՐԻ, ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԻ

**Ն. ԵՍԱՅԱՆ**
**Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուլտուրայի բաժնի վարիչ**

ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ հոգևոր կապերը, որոնց ակունքների մոտ կանգնած են եղել նրանց լավագույն ներկայացուցիչները, այսօր դառնում են եղբայրական հանրապետությունների տնտեսական, հասարակական և մշակութային կյանքի ինտերնացիոնալացում: Մեր երկրի ապրած յոթ տասնամյակում իրականացվել է Վ. Ի. Լենինի այն կանխատեսումը, որ նոր սոցիալ-տնտեսական կարգը բուրժուականի փոխարեն առաջադրում է հասարակական կյանքի ինտերնացիոնալացման սոցիալիստական տիպ, որ սոցիալիզմը ինտերնացիոնալացնում է հասարակության տնտեսական և հոգևոր կյանքը:

Արդի պայմաններում գեղարվեստական մշակույթի կարևորագույն խնդիրն է՝ օգնել կուսակցությանը աշխատավորական լայն զանգվածների մեջ դաստիարակելու կոմունիստական աշխարհայացք, քաղաքական վեհ հատկություններ, մեր բարոյականության նորմերը: Նոր մարդու ձևավորմանը նպաստող գեղագիտական արժեքների ստեղծումն ու տարածումն էլ հենց կազմում են սոցիալիստական գեղարվեստական մշակույթի գլխավոր նպատակը: Դրանով իսկ այդ բարձր մշակույթի կրող է դառնում մարդը, որին ամբողջապես ներհատուկ են այդ մշակույթը ծնող ու զարգացնող հասարակության տարբերիչ գծերը և, առաջին հերթին, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի զգացումները:

Ինտերնացիոնալ դաստիարակության գործում բարձր արդյունավետության հասնելու համար բավական չէ մարդկանց գիտակցության մեջ արմատավորել ինտերնացիոնալիզմի, հայրենասիրության գաղափարներն ու սկզբունքները, անհրաժեշտ է նաև դիմել մարդու զգացմունքների աշխարհին, շոշափել նրա հուզական-գեղագիտական ոլորտը:

Անդրկովկասյան հանրապետությունների աշխատավորների ինտերնացիոնալ կապերի հետագա զարգացման վերաբերյալ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսակցությունների Կենտկոմների բյուրոների մշակած համատեղ կոմպլեքսային պլանում նշանակալից տեղ են հատկացվում կուլտուրական հաղորդակցման ուժեղացման միջոցառումներին: Այդ միջոցառումներն ընդգրկում են բոլոր ստեղծագործական միությունների գործունեությունը:

1987 թվականի հունվարին Թբիլիսիում՝ Վրաստանի արվեստի պետական թանգարանում բացվել էր Մ. Սարյանի ստեղծագործությունների ցուցահանդեսը, իսկ փետրվարին երևանցիները զմայլվում էին Լ. Գուդիաշվիլու գունեղ նկարներով: Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական թատրոնում պատրաստվում են բեմադրել Ֆ. Ամիրովի «Հազար ու մի գիշեր» բալետը: Անցյալ տարի Երևանում բացվեց ադրբեջանական նկարիչների ստեղծագործությունների ցուցահանդեսը, իսկ այս տարի կազմակերպվում է հայկական կերպարվեստի ցուցահանդեսը Բաքվում: Շարունակվում են երեք եղբայրական հանրապետությունների կինեմատոգրաֆիստների ավանդական հանդիպումները, կազմակերպվում են թատերական և կինոփառատոներ, ինքնագործ, թատերական և պարարվեստի կոլեկտիվների փոխադարձ հյուրախաղեր: Այս տարվա մայիսին Դիլիջան քաղաքում կայացավ Անդրկովկասի երիտասարդ կոմպոզիտորների փառատոն, իսկ Երևանում կազմակերպվեցին Ադրբեջանի արվեստի վարպետների ելույթներ՝ նվիրված Մեծ



Հոկտեմբերի 70-ամյակին: Հուլիսին մեծ հաջողությամբ անցան Թբիլիսի և Երևան քաղաքների օպերայի և բալետի թատրոնների փոխադարձ հյուրախաղերը: Եվ սա հնգամյակի համար նախատեսված ընդարձակ ծրագրի մի փոքր մասն է միայն: «Ազգային կուլտուրաների աճն ու մերձեցումը, նրանց փոխադարձ կապերի ամրապնդումը հետզհետե ավելի արդյունավետ են դարձնում փոխադարձ հարստացումը, սովետական մարդկանց համար ամենալայն հնարավորություններ բացում հաղորդակցվելու այն ամենայն արժեքավորին, ինչը մեր երկրի ժողովուրդներից յուրաքանչյուրի տաղանդի ծնունդն է»— գրված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ («ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը», էջ 220):

Ռուսաստանի տաղանդների տոնական ստուգատես, մեր ժողովուրդների բարեկամության տարեգրության մի նոր վառ էջ դարձավ ՌՍՖՍՀ-ի գրականության և արվեստի օրերը, որ վերջերս անցկացվեցին մեր հանրապետությունում: Դա մեր երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության ամրապնդման ձևերից մեկն է, մի գործոն, որը նպաստում է արվեստի ու գրականության դերի բարձրացմանը ողջ հասարակության զարգացման գործում:

Մեր հասարակությունում տեղի ունեցող պրոցեսներն իրենց արտացոլումն են գտնում տարբեր հանրապետությունների ստեղծագործական երիտասարդության գործունեության մեջ, և ամենուրեք ավելի ու ավելի շոշափելի է դառնում ձգտումը՝ ծանոթանալու նրանց ստեղծագործական որոնումներին:

Ուստի, մենք ձգտում ենք այն բանին, որ երկրի մշակութային կյանքում տեղի ունեցած ոչ մի նշանակալի երևույթ մեր հանրապետության հասարակայնության տեսադաշտից դուրս չմնա, և, բնականաբար, Հայաստանի կուլտուրայի և արվեստի նվաճումները լայնորեն ներկայացված լինեն եղբայրական միութենական հանրապետություններում:

Մեր հանրապետության կուլտուրայի վարպետների առջև մեծ, կարևոր խնդիրներ են ծառացած գեղարվեստական վարպետության, ստեղծագործության գաղափարաքաղաքական հասունության նոր, է՛լ ավելի բարձր բնագծերի հասնելու համար: Դրանց լուծումը ամբողջովին կախված է ՍՄԿԿ XXVII համագումարի ծրագրային դրույթների հաջող կենսագործումից, դրույթներ, որոնք լայն հորիզոններ են բացում կուլտուրայի և արվեստի գործիչների առջև, գեղարվեստական միտքը զինում են նոր հայտնագործությունների ու մեծագործությունների համար, այն ուղղում սովետական մարդկանց մեջ կոմունիստական աշխարհայացքի, բարոյաքաղաքական վեհ հատկությունների, հարուստ հոգևոր կուլտուրայի ձևավորմանը:

# ՀՈԳԵՎՈՐ ՓՈԽՀԱՐՍՏԱՑՄԱՆ ՄԻՋՈՑՈՎ

**Վ. ԱՍԱԹԻԱՆԻ**
**Վրացական ՍՍՀ կուլտուրայի մինիստր**

ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ՝ ՈՐՊԵՍ ԷԹՆԻԿԱԿԱՆ ՄԻ ԱՄԲՈՂՋԻ, ձևավորումը տեղի է ունեցել Արևելքի և Արևմուտքի, Հյուսիսի և Հարավի շփումների խաչաձևման վայրում: Նման զարգացումը իր կնիքն է թողել Վրաստանի հոգևոր մշակույթի բովանդակության ու ձևի վրա, մերձավոր հարևանների հետ նրա ունեցած հարաբերությունների վրա:

Այսօր, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակի տոնակատարության նախօրյակին, դժվար է գերագնահատել Անդրկովկասյան հանրապետությունների մշակութային կապերի կարևորությունը: Համագործակցության առավել արդյունավետ ոլորտներից մեկը ներկայումս, մեր կարծիքով, թատրոնն է: Վրաստանում վաղուց ի վեր գործում է Ստ. Շահումյանի անվան հայկական պետական դրամատիկական թատրոնը, կան ադրբեջանական և քրդական ժողովրդական թատրոններ: Ժամանակակից և դասական պիեսներից բացի նրանք իրենց բեմերում մայրենի լեզվով բեմադրում են վրացական և ռուսական դրամատուրգիայի գլուխգործոցները:

Ստ. Շահումյանի անվան թատրոնի կոլեկտիվը հաճախ հյուրախաղերով լինում է Երևանում, Լենինականում, Կիրովականում և այլն: 1969 թվականին թատրոնը եղավ Բաքվում:

Իրենց հերթին Հայաստանի թատրոնները հանախակի հյուրեր են մեր հանրապետության զանազան քաղաքներում: Օրինակ, 1964 թվականին Լենինականի տիկնիկային թատրոնը եղել է Ախալցիխեի, Ախալքալակի և Թեթրի Ծղարոյի շրջաններում: 1979 թվականին Վրաստանի մայրաքաղաքում հյուրախաղերի էր եկել Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնը: 1978 թվականին Թբիլիսիում և մի քանի այլ բնակավայրերում եղավ ադրբեջանական պատանի հանդիսատեսի թատրոնը, իսկ 1979 թվականին հաջողությամբ անցան Շեքիի ադրբեջանական թատրոնի, Սումգայիթի դրամատիկական թատրոնի հյուրախաղերը: 1984 թվականին Թբիլիսին ընդունեց Ադրբեջանի Ազիզբեկովի անվան պետական թատրոնի ստեղծագործական կոլեկտիվին:

1984 թվականից կազմակերպվեց տիկնիկային թատրոնների անդրկովկասյան փառատոն: Այդ ժամանակ էլ հանդիսավոր կերպով նշվեց Ստ. Շահումյանի անվան հայկական թատրոնի 125-ամյակը: Թատրոնը պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով: 1985 թվականին Թբիլիսիում հյուրախաղերով հանդես եկավ Ստեփանակերտի «Պատվո նշանի» շքանշանակիր հայկական դրամատիկական թատրոնը:

1986 թվականին մեր հանրապետությունում ներկայացումներ տվեցին Կիրովականի Հ. Աբելյանի անվան պետական դրամատիկական թատրոնը և Հախվերդովի անվան ադրբեջանական դրամատիկական թատրոնը:

1977 թվականին վրացական պատանի հանդիսատեսի թատրոնը Երևանի հանդիսատեսներին ցույց տվեց «Մերի Պոպինս» ներկայացումը, 1983 թվականին Գորիի Գ. Էրիսթավիի անվան պետական թատրոնը Երևանում ներկայացրեց Ա. Պապայանի «Աշխարհն, այո՛, շուռ է եկել» պիեսը:

1984 թվականին Երևանում կայացած շեքսպիրյան փառատոնին մասնակցեցին նաև Կ. Մարջանիշվիլու անվան թատրոնը («Օթելլո») և Թբիլիսիի Ա. Ախմետելիի անվան դրամատիկական թատրոնը («Հոռմեացիներ»). դրանից առաջ Շ. Ռուսթավելու անվան թատրոնը երևանցիների դատին էր հանձնել Վ. Շեքսպիրի «Ռիչարդ III-ը»:

Թատերական կոլեկտիվների փոխադարձ հյուրախաղերից բացի վրացական թատրոնի վարպետները հաճախ հրավիրվում են ներկայացումներ իրականացնելու, իսկ դերասանները՝ ներկայացումներին մասնակցելու համար:

Ներկայումս հանրապետությունում գործում են 16 հայկական ու ադրբեջանական երգի ու պարի ազգային անսամբլներ: Դրանց թվում են Թբիլիսիի, Մառնեուլիի, Ռուսթավիի, Գարդաբանիի, Ախալքալակի և այլ անսամբլները: Կանոնավոր կերպով կազմակերպվում են երեք եղբայրական հանրապետությունների ինքնագործ կոլեկտիվների արտագնա համերգներ: Լագոդեխի շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկները հաճախ համերգ-երեկոներ են կազմակերպում Ադրբեջանական ՍՍՀ Կախիի, Բելականիի և Զաքաթալայի շրջանների աշխատավորների համար:

Ինտերնացիոնալ մշակութային կապերի զարգացման ու ամրապնդման նույնպիսի կարևոր բնագավառ է դարձել նաև երաժշտական կյանքը: Այստեղ ստեղծվել են ամուր ավանդույթներ: 1975 թվականից իրականացվում է փառատոն՝ «Սովետական Անդրկովկասի մեղեդիներ»: Թբիլիսի—Երևան—Բաքու՝ այսպիսի հաջորդականությամբ կայացան փառատոնի առաջին երկու շրջանները: Երեք հանրապետությունների արվեստի վարպետների ելույթները լայն հետաքրքրություն են առաջացնում ունկնդիրների շրջանում: Այդ համերգներին ինտերնացիոնալ բնույթ են հաղորդում ոչ միայն երեք հանրապետությունների կատարողների միաժամանակյա մասնակցությունը համերգներին, այլև համերգների ծրագրերը կազմող ստեղծագործությունները: Մեր ասածը հաստատելու համար նշենք Լ. Քերուբինիի «Ռեքվիեմի» պրեմիերան Թբիլիսիում՝ Վրաստանի պետական սիմֆոնիկ նվագախմբի և Հայաստանի պետական երգչախմբի կատարմամբ, որտեղ հանրապետություններից յուրաքանչյուրի աշակերտները կատարեցին երկու հարևան հանրապետությունների կոմպոզիտորների երկուական ստեղծագործություն, Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնի դերասանների մասնակցությունը Զ. Փալիաշվիլու «Դաիսի» օպերայի ներկայացմանը, Օ. Թաքթաքիշվիլու «Ռուսթավելու հետքերով» օրատորիայի կատարումը Հայաստանի պետական ակադեմիական երգչախմբի կողմից վրացերեն լեզվով:



Ստեղծագործական երիտասարդության ներկայացուցիչների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման գործում ծանրակշիռ ավանդ ներդրեց Անդրկովկասի երիտասարդ կոմպոզիտորների վեցերորդ փառատոնը, որը կայացավ այս տարվա մայիսին Թբիլիսիում:

Համագործակցության ամենից ավանդական ոլորտներից մեկն էլ կերպարվեստի բնագավառն է: Լ. Գուդիաշվիլին բարեկամական սերտ կապերով էր կապված նկարիչներ Ե. Քոչարի և հատկապես Բաժբեուկ-Մելիքյանի հետ, որը ամբողջ կյանքն ապրել է Թբիլիսիում: Չի կարելի չխոսել նաև նկարիչներ Ա. Քութաթելաձեի և Դ. Նալբանդյանի, Ու. Ջափարիձեի և Է. Իսաբեկյանի և այլոց բարեկամության մասին:

1982 թվականին Թբիլիսիում կազմակերպվել էր Հայաստանի ժամանակակից թատերական նկարիչների աշխատանքների, ժամանակին Թբիլիսիի գեղարվեստի ակադեմիան ավարտած Հռիփսիմե Սիմոնյանի ստեղծագործությունների ցուցահանդեսը:

1983 թվականին Թբիլիսիի նկարիչների տան ցուցասրահում ցուցադրվել էին նկարիչ Գ. Բաշինջաղյանի աշխատանքները: Ծնված լինելով Սղնախ քաղաքում. Բաշինջաղյանը շարունակ ապրել ու աշխատել է Թիֆլիսում:

1984 թվականին նկարչի նույն տանը և Թբիլիսիի պատկերասրահում կազմակերպվել էր երկու նկարիչների՝ Ջոտտո Գրիգորյան և Դիանա Ուկլեբա ամուսինների աշխատանքների ցուցահանդեսը. նրանց ողջ կյանքը մեր ժողովուրդների անկեղծ բարեկամության վառ վկայությունն է:

Անցյալ տարի Վրաստանի մայրաքաղաքի պատկերասրահում բացվեց «Բիենալե»՝ հայ և ադրբեջանցի նկարիչների մասնակցությամբ: Ցուցահանդեսի շրջանակներում նկարիչներին առաջարկվել էր մշակութային լայն ծրագիր: Կայացած հանդիպումներն ու քննարկումները է՛լ ավելի ամրապնդեցին երեք եղբայրական հանրապետությունների ստեղծագործական հասարակայնության միջև եղած կապերը:

Մեծ հոկտեմբերի 70-ամյակի տարում մեր փոխադարձ կապերը ձեռք են բերել որակապես նոր կողմեր, որոնք վկայում են Անդրկովկասի ժողովուրդների հոգևոր փոխազդեցության նշանակալի խորացման մասին:

Բոլորովին վերջերս Թբիլիսիում մեծ հաջողությամբ անցավ ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ Մ. Սարյանի աշխատանքների ցուցահանդեսը: Գրեթե միաժամանակ Երևանում բացվեց Լ. Գուդիաշվիլու ստեղծագործությունների ցուցահանդեսը:

Կարելի է ասել, որ Վրաստանի թանգարանները ակտիվորեն աշխատում են ինտերնացիոնալ դաստիարակության ոլորտում: Այս տեսակետից դրվատանքի խոսքերի են արժանի Մառնեուլի և Ախալցիխե քաղաքների ժողովուրդների բարեկամության թանգարանները: Այստեղ հետաքրքիր անցան «Մենք բարեկամությամբ ենք ուժեղ», «Եղբայրը եղբորով է ուժեղ», «Ռազմաճակատային բարեկամության էջեր Հայրենական մեծ պատերազմում», «Մենք ինտերնացիոնալիստներ ենք» նշանաբանով կազմակերպված միջոցառումները:

Թանգարանները մեծ ուշադրություն են նվիրում երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին: Այդ նպատակին են ծառայում ժողովրդական տոները, որոնց մասնակցում են նաև թանգարանները: Այսպես, Մառնեուլիի թանգարանը ամեն տարի կազմակերպում է տոներ՝ «Հայրենիքի զավակը»՝ նվիրված Նարիման Նարիմանովին, «Մամուլիշվիլոբա»՝ նվիրված Միխայիլ Ջավախիշվիլուն, «Վահան Տերյանի պոեզիայի օր»՝ Բոգդանովկայի շրջանի Գանձա գյուղի Վ. Տերյանի տուն-թանգարանում: Թբիլիսիի պատմաազգագրական թանգարանում կազմակերպվել էր ինտերնացիոնալ բարեկամության երեկո՝ նվիրված անդրկովկասյան ժողովուրդների երգիչ Սայաթ-Նովային: Մախարաձե քաղաքի մարտական փառքի թանգարանը կազմակերպել էր Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների ցույց՝ «Մենք հայրենիքի պաշտպաններն ենք» նշանաբանով, որին մասնակցեցին նաև Երևանից ու Բաքվից ժամանած հյուրերը: Պատմաազգագրական թանգարանում կազմակերպվել էր ցուցահանդես՝ «Թբիլիսին հայ նկարիչների աչքերով»: Նիկո Փիրոսմանիշվիլու տուն-թանգարանը Ադրբեջանական ՍՍՀ Կախիի շրջանի Ալիբեգլո գյուղում կազմակերպել էր մանկական նկարների ցուցահանդես, իսկ մեկ ամիս հետո թանգարանն ընդունեց Կախիի դպրոցականների նկարների պատասխան ցուցահանդեսը:

Ավելի ու ավելի լայն ու ամուր են դառնում Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների մշակութային կապերը: Վերջերս Բաքվում բացվեց Լ. Գուդիաշվիլու ստեղծագործությունների ցուցահանդեսը, որը ջերմորեն ընդունվեց մայրաքա-

ղաքի հասարակայնության կողմից, Թբիլիսիում հաջողությամբ անցան Հայաստանի պարի պետական անսամբլի ելույթները, որոնք դարձան ժողովրդական պարարվեստի խնկական տոն: Էստրադային երաժշտության սիրահարներին մեծ հաճույք պատճառեց Հայաստանի պետական էստրադային նվագախմբի ելույթը: Թբիլիսիի Ա. Գրիբոյեդովի անվան թատրոնի բեմը տրամադրվել էր Երևանի դրամատիկական թատրոնի դերասաններին: Այս ամառ տեղի ունեցավ Երևանի և Թբիլիսիի օպերայի և բալետի թատրոնների փոխադարձ հյուրախաղերը: Այս ամենը մեր բարեկամության, մեր մշակույթների միասնության տարեգրության էջերից մեկն է:

Ազգային հարաբերությունների կատարելագործման խնդիրներից մեկն էլ, որ առաջադրել է ՍՄԿԿ XXVII համագումարը, սովետական մարդկանց բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային բազմազգի, իր էությամբ ինտերնացիոնալ միասնական մշակույթի համակողմանի զարգացումն է: Ազգային մշակույթների մերձեցումը, փոխադարձ կապերի ընդլայնումը հարստացնում են այդ մշակույթները, ավելի արդյունավետ դարձնում նրանց համագործակցությունը: Դա մեր ժողովուրդների համախմբման ու նրանց եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման կարևորագույն գործոններից մեկն է:

## «ՈՐՊԵՍԶԻ ԼՈՂԱՄ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԵՌՈՒՆ...»

### ԷԼՉԻՆ
### Ադրբեջանի գրողների միության վարչության քարտուղար

ԳՐԻՇ ՎԵՐՋՆԵԼՈՎ, պատկերացրի նրանց, ովքեր կարդալու են այսօրվա տպագիր խոսքս. եղբայրական անդրկովկասյան հանրապետությունների ընթերցողներին: Առաջին հերթին թերևս նրանց է հասցեագրվում մեր փոխկանչը. Վրաստանի, Հայաստանի և իմ հանրապետության ներկայացուցիչների խոսքը, որոնք ողջ երկրի հետ միասին արմատական, մաքրագործ և ոգևորիչ վերափոխումների շրջան են ապրում:

Հեղափոխության մեծ երգիչը, որը ծնվել է Վրաստանի Բաղդադի գյուղում, գրել է. «Նավակներ են մարդիկ: Թեև ցամաքում: Եվ քանի ապրում ենք կյանքը մեր, կպչում են շարունակ կողքերից մարդուն ամեն տեսակ կեղտոտ խեցիներ»: Այդպես էլ մեր հասարակության վիթխարի նավը. դրան կպած քարացածության, բյուրոկրատիզմի, անտնտեսվարության ու վոլյունտարիզմի «խեցիները» դանդաղեցրին նրա հուժկու ընթացքը, հանգեցրին լճացման երևույթների: Այժմ մեր ողջ երկիրը, Վ. Մայակովսկու պատկերավոր արտահայտությամբ, «ըստ Լենինի», լենինյան անողոք ճշմարտության լույսով, մաքրում է իրեն, որպեսզի լողա հեղափոխության հեռուն:

Հայտնի սասցվածք է, թե՝ նորը լավ մոռացված հինն է: Բայց կան մնայուն, անմահ ճշմարտություններ, որոնք մոռացության տալը թանկ է նստում մարդկանց, ժողովուրդների, երկրի վրա... Հեղափոխության և դեմոկրատիայի ճշմարտությունների այդ վտանգավոր ու երկարատև մոռացման մասին կուսակցությունը համարձակորեն և վճռականորեն մեզ բոլորիս ասաց ՍՄԿԿ XXVII համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում, բազմաթիվ համաժողովների ամբիոններից՝ ի լուր ողջ աշխարհի:

Սոցիալիզմի մեծագույն նվաճումներից և շարժիչ ուժերից մեկը ինտերնացիոնալիզմն է, մեր ժողովուրդների հոգևոր մերձեցումը, նրանց բարեկամությունն ու եղբայրությունը՝ խարսխված սոցիալական վսեմ իդեալների միասնության վրա:

Գաղտնիք չէ, որ բարդությունները լռության մատնելը, սուր անկյունները և օբյեկտիվ լուծման կարոտ պրոբլեմները շրջանցելը կարող են պատճառել ոչ քիչ վնաս, տողանցք բացել անառողջ հովերի և սուրբ զգացմունքների շահարկման համար: Չի կարելի թույլ տալ, որ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության՝ բնական և խնկական արժեքի մասին երկխոսությունները, որ մշակվել են դարերի ընթացքում և հեղափոխության կողմից բարձրացվել նոր աստիճանի, հիշեցնեն կենաց ճառեր, առանց լրջմտորեն թափանցելու հարցի էության ու դինամիկայի մեջ: Կուսակցությունը



ազգային պրոցեսների ղեկավարման հսկայական փորձ ունի, որը հարկավոր է խորապես ուսումնասիրել, պրոպագանդել և լայնորեն օգտագործել: Արդի պայմաններում մեր դասակարգային հակառակորդը հույս ունի, որ մեր հասարակության մեջ տեղի ունեցող վերակառուցման հետևանքով կթուլանա մարքս-լենինյան գաղափարախոսության ազդեցությունը: Հանուն դրա տարածվում են սովետական էկոնոմիկայի ոլորտում տեղի ունեցող փոփոխությունների էության չարամիտ մեկնաբանություններ, հրահրվում են նացիոնալիստական և կրոնական գաղափարներ, փորձեր են ձեռնարկվում դեմոկրատիզմի ու հրապարակայնության խորացումը օգտագործել անպատասխանատու դեմագոգիայի ծավալման համար:

Մենք՝ ունենք օրինակներ, թե ում պետք է հավասարվել, բազմապատկելու, զարգացնելու և հարստացնելու շատ բան ունենք: Մենք ժառանգել ենք ժողովուրդների միավորման մեծագործների հիշողությունն ու արիությունը, տաղանդն ու վեհանձնությունը: Դարերի մշուշից բարձրանում են նրանց վեհ կերպարները. Նիզամի ու Ռուսթավելի, Վագիֆ, Սայաթ-Նովա և Բեսիկի, Միրզա Ֆաթալի Ախունդով, Ալեքսանդր Ճավճավաձե և Խաչատուր Աբովյան... Մեր նախակարապետների պատգամները սրբազան են: Անդրկովկասյան երեք ժողովուրդների պատմությունը, որոնք դարեր շարունակ ապրել են կողք-կողքի, կիսել իրենց ուրախությունն ու տխրությունը, համատեղ հետ մղել օտարների հարձակումը և պայքարել հանուն ազգային արժանապատվության, այն ճշմարտության խորաթափանց գիտակցման ու կանխագործման օրինակ է հանդիսանում, որը Մարքսը հռչակել է հետևյալ բանաձևով. «Չի կարող ազատ լինել այն ժողովուրդը, որը ճնշում է ուրիշներին»:

Մեր ժողովուրդները հնուց են ըմբռնել հյուսիսային մեծ հարևանի՝ Ռուսաստանի հետ դաշնակցելու շահավետությունը: Պուշկինի և Նեկրասովի, Դոստոևսկու և Տոլստոյի, Չեռնիշևսկու և Լենինի Ռուսաստանի... Ցարիզմի գաղութային քաղաքականությանը հակառակ, ընդլայնվում և ամրապնդվում էին բազմազգ կայսրության կեղեքված ժողովուրդների ինտերնացիոնալ կապերն ու դասակարգային համերաշխությունը, և այդ համերաշխությունը ի վերջո հասցրեց Մեծ հոկտեմբերի բարիկադներին, սովետների երկրի ստեղծմանը:

Հայացքս եմ գցում դեպի անցյալը և տեսնում Ղարաբաղի խանության դեսպանորդ, բանաստեղծ Վագիֆին՝ Հերակլ Երկրորդի հետ բանակցություններ վարելիս, բանաստեղծ, որը հիմն է ձոնել «Թիֆլիսի գեղեցկուհուն»: Ես տեսնում եմ մեր դասականի ժամանակակցին՝ հայ բանաստեղծ-աշուղ Սայաթ-Նովային, որը ոգեշունչ երգեր է գրել երեք եղբայր ժողովուրդների լեզուներով... Ես լսում եմ Վագիֆի և Սայաթ-Նովայի վրացի եղբոր ու ժամանակակցի՝ Բեսիկիի երգերը, որը փառաբանել է բարությունն ու արդարությունը... Առաջինը սպանվեց դաժան իշխանների ձեռքով, որը ձգտում էր իր ձեռքը վերցնել խանության ղեկը: Երկրորդը զոհվեց Թիֆլիսում օտար նվաճողների ձեռքով: Երրորդն իր մահկանացուն կնքեց օտար ափերում, պանդխտության մեջ...

Նրանց ճակատագրի ողբերգությունը վսեմ իդեալին ազնվորեն ծառայելու մեջ էր: Նրանք մոտեցնում էին արշալույսը. Ախունդովը և Աբովյանը, Իլյա Ճավճավաձեն և Հովհաննես Թումանյանը, Ջալիլ Մամեդկուլիզադեն և Ակակի Ծերեթելին: Դարի արշալույսին, երբ մեր հորիզոնը մշուշվեց թշնամանքի ու երկպառակության սև ամպերով, որ սերմանվեցին անմաքուր ձեռքերով, մեր ժողովուրդների լավագույն որդիներն ու դուստրերը իրենց մեջ արիություն ու քաջություն գտան բողոքի ձայն բարձրացնելու, կանգնելու նրանց ճանապարհին, ովքեր ուզում էին պառակտել մեզ:

Մենք հիշում ենք Ջալիլ Մամեդկուլիզադեի «Քյամանչան», Սաբիրի «Ինտերնացիոնալը», Ջաֆար Ջաբարլու «1905 թվականին» այնպես, ինչպես Հովհաննես Թումանյանի «Մի կաթիլ մեղրը» և բոլշևիկ Պրոկոպի (Ալյոշա) Ջափարիձեի՝ 26 կոմիսարների կոհորտայից մեկի խաղաղասիրական ազնիվ առաքելությունը:

Պրոլետարական Բաքուն եղել է հեղափոխական եղբայրության օրրանն ու պատվարը, մեր միավորման փարոսը: Այստեղ է ճառագել պրոլետարական բանաստեղծ Հակոբ Հակոբյանի բանվորական մուսան: Այստեղ է ապրել և ստեղծագործել վրացի բանաստեղծ Սանդրո Էուլին: Բերեմ ևս մի նշանակալի փաստ, որը խոսում է մեր կապերի հորիզոնների մասին: 1908 թվականին Բաքվում, Մեշադի Ազիզբեկովի նախաձեռնությամբ, մեծարել են վրաց գրականության դասական Ակակի Ծերեթելուն (այդ մասին գրված է վրացի հետազոտող Վ. Իմեդաձեի աշխատության մեջ):

Իր հերթին, պատմությանը հայտնի են ադրբեջանական մշակույթի և հասարակական մտքի գործիչների բազում անուններ, որոնց ճակատագիրը կապված է եղել Վրաստանի ու Հայաստանի հետ: Հին Թիֆլիսում է սկսել հրատարակվել «Մոլլա Նասրեդին» հանդեսը, որը հետո հռչակվեց ամբողջ Արևելքում: Վրաստանում, Գըզըլ Հաջիլի գյուղում ուսուցիչ է աշխատել Նարիման Նարիմանովը՝ ապագա ականավոր հեղափոխական-լենինյանը, գրողը և հրապարակախոսը: Իսկ մեր մշակույթի քանի՜-քանի պանծալի էջեր ու անուններ են կապված Գորիի հոգևոր սեմինարիայի հետ: Ես արդեն չեմ խոսում Միրզա Ֆաթալի Ախունդովի մասին, որը կյանքի մեծ մասն ապրել է Թիֆլիսում, այստեղ գրել իր անմահ ստեղծագործությունները: Դարասկզբի Թիֆլիսի մամուլի էջերում հաճախ կարելի է տեսնել մեր խոշոր հրապարակախոսների՝ Էյնալի Սուլթանովի, Մամեդաղա Ծահտախտինսկու, Հուսեին Մինասազովի ստորագրությունները...

Մեր եղբայրության հիանալի ռահվիրաներն ու արարողները մարմնավորվում են պոեմների ու երգերի մեջ, ներշնչանքի աղբյուր ծառայում խոսքի ժամանակակից վարպետների համար: Սամեդ Վուրղունի «Վագիֆ» դրամայում մեր ժողովուրդների որդիները ուս-ուսի հետ են մղում զավթիչների հարձակումները: Մամեդ Ռահիմը պոեմ է գրել Սայաթ-Նովայի մասին: Ավագ սերնդի գրողները հիշում են մեր վարպետների՝ Ալեքսանդր Ծիրվանզադեի և Աբդուրահիմ Հախվերդիևի, Սամեդ Վուրղունի և Ավետիք Իսահակյանի բարեկամությունը:

Ընթերցողներին լավ հայտնի է մեր ժողովրդական բանաստեղծի կարծիքը Գեորգի Լեոնիձեի «Պորթուխալա» պոեմի մասին: Հայ բանաստեղծ Իսահակյանը բարձր կարծիք է հայտնել իր «Աբու լալա Մահարի» պոեմի Միքայել Մուշֆիկի կատարած թարգմանության մասին (թարգմանությունը, ցավոք, կորել է): Չեմ կարող չհիշել նաև հայերեն ու վրացերեն խոսքի ուշադրությունը ադրբեջանական կյանքի նկատմամբ: Ինչպիսի՜ մարդկայնություն, վեհ հումանիզմ կա Աբովյանի «Թուրքի աղջիկը» պատմվածքի մեջ: Ինչպիսի՜ բարի կարեկցանքով է Միխայիլ Ջավախիշվիլին նկարագրում ուրմիացի չքավոր Հասանին իր «Լամբալոն և Կոջան» հիանալի վիպակի մեջ: Նույնպիսի ազնիվ կարեկցությամբ է համակված նրա «Անմեղ Աբդուլան» պատմվածքը:

Այդ վսեմ ավանդույթները կոչված են բազմապատկելու ներկայիս գրողները: Վերջերս մեծ հետաքրքրությամբ կարդացի բանաստեղծ Աբաս Աբդուլայի «Խաչի ճանապարհը ատողերի ճանապարհն է» պոեմը Իլյա Ճավճավաձեի մասին, որը ցարական պահնորդության վարձկանների ձեռքով չարանենգորեն սպանվել է 1907 թվականին Ծիծամուրի գյուղում: Պոեմը հուզում է թեմայի իմաստավորման խորությամբ, Անդրկովկասյան կյանքի սոցիալական ու քաղաքական պատկերի լայն ընդգրկումով: Չեմ կասկածում, որ դրա նկատմամբ հետաքրքրություն կցուցաբերեն և՛ վրացի, և՛ հայ ընթերցողները:

Թեմային համապատասխան՝ ես սահմանափակվեցի միայն մի քանի խորհրդանշական օրինակով: Մեր բարեկամությունը, մեր հոգևոր շփումը և միավորումը մեկընդմիշտ տրված անփոփոխ բաներ չեն, այլ շարունակ հարստացվող պրոցես են, ամենօրյա ստեղծագործական ճանաչում և աշխատանք: Եվ, իհարկե, ոչ միայն գրականության ոլորտում: Վերջերս բաքվեցիներին բախտ վիճակվեց տեսնելու ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ, հիանալի վրացի արվեստագետ Լադո Գուդիաշվիլու աշխատանքների ցուցահանդեսը: «Անդրկովկասյան գարուն» երգի փառատոնը բազմահազարանոց լսարան է հավաքում մեր երկրամասում... Մեր հանրապետությունների պատվիրակները աշխատում են ԲԱՄ-ում և ԿԱՄԱԶ-ում, Սիբիրի նավթահանքերում, կանգնած են հայրենիքի պաշտպանության դիրքերում. դա սովետական ինտերնացիոնալիզմի ևս մեկ կենդանի չափանիշ է: Երախտագիտության զգացումով եմ մտածում նրանց մասին, ովքեր հայ և վրացի ընթերցողներին հաղորդակից են դարձնում իմ հանրապետության գրողների խոսքին: Մենք հպարտանալու շատ բան ունենք: Առջևում անսպառ աշխատանք կա անելու: Իմ կարծիքով, դա շատ լավ է. երբ կա գործ, հանուն որի արժե գրել, ստեղծագործել, աշխատել: Ուզում եմ խոսքս եզրափակել Սամեդ Վուրղունի տողերով.

**Հառա՜ջ, պոետներ, ուժեղ ձեռքերով**
**Ավելի լայն բացենք ժամանակների վարագույրը,**
**Գալիքը թևակոխենք որպես բոլշևիկներ,**
**Լենինյան պանծալի դրոշների հովանու ներքո:**

---

*Բարեկամության ու եղբայրության*

*երգիչները*

# ԵՐԵՔ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՐԳԻՉԸ

## ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻ ԾՆՆԴՅԱՆ 275-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

**Հ. ԲԱԽՉԻՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ. այս անունը վաղուց արդեն վերածվել է ժողովուրդների բարեկամության խորհրդանիշի, որը միաժամանակ զուգորդում է իր մեջ սիրո, գեղեցկության և մարդասիրության բարձր գաղափարներ: Որպես այդպիսին, XVIII դարի այս հանճարեղ աշուղ-բանաստեղծը մուտք է գործել Անդրկովկասի երեք ժողովուրդների գրականության մեջ, դարձել նրանց հավերժական ուղեկիցը, նպաստել հոգևոր առաջընթացին՝ սերունդների մեջ սերմանելով բարոյապես գեղեցիկը, սերը մարդու և աշխարհի հանդեպ, տալով ազնվության հոգեշահ դասեր: Եվ այսօր, երբ առավել լայն հնարավորություններ են ստեղծվում ժողովուրդների մերձեցման, նրանց մշակութային արժեքների փոխադարձ յուրացման համար, է՛լ ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում Սայաթ-Նովայի եռալեզու ստեղծագործությունը:

Սայաթ-Նովան խոր կապերով առնչակցվել է իր հեռավոր ու մերձավոր նախորդների գրական ավանդույթներին և իր բարերար ազդեցությունը գործել հետագա շրջանի հայ, վրաց և ադրբեջանական գրականության վրա: Նրա ստեղծագործությունը խարսխված է հոգևոր-մշակութային հարուստ հիմքի վրա, որն այս կամ այն չափով ներառում է եղբայր ժողովուրդների բազմահարուստ ժողովրդական բանահյուսությունն ու գրականությունը:

Որքան էլ իր տեսակի մեջ եզակի ու բացառիկ՝ Սայաթ-Նովայի եռալեզու ժառանգությունը պատահական երևույթ չէր, այլ պայմանավորված էր երեք ժողովուրդների պատմության ու մշակույթի զարգացման օրինաչափությամբ:

Ինչպես հայտնի է, Սայաթ-Նովան հիմնականում ապրել ու ստեղծագործել է Վրաստանի մայրաքաղաք Թիֆլիսում, որտեղ, Հովհ. Թումանյանի խոսքերով ասած, «եկել միացել էին կովկասյան ժողովուրդներն ամենքը իրենց առանձնահատուկ կյանքով ու երանգով և հորինել էին ազգերի մի վերին աստիճանի գրավիչ ու հետաքրքրական խառնուրդ ու կյանք»: Ահա այդ բազմազգ քաղաքում իրար կողքի եղբայրաբար ապրող երեք ժողովուրդների՝ վրացիների, հայերի ու ադրբեջանցիների համար է, որ ստեղծագործել է Սայաթ-Նովան, «խալխի նոքարը», իբրև լայնախոհ բանաստեղծ խտրականություն չդնելով երեք ժողովուրդների միջև, ստեղծագործելով երեք լեզուներով:

Այն ժամանակ, երբ ողջ Անդրկովկասը պլեկծվում էր կրոնական երկպառակություններից, երբ թուրք ու պարսիկ տերերը դիմում էին վայրագ կրոնական հալածանքների, ոտնահարում մարդկանց ազգային ու մարդկային արժանապատվությունն ու իրավունքները, հանդես է գալիս Սայաթ-Նովան՝ ժողովուրդների խաղաղության և համերաշխության քարոզչի առաքելությամբ, մեծ արվեստագետի իր ծառայությունը մատուցելով երեք ժողովրդի՝ զանց առնելով նրանց ազգային, կրոնական ու դավանաբանական տարբերությունները: Սայաթ-Նովային, ըստ էության, հուզել ու հրապուրել են ավելի շատ այն նյութական ու հոգևոր արժեքները, որոնք միավորել, մերձեցրել, համախմբել են տարբեր ազգերի: Նա սիրո և բարեկամության ջատագով է. նրա համար առաջնայինը **մարդն** է իր **մարդկային** հատկանիշներով, քանզի, իր իսկ խոսքերով ասած, «Աստված դիփունանցըն մին հոքի էրիտ»:

Որպես մեծ ու ճշմարիտ ժողովրդական բանաստեղծ, Սայաթ-Նովան ձգտել է

արտահայտել ողջ աշխատավորության հույզերն ու տենչերը, ուստի և նա չէր կարող սահմանափակվել սոսկ մեկ ժողովրդի ձայնին անսալով և անտեսելով նրա կողքին նույն հոգսերով ու ցավերով ապրող մյուս ժողովուրդներին: Հետևաբար, նա իր սրտի խոսքն արտահայտեց տարբեր լեզուներով, ձգտելով հասկանալի լինել բոլորին, ըստ ամենայնի ծառայել ժողովրդական լայն զանգվածներին: Երգիչը երեք լեզուներով և գրեթե հավասար ուժով արտահայտեց իր՝ մեծ սիրահարի բուռն ապրումները, այլև իր բողոքն անարդար աշխարհի դեմ, իր խորախորհուրդ խոհերը, իր իմաստուն խրատները:

Մեկ անձի մեջ ամփոփված երեք ժողովրդի բանաստեղծը իր ստեղծագործության մեջ առնչակցել է նաև այդ ժողովուրդների լեզվական ու գրական-բանահյուսական մի շարք հատկանիշներ: Իր գործածած լեզուներից յուրաքանչյուրը նա հարստացրել է մյուս լեզուների բառագանձով ու ոճական ձևերով: Ինչպես գրել է սովետական անվանի գրականագետ Բ. Ռիֆտինը, «Միջին դարերում առանձնահատուկ դեր է կատարում երկլեզվյա միջավայրը, որտեղ հաճախ առաջանում է միանգամայն տարբեր ավանդույթների մի յուրօրինակ գրական (կամ գրական-բանահյուսական) համադրություն»: Սայաթ-Նովայի շնորհիվ, ըստ էության, ինքնատիպորեն համադրվել են հայկական, վրացական և ադրբեջանական գրականության ու բանահյուսության ավանդույթները, ըստ որի քավական մերձեցել են այդ ժողովուրդները, նրանց հոգևոր մշակույթը, ամրապնդվել նրանց բարեկամությունը: Հայ մեծ բանաստեղծի հումանիստական ձգտումն է եղել ծառայել Անդրկովկասի երեք ժողովրդին, մարդկային բարձր գաղափարների գեղարվեստական արծարծմամբ նպաստել պատմական ճակատագրով իրար մերձեցած այդ ժողովուրդների փոխադարձաբար անհրաժեշտ բարեկամությանը: Դա, հիրավի, ինտերնացիոնալիստական բարձր առաքելություն էր, որ մինչև օրս իր անմահ ստեղծագործությամբ շարունակում է կատարել հանճարեղ ժողովրդական երգիչը:

ԻՆՉՊԵՍ ՀԱՅՏՆԻ Է, Սայաթ-Նովան սկսել է ստեղծագործել նախ ադրբեջաներեն: Հայտնի է, որ ադրբեջաներենը եղել է աշուղության հիմնական լեզուն: Ուստի և աշուղ Սայաթ-Նովան ամենից առաջ և ամենից ավելի պիտի դիմեր ա՛յդ լեզվին: Սրանով է բացատրվում նրա ստեղծագործության մեջ ադրբեջաներեն երգերի գերակշիռ մեծամասնությունը: Սրանով է բացատրվում նաև այն հանգամանքը, որ հայ իրականության մեջ հարյուրավոր հայազգի աշուղներ ստեղծագործել են մի՛այն կամ նաև ադրբեջաներեն: Այդ լեզվով էին նրանք կարողանում մրցավեճերի մտնել օտար աշուղների հետ՝ նպաստելով ժողովուրդների հոգևոր արժեքների փոխհարստացմանը:

Սայաթ-Նովայի ադրբեջաներեն երգերը, ավելի քան վրացերենն ու հայերենը, գրված են աշուղական բանարվեստի ոճով ու ավանդույթներով: Դրանց մեծ մասն, անտարակույս, ստեղծված է աշուղական մրցավեճերի ժամանակ հանդես բերելու համար. շատերը, ըստ երևույթին, հանպատրաստից հորինվել են հենց այդ մրցավեճերի ժամանակ, ինչպես և խրախճանքների ու զանազան առիթներով: Պատահական չէ, որ երգիչն ադրբեջաներեն հորինելիս դիմել է աշուղական-մրցավիճային այնպիսի բարդ ու դժվարին ձևերի, որոնք չենք գտնում նրա հայերեն ու վրացերեն ստեղծագործության մեջ: Անշուշտ, Սայաթ-Նովայի ադրբեջաներեն ժառանգության մեջ էլ քիչ չեն այնպիսի խաղեր, որոնց վրա դրոշմված է աշուղ-բանաստեղծի վառ անհատականության կնիքը:

Սայաթ-Նովան ադրբեջաներեն լեզվով գրել է նաև սոցիալական բովանդակություն ունեցող մի շարք ուշագրավ երգեր, ուր ծառացել է իշխող անհավասարության ու անարդարության դեմ: Ի պաշտոնե պալատական բանաստեղծը, ըստ էության, ժողովրդական երգիչ էր, ուստի և սոցիալական բախումների մեջ նրա դիրքորոշումը որոշակի էր. նա կանգնած էր ժողովրդի դիրքերում, ծնված լինելով նրանից և հավատարիմ մնալով նրան: Սայաթ-Նովան միջնադարյան-ավատատիրական կացութաձևը արմատականորեն վերափոխելու առաջարկներ չի արել: Հայ հասարակական-քաղաքական միտքը դեռևս չէր հասել այդ աստիճանին, թեև արդեն Ֆրիկի ժամանակներից (XIII դ.) այս կամ այն չափով ընդվզել է սոցիալական անհավասարության դեմ: Սայաթ-Նովան, որ այդ հասարակական առաջավոր մտքի ներկայացուցիչներից էր, իր հայտնի ադրբեջաներեն երգում արձանագրել է սոցիալապես անհավասար հասարակության վիճակը, անշուշտ, ներքուստ անհաշտ ու անհամաձայն լինելով այդ վիճակին.



*Մարթ կա ուրախ, մարթ կա տրխուր ու փոշման.*
*Մեկին՝ մըախալ, էն մեկէլին՝ հինգ բաթման...*
*Վուրըն ախկատ, վուրըն օսկով մե զանգին,*
*Վուրին գինի, վուրին աղու մե բանգի...*
*Մեկին դամ ու վայիլք, մեկին՝ ցավ ու սուք:*

Ուշագրավ է, որ նման պայմաններում ազատատենչ բանաստեղծը հիացել է այն իգիթ-խիզախ մարդկանցով, «Ով ծառս կուլի, կապանքնիր կու կըտըրտի»: Նույնպիսի մի իգիթ է եղել նաև ինքը՝ աշուղ-բանաստեղծը, որ երբեմն մոռանալով խոնարհություն ու հնազանդություն, ընդվզել է, բարձրացրել իր բողոքի ձայնը:

Արքունական բանաստեղծն ընչազուրկ ազնիվ մարդկանց դիրքերից քննադատում է այն տեր-աղաներին, որոնք շրջապատված են զարքաքով ու ղումաշով: Եվ այդ քննադատության ժամանակ, ինչպես նկատել է Սայաթ-Նովայի ստեղծագործության փայլուն գիտակ Պարույր Սևակը, աշուղի «քաղցրր լիզուն» դառնում է կծու, նրա բնածին համեստությունն իր տեղը զիջում է արդար հպարտությանը, խոսքն ստանում է ծաղրական հնչերանգ և գովքը վերածվում է երգիծանքի»:

ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՆ ԱՊՐԵԼ Է ԱՅՆ ժամանակաշրջանում, երբ Վախտանգ VI, ապա Հերակլ II թագավորների ջանքերով Վրաստանում զարկ էր տրվում ազգային-վրացական մշակույթին: Նա որպես մեծատաղանդ աշուղ-բանաստեղծ, Վրաստանում ստեղծված այդ մշակութային վերելքի առաջին գործուն խթանողներից ու մասնակիցներից եղավ: Հովհան Արքայազնը իր «Կալմասոբա» գրքում վկայել է, որ «Հերակլ II-ի ժամանակ... մի քանի անձինք ձգտեցին և վրաց խոսքերին պարսից եղանակ հարմարեցրին ... այս հանգի վրացերեն խոսքերով առաջին ներմուծողը հայ երաժիշտներն էին՝ Սայաթ-Նովան և այլոք, ապա Բեսարիոն Գաբաշվիլին»: Նույն գրքում արձանագրված զրույցի մեջ Սայաթ-Նովան ինքը վկայել է. «Ես լավ չոնգուր (նվագել) գիտեի և միաժամանակ պարսկական հանգի վրացերեն երգեր գրեցի, (որ) դեռևս ընդունված չէր, և, երբ թագավոր Հերակլը մեջլիսում էր, մեզ՝ նվագողներիս, (նրա մոտ) տարան, այն ժամանակ ես պարսկական հանգով վրացերեն երգեցի: Բատոնին շատ դուր եկավ, և ինձ խալաթ (նվեր) էլ շնորհեց: Հետո ուրիշ շատերը (այդպես) երգեցին և ընդօրինակեցին ինձ»:

Ուրեմն, Սայաթ-Նովան, առաջինը լինելով, պարսկահանգ բանաստեղծությունը փոխել է վրացերենի, ստեղծելով վրացական աշուղական պոեզիա՝ այն էլ, գեղարվեստական բարձր մակարդակի, որի շնորհիվ նրա այդ նորամուծությունը ստանում է բացառիկ արժեք:

Լինելով վրաց արքունիքի բանաստեղծը, Սայաթ-Նովան որոշ չափով տուրք է տվել այն պալատական-ներբողական ոճին, որն ընդունված էր պարսկական պալատական բարքերի ազդեցության տակ գտնվող վրաց արքունիքում: Սակայն ընդհանուր առմամբ, աշուղ-բանաստեղծը, ինչպես նկատել է Լ. Մենաբդեն, վրացական պոեզիան դուրս բերեց արքունիքից և իշխանական պալատներից, մոտեցրեց և հասկանալի ու մատչելի դարձրեց ժողովրդին: Ժամանակին Ի. Գրիշաշվիլին էլ գրել է, թե Սայաթ-Նովայի բանաստեղծությունները գրված են «պարզ խոսակցական լեզվով: Նրա ոճը բոլորի համար հասկանալի էր»: Որպես խոշոր բանաստեղծական անհատականություն, Սայաթ-Նովան, ըստ էության, չի բավարարվել խոսակցական վրացերենի պատրաստի մակարդակով, այլ ձգտել է բարձրացնել, բանաստեղծականացնել այն: Դեռևս Թեյմուրազ Արքայազնն է նկատել, որ Սայաթ-Նովան «թեև գրում էր սովորական տեսքի հասարակ բանաստեղծություններ, բայց՝ մեծապես արժեքավոր»: Պլատոն Իոսելիանու բնութագրությամբ էլ Սայաթ-Նովան «պարզ-խոսակցական լեզվով գրող բանաստեղծ էր, սակայն սուր գաղափարներ ունեցող»: Ուրեմն, հասարակ ձևով, պարզ-խոսակցական լեզվով գրած իր երգերի մեջ աշուղ-բանաստեղծն արտահայտել է «մեծապես արժանավոր» մտքեր ու «սուր գաղափարներ»: Սովորական բառն ու դարձվածը նրա մոտ ձեռք են բերել ավելի մեծ տարողություն, հմայք ու ներգործական ուժ: Նա իր վրացերեն երգերի լեզուն սնեց ու ճոխացրեց վրաց ժողովրդի բառ ու բանով, առած-ասացվածքով: Ինչպես հայտնի է, կան բազմաթիվ բանահյուսական գրառումներ, որ գալիս են Սայաթ-Նովայի ստեղծագործություններից: Սայաթ-Նովան ինքը, որպես «բյուրեղացած, խտացած մի ժողովուրդ», իր ստեղծած պատկերավոր արտահայտություններով, թևավոր խոսքերով հարստացրեց վրաց բանահյուսությունը: Պլատոն Իոսելիանու վկայությամբ, Սայաթ-Նովայի «ասածները դեռ այսօր էլ վրացիները իբրև պատկերավոր խոսք են

գործածում»: Սա նշանակում է, որ Սայաթ-Նովան երգել է վրաց ժողովրդին սրտամոտ ու հարազատ մի լեզվով, որին հավասարապես խորթ են թե՛ արհեստական պաթետիկությունը և թե՛ ռամկական կոպտությունը:

Սայաթ-Նովան վրացերեն է գրել իր երգիծական ու զավեշտական խաղերի մեծ մասը, որոնց մեջ նշավակել է որոշ պալատականների ու բարձրաստիճան պաշտոնյաների: Հայտնի են նրա կալամբուրները՝ ուղղված դատավոր Մզեճաբուկ Օրբելիանին և Անտոն կաթողիկոսին: Բանաստեղծը խարազանել է հատկապես «թույնի խոտի պես աճող» չար ու նենգ մարդկանց, անկիրթ-անբաններին, որոնց «խիլքը վուտի մեչ է», ինչպես և այն վախկոտ-պարծենկոտներին, որոնք նաև չմահավան են և ուրիշների ուժն ու կարողությունն են փտնում: Ժողովրդասեր բանաստեղծն անողոք ծաղրի է ենթարկել այն մեծամիտ իշխաններին ու թավադներին, որոնք ըստ էության փուչ ու անմիտ մարդիկ լինելով, պարծեցել են իրենց բարձր ծագմամբ, այլև այն պաշտոնյաներին, որոնք «ճիճվի պես սողալով» են հարթել իրենց ճանապարհը:

Ժողովրդի մարդու «արդար հպարտության» զգացումով է Սայաթ-Նովան գրել իր հանրահայտ վրացերեն խաղի հետևյալ տողերը.

*Ձեռը վիկալ, վադ մարթութին չիմ ուզում.*
*Էս աշխարում փարթամութին չիմ ուզում.*
*Վադ բան ասիլ, յա վաղութին չիմ ուզում,*
*Ցիս մարդ մարթ իմ՝ նամարդութին չիմ ուզում.*
*Ցիս ռամիկ իմ՝ թավադութին չիմ ուզում:*

Ինքնատիպ է նաև Սայաթ-Նովայի վրացերեն սիրերգը: Արքունական բանաստեղծն իր սիրած կնոջ՝ Աննա Բատոնիշվիլու հետ հաղորդակցվել է նրա մայրենի լեզվով՝ իր վրացերեն սիրո երգերն անմիջականորեն ուղղելով նրան, հաճախ արձագանքելով ինչ-որ կոնկրետ դեպքի կամ դիպվածի: Ըստ այդմ, այդ երգերը ձեռք են բերել առավել նեղ-անձնական, մտերմիկ, այսպես ասած՝ «նամակագրական» բնույթ: Անշուշտ, վրացերեն խաղերում էլ արտահայտվել են մեծ սիրերգակի հախուռն հույզերն ու զգացմունքները՝ ամփոփվելով նրան բնորոշ շենշող պատկերների մեջ:

ՀԱՅՏՆԻ Է, ՈՐ ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՆ մայրենի լեզվով ստեղծագործել է շատ ավելի ուշ՝ երեսուն տարեկան հասակում, զուգահեռաբար շարունակելով հորինել նաև վրացերեն ու ադրբեջաներեն երգեր: Պատճառը պարզ է: Նա ձգտել է ավելի հասկանալի լինել հարազատ ժողովրդին, ըստ ամենայնի կատարել աշուղի և բանաստեղծի իր ծառայությունը: Այստեղ, անտարակույս, մեծ ու վճռական դեր է կատարել նաև ստեղծագործական-հոգեբանական գործոնը: Ոչ մայրենի լեզվի յուրացումը, որքան էլ այն կատարյալ լինի, գրողի գիտակցության մեջ միշտ մնում է սահմանափակված: Այս իսկ պատճառով Ի. Ս. Տուրգենևը, որ փայլուն տիրապետել է ֆրանսերենին, գերմաներենին ու անգլերենին, սեփական փորձից ելնելով, շարունակ և վճռականորեն պնդել է, որ եթե գրողը ցանկանում է մնալ իսկական արվեստագետ, ապա պետք է ստեղծագործի մայրենի լեզվով:

Սայաթ-Նովան, նշված հանգամանքների պահանջով, ստեղծագործելով վրացերեն ու ադրբեջաներեն և այդ լեզուներով ստեղծելով մի շարք բարձրարժեք երգեր, այնուամենայնիվ համակողմանիորեն չի վեր հանել իր հոգու ողջ հարստությունը: Ուստի և նա ի վերջո դիմել է մայրենի լեզվին, ընդ որում՝ իրեն առավել մատչելի խոսակցական բարբառին և ձեռք բերելով լեզվական-ստեղծագործական բացարձակ ազատություն, ստեղծել է իր գրական ժառանգության լավագույն մասը: Դեռևս Ի. Գրիշաշվիլին նկատել է, որ «Հայերեն բանաստեղծություններում Սայաթ-Նովան երևան է գալիս իր ողջ էությամբ: Նրա հայերեն երգերում հաճելի կերպով ցայտում է ներքին ու արտաքին հանգը, մեղմ նազանքը, ամոթխած կիրքը, և անսպասելի խորաթափանցությամբ երևան է գալիս ժողովրդական պարզ իմաստությունը»:

Հիրավի, հայերեն խաղերի մեջ Սայաթ-Նովայի վրձնահարվածներն ավելի ազատ են ու վստահ, գույները՝ վառ ու շլացուցիչ, զգացմունքը՝ անմիջական ու թրթռուն: Այստեղ ամուր է նրա հիմք-**բունիաթը**, քանզի խարսխված է գրական ու բանահյուսական դարավոր հարուստ ավանդույթների վրա: Նրա հայերեն սիրերգը



նման է անմնացորդ ինքնայրման, խրատական խոսքը զերծ է ձանձրալի խրատաբանությունից, բողոքը ցավոտ է և տառապանքը վարակիչ: Այստեղ նրա տաղանդը դուրս է հորդում աշուղական կաղապարներից, և անձնական զգացմունքը հաճախ ձեռք է բերում անանձնական, համամարդկային արժեք ու հնչեղություն:

Սայաթ-Նովան յուրացրել է իր ժողովրդի առողջ կենսազգացողությունն ու ոգին, ժառանգել դարերի ընթացքում կուտակված նրա իմաստությունը: Սրանով է նա դարձել հիրավի մեծ ու ճշմարիտ ժողովրդական բանաստեղծ: Իր նախորդների և հիմնականում Նաղաշ Հովնաթանի քնարերգության միջոցով Սայաթ-Նովան առնչվել է միջնադարի հայ աշխարհիկ տաղերգությանը, դառնալով նրա վերջին խոշոր և ինքնատիպ ներկայացուցիչը:

Սայաթ-Նովայի մարդասիրությունը, հումանիստական ոգին առավել վառ արտահայտություն է գտել նրա հայերեն սիրերգերում: Հովհ. Թումանյանի խոսքերով ասած, «Այդ հոյակապ սիրահարը բռնված ու բռնկված սիրո հրդեհով, սիրո լույսի տակ է տեսնում մարդուն ու աշխարհը»: Ուստի և մարդկային կատարելությունը նրա համար այն գեղեցիկ կինն է, որին սիրում ու գովերգում է նա: Որքան էլ Սայաթ-Նովայի պատկերած կինը աստվածության դրոշմ է կրում, այնուհանդերձ դա իրական ու կենդանի մարդն է՝ իր արտաքին գեղեցկությամբ, որպես բնության զարդ և գլուխգործոց: Սայաթ-Նովան մի կողմից օգտագործելով ու զարգացնելով ընդհանրական, ավանդական պատկերները, մյուս կողմից իր բանաստեղծական վառ երևակայությամբ ստեղծելով նոր, ինքնօրինակ, անհատական պատկերներ, կարողացել է ըստ ամենայնի վերարտադրել կանացի գեղեցկությունը.

*Պատկիրքըտ ղալամով քաշած, թա՞րըտ ռանգե-ռանգ իս անում.*
*Էրեսըտ խալըն ծածկում է, մազիրըտ խափանգ իս անում.*
*Բացվիլ իս կարմիր վարթի պես, բլբուլի հիդ հանգ իս անում,*
*Ակռեքըտ օսկումըն շարած, պըռոշըտ մահանգ իս անում:*

Երգչի պատկերած ու գովերգած կանացի դիմանկարը, անցյալի մեծագույն գեղանկարիչների կտավների պես, այսօր էլ հուզում և հմայում է իր շենշող գույներով, իր ջերմ մարդասիրությամբ՝ ներկայացնելով հանճարեղ աշուղ-բանաստեղծի գրական ժառանգության կարևորագույն գեղարվեստական արժանիքներից մեկը:

Սայաթ-Նովան իր հայերեն սիրերգերում առավել մեծ ուժով ու ինքնատիպությամբ արտահայտել է սիրո հարուցած տառապանքն ու ողբերգությունը:

Մեծ սիրահարի հոգու ողջակիզման հուրն այսօր էլ ջերմացնում է ընթերցողին.

*Ղալամըն գիրըս չէ գըրում՝ մե չուրացած թանքի նըման,*
*Խոսկիրըս մեմեկ չի ասվի՝ իմաստնիրու բանքի նըման,*
*Մեչըն չիմ կանացի մըտնի, ծովի ծածկած վանքի նըման.*
*Խոստովնահերըս հիռացավ, միղի համա իմ լալի:*

Բանաստեղծական իր ինքնատիպ քնարով երգելով սիրո տառապանքը՝ Սայաթ-Նովան կատարելության հասցրեց հայ սիրերգությունը, որ դարեր շարունակ մշակվել ու հարստացել էր հայ ժողովրդական ու գուսանական երգերում ու միջնադարյան տաղերգուների ստեղծագործություններում: Նա հայերեն խաղերում էլ ծառացել է իր սիրո ողբերգության հիմքը հանդիսացող սոցիալական ու դասային անհավասարության, այլև դրանից բխող հասարակական չարիքների դեմ: Ազատախոս բանաստեղծը հաճախ բացահայտորեն նետի պես արձակել է իր սուր, քննադատական խոսքը, խոցելով թե՛ ամենազոր դատավորին ու հոգևոր տիրոջը, թե՛ թավադներին և անգամ Վրաստանի տիրակալին.

*Հեքիմ ու դադաստան չըկա, մե դըրուստ ադալաթ չըկա:*

Այն իրականության մեջ, որտեղ իշխում են չարն ու չարիքը, ոտնահարվում են մարդկային բարոյականության նորմերը, բարոյալքվում է ողջ **խալխ**-հասարակությունը, փակվում է ճշմարտության ճանապարհը («Դուրթս էնդուր ճանփա չէ գնում՝

շատացիլ է խալխի սուտըն»)։ Թագավորը դառնում է անարդար, իշխանը՝ անմարդասեր ու տիրադավ, հոգևորականը՝ անսուրբ, առևտրականը՝ խարդախ... Հասարակական այս արատները, որպես առհասարակ մարդու մեղսականության դրսևորում, դատապարտել է դեռևս Գրիգոր Նարեկացին իր «Ողբերգության մատյանում»։ Իր ժամանակի արատավոր հասարակության դեմ դատ է բացում նաև Սայաթ-Նովան.

*Էլ հոքեվոր կրոնավոր, մարթասեր իշխան չըմընաց,*
*Զորըն անզորին կերիլ է, մարթկանց վըրա ջան չըմնաց,*
*Էս դամանի գոզալներուն ամրաթ ու իման չըմընաց,*
*Քանի կանչիմ դադ ու փիրյադ, զարի ձեռնեմեն դադ կոնիմ։*

Սակայն «հարուր ցավ ու դաղ» վաստակած բանաստեղծը հոգնում-բեզարում է աշխարհից ու մարդկանցից, և նրա այդ հոգեկան ծանր վիճակը վերածվել է հուզիչ ու բարձրարժեք բանաստեղծության։ Անձնական ու հասարակական ցավերի համախառն-միաձույլ բանաստեղծական արտահայտությունը հանախադեպ երևույթ չէ քնարերգության պատմության մեջ։ Այս առումով հիշատակելի է հատկապես «Աշխարս մե փանջարա է» հանրահայտ խաղը, որը կարելի է համարել հումանիստ աշուղ-բանաստեղծի անձնական ու հասարակական ցավերգության մի հանրագումար.

*Ո՞վ կոսե, թե՝ չիմ կու ապրիմ առուտեմեն ինչրու մուտըն.*
*Ասաըձու ձիոումըն հիշա է մարթու աշխարք եկումուտըն.*
*Ղուրթս էնդուր ճանփա չէ գնում՝ շատացիլ է խալխի սուտըն.*
*Քըսա՛նըն՝ մե՛ զուլ չին պահում՝ աղերումեն բեզարիլ իմ։*

Սայաթ-Նովան իր բանաստեղծական անհատականությամբ ու հումանիզմով փայլել է նաև խոհախրատական բանաստեղծության մեջ։ Նրա հոգեշահ խրատները նույն բարձր մարդասիրությունից բխող անկեղծ ու սրտացավ հորդորներ են, որոնց մեջ արձագանք է գտել նաև ժամանակի կրթական-լուսավորական շարժումը («Գի՛ր սիրե, ղալա՛մ սիրե, դա՛վթար սիրե»)։ Միջնադարյան բարոյախոսության հիմքի վրա նա արծարծել է համամարդկային գաղափարներ և, ըստ այդմ, այսօր էլ շարունակում է կատարել իր բարձր բարոյակրթական առաքելությունը։

Եվ այսպես, Սայաթ-Նովան իր մարդասիրությամբ ու մարդերգությամբ, իր մեծ սիրով ու տառապանքով, անձնական ու անանձնական ողբերգությամբ ու բարոյախոսությամբ լինելով իր ժամանակի ծնունդը, դուրս է եկել ժամանակի շավղից, միշտ մնալով որպես «կենդանի ներկայություն» երեք ժողովուրդների կյանքում ու գրականության մեջ։ Բայց նա մեկ կամ երեք ժողովրդի սեփականությունը չէ, այլ, ինչպես ասել է ռուս մեծ բանաստեղծ Վ. Բրյուսովը, «Իր հանճարի ուժով դարձել է բովանդակ մարդկության սիրելին»։

---

# ՄԵՐ ՄԵԾ ՆԱԽՈՐԴԸ

## Ի. ՃԱՎՃԱՎԱՁԵԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

**ԳՐ. ԱԲԱՇԻՁԵ**
**Գրող, ՎՍՍՀ ԳԱ ակադեմիկոս**

ՎՐԱՍՏԱՆԻ ԱՄԲՈՂՋ ԲԱԶՄԱԴԱՐՅԱՆ պատմության մեջ հազիվ թե գտնվի իր ժողովրդի վերածննդի ու ծաղկման համար մարտնչած գոնե մեկը, որին կարելի լիներ դնել Իլյա Ճավճավաձեի հետ հավասար շարքում։

Այսօր մեծ բանաստեղծի գործունեության հիանալի պտուղները, նրա պայքարի ու աշխատանքի շոշափելի արդյունքները մեզ ակնբախորեն համոզում են կյանքի նրա ընկալման ճշտության մեջ.

*... Մոռանանք մենք էլ վիշտն անցյալի...*
*Այս նոր ու պայծառ ամողին հետևենք,*
*Մենք պիտ ապագան կերտենք պանծալի*
*Եվ ժողովրդին նոր կյանք պարգևենք...*

Հիմա մեզ համար պարզ է, թե Ի. Ճավճավաձեն որքան լիովին է իրացրել ուսանողական տարիների բանաստեղծություններում շարադրած իր և ամբողջ սերընդի գործողությունների ծրագիրը։ Իր այդ կոչմանը նա հավատարիմ մնաց մինչև կյանքի վերջը։ Դրա ապացույցն է ոչ միայն նրա ստեղծագործությունը, այլև բազմաբնույթ հասարակական գործունեությունը, որն անհրաժեշտաբար նրանից պահանջում էր հայրենիքի առաջընթացի ապահովումը։

Իլյա Ճավճավաձեն առաջիններից մեկն է այն գործիչների շարքում, ովքեր իրենց ջանքերով կռեցին հայրենիքի ներկան և ապագան, ովքեր դրեցին այն անսասան հիմքը, որի վրա է վստահորեն կանգնած այսօրվա Վրաստանը։

«Վերցրեք այս մութ ու խավար գիշերը՝ իր երազներով ու տեսիլքներով հանդերձ, և տվեք ինձ տանջանքներով, տառապանքներով, պայքարով ու հոգսերով լեցուն, լուսավոր ու անդադրում ցերեկ», Պետերբուրգից հայրենիք վերադառնալու ճանապարհին Դարյալի կիրճը հատելիս գրել է 24-ամյա Իլյա Ճավճավաձեն՝ պայքարելու և գործելու տենչանքով լի։

Ուսանողական հուզումներին մասնակցելու համար նա վտարվում է Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետի վերջին կուրսից։

Իլյա Ճավճավաձեն, որը տակավին ուսանողական տարիներին ճանաչվել էր որպես վրացի վաթսունականների (թերգդալեուլիներ) առաջնորդ, դաստիարակվել ռուս հեղափոխական դեմոկրատների առաջադեմ գաղափարներով, հենց որ Վրաստան վերադարձավ, կանգնեց ազգային-ազատագրական շարժման գլուխ, դարձավ նրա հոգին և ուղեղը, ամբողջ վիթխարի տաղանդը, անսպառ եռանդը ի սպաս դնելով իր ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրության պայքարին։

* * *

Իլյա Ճավճավաձեի Սագուրամոյի հուշաթանգարանում պատից կախված է իտալական ժողովրդի ազգային-ազատագրական շարժման առաջնորդ Ջուզեպե Գարիբալդիի այն դիմանկարը, որը բանաստեղծի կենդանության օրոք միշտ կախված է եղել նրա աշխատասենյակում։

Երիտասարդ հասակում Իլյան այնքան տարված էր իտալական ազատագրական շարժումով, որ լուրջ մտադրություն ուներ որպես կամավոր մտնել Գարիբալդիի ջոկատի մեջ։ Բանաստեղծը, որին հանգիստ չէր տալիս հայրենիքի դառը ճակատագիրը, ոգևորվում էր և հույսով լցվում գարիբալդիականների հերոսությունից, իտալացիների արիությունից, բալկանյան ժողովուրդների անկախության անձնվեր պայքարից։

Նա զգայուն երկրաշարժագրի նման որսում էր ժողովուրդների ազատագրական շարժման ամենաթույլ ցնցումներն իսկ, որտեղ էլ գտնվելիս լիներ դրա վերնակենտրոնը, թեկուզ երկրագնդի ամենահեռավոր ծայրում։

*Ձայն եմ լսում ես ցանկալի—*
*Շղթայազերծ ազատության,*
*Արդարության ձա՞յնն է գալիս,*
*Վերջ կեղծիքին, ստրկության։*

*Եվ այդ ձայնով տարվում եմ ես.*
*Նա իմ սրտում հույս է վառում։*
*Աստվա՛ծ, աստվա՛ծ, այդ ձայնը վեհ՝*
*Լսե՛լ տուր ինձ իմ աշխարհում։*

Իլյա Ճավճավաձեի ստեղծագործությունները ամբողջ սերունդներ են դաստիարակել և նպատակամղել այն բանին, որ Վրաստանում հնչեր ազատության ցանկալի ձայնը։

Բայց բանաստեղծը չապրեց մինչև այդ օրերը, թեև հասարակ մահկանացուների համար անըմբռնելի զգայարանով որսաց դրանց մոտալուտ շունչը։

Աշխարհի ժողովուրդների սոցիալական և ազգային-ազատագրական պայքարի նկատմամբ այդ սևեռուն հետաքրքրությունը Իլյա Ճավճավաձեի մեջ երբեք չթուլացավ, ինչի մասին վկայում է նրա «Կոմունայի անկման օրը» (Փարիզյան կոմունայի— Ծ. թ.՝ Գ. Ա.) բանաստեղծությունը։ Այդ իրադարձության ավելի բոցաշունչ արձագանք չես գտնի այն ժամանակվա ոչ միայն վրացական, այլև ռուսական պոեզիայում։

Իլյան ապրեց ժողովրդական շարժումների ու ելույթների ժամանակներում։ Ավստրո-Հունգարիայում և Ռուսական կայսրությունում աշխատավոր զանգվածները ոտքի էին ելնում Հաբսբուրգների և Ռոմանովների ինքնակալության դեմ, վճռական գրոհ ձեռնարկում հետադիմության ու ճնշման այդ պատվարների վրա։ Եվ այդ սրբազան պայքարի առաջին շարքերում էին ընթանում բանաստեղծները։ Նրանք ոչ միայն բանաստեղծություններով, այլև կրծքով էին զորավիգ կանգնում այդ պայքարին։

Ճնշված ժողովուրդների հերոսական պայքարը ծնեց բանաստեղծի նոր տիպ. ագիտատորի ու երգչի, հայրենիքի ազատության մարգարեի ու զինվորի։

Բանաստեղծի այդ տիպը անհրաժեշտություն դարձավ զարթոնքի ուղին բռնած բոլոր ժողովուրդների համար. լեհերի և ուկրաինացիների, հունգարների և բուլղարների, վրացիների, հայերի, ադրբեջանցիների...

Իլյա Ճավճավաձեն բանաստեղծների այդ համաստեղության արժանավոր ներկայացուցիչն էր. նա իր անձնական երջանկությունը և ուրախությունը, սեփական բարեհաջողությունն ու նույնիսկ կյանքը առանց տատանվելու զոհ բերեց իր ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրության գործին։

Գլխավորելով լավագույն ապագայի համար ժողովրդի ծավալած շարժումը, նա արիության, տոկունության, անսահման հայրենասիրության անձնական օրինակ էր տալիս։

Բանաստեղծի խոստովանությամբ, Քարթլիի ճակատագիրը վաղ հասակից է դարձել նրա կյանքի իմաստը, տեղ չթողնելով այլ ուրախությունների ու տխրությունների համար։ Նրա բոլոր զգացմունքներին, բոլոր մտքերին գեղեցիկ, բայց թշվառ հայրենիքն էր տիրել, որին էլ նվիրել է հետևյալ ոգեշունչ տողերը.

*Սակայն, հայրենիք, նրա համար եմ*
*միայն ես տանջվում,*
*Միմիայն այն է տխուր, ողբալի,*
*դժգոհ եմ նրանից,*

*Որ հողիդ վրա, այսքան մարդկանց մեջ,*
*ես մարդ չեմ գտնում*
*Միտքս հաղորդեմ և զգացմունքիս*
*դարձնեմ մասնակից...*

Գրողի ստեղծագործության առավել բեղմնավոր շրջանը համարվում են ուսանողության տարիները և Պետերբուրգից հայրենիք վերադառնալուց հետո առաջին տարիները։ Հենց այդ ժամանակ են ծնվել «Տեսիլք», «Ավազակ Կակոն», «Մայրը և որդին» պոեմները, որոնք արժեքավորվում են իբրև քնարական գլուխգործոցներ, «Ուղևորի հիշատակարանը», «Մուրացկանի պատմածը» և «Արդյո՞ք մարդ է նա» արձակ գործերը։

«Տեսիլքը» Իլյա Ճավճավաձեի բանաստեղծական մանիֆեստն է։ Առաջին անգամ նշված պոեմի մեջ է նա հռչակել այն գաղափարը, որին նվիրեց իր կյանքի ու գործունեության 50 տարիները։ Ստեղծագործության լեյտմոտիվը ժողովուրդների իրավահավասարության և ազատության գաղափարն է։

Բանաստեղծը լեռան կատարին կանգնած տեսիլք-ծերունու շուրթերով խոսում է համայն մարդկության և, մասնավորապես, վրաց ժողովրդի նվիրական իղձերի մասին։

«Տեսիլքը» առաջին քնարական պոեմն է վրաց գրականության մեջ։ Դա խորախորհուրդ մտքերով հագեցված քնարական խոհ (մեդիտացիա) է, որը մնում է որպես ինտելեկտուալ պոեզիայի հիանալի նմուշ։

Հրապուրիչ գույներով նկարագրելով Վրաստանի հիասքանչ բնությունը, ներկայացնելով նրա պատմության հերոսական դրվագները, հեղինակը դժվարընկալելի դատողությունները բարձրացրել է բանաստեղծական հնչողության այնպիսի որակի, որ ամբողջ պոեմը կարդացվում է չթուլացող հետաքրքրությամբ, ընդմիշտ մխրճվելով մարդու հիշողության մեջ։

Ավելի բանաստեղծական է «Ավազակ Կակոն» պոեմը։ Այն ժամանակվա բանաստեղծական ավանդույթներին լրիվ համապատասխան, այն կառուցված է միասնական սյուժետային հենքով, որի մեջ բնության նկարագրությունները և մանկության հովվերգական հուշերը վարպետորեն սերտաճյուսվում են մարդկանց սոցիալական անհավասարության ողբերգական հետևանքների մասին սուր դրամատիկ պատմությանը։

«Ավազակ Կակոն» վրաց գրականության առաջին չափածո ստեղծագործությունն է, որի մեջ գեղարվեստական մեծ ուժով և համոզչությամբ նկարագրված են ճորտատիրության ահավոր պատկերներ, դատապարտված է մարդու արժանապատվությունը ոտնահարող սոցիալական անարդարությունը։

Ճորտատիրական իրավունքի քննադատությանն է նվիրված նաև «Մուրացկանի պատմածը» հիանալի ստեղծագործությունը։ Նույն թեմատիկ երկաշարին է պատկանում «Արդյո՞ք մարդ է նա» արձակը, որի մեջ սուր երգիծանքի ուժով նշավակվում է վրացական ազնվականության աննպատակ ու փուչ կյանքը, նրա մտավոր ու բարոյական այլասերումը։

XIX դարի վրացական արձակի այդ փայլուն նմուշը իր մեջ մարմնավորել է Ի. Ճավճավաձեի ընդգրկուն տաղանդի ևս մեկ կողմը. նրա երգիծանքի ու հումորի ոչնչացնող ուժը, որով նա կանգնում է XVII և XVIII դարերի վրացական արձակի մեծ վարպետների հետ հավասար շարքում։

80-ական թվականներին Ի. Ճավճավաձեն հայրենի գրականությունը հարստացրեց ևս երկու հիանալի ստեղծագործությամբ։ Դրանք են «Օթարենց այրին» վիպակը, որի մեջ նա վերստին անդրադառնում է սոցիալական անհավասարության հարցին, և «Ճգնավորը» փիլիսոփայական պոեմը, որը առանձնահատուկ տեղ է գրավում վրաց գրականության մեջ։

Իլյա Ճավճավաձեն լիակատար իրավունքով համարվում է նոր վրաց գրականության հիմնադիրը, այդտեղ ռեալիստական ավանդույթներ հաստատողը։ Նա իր ստեղծագործական գործունեությունն սկսել է որպես գրաքննադատ. նրա հոդվածը Ի. Կոզլովի «Խելագարը» երկի Ռևազ Էրիսթավու կատարած թարգմանության մասին հիրավի հեղափոխական դեր խաղաց այն ժամանակվա հասարակական կյանքում։

Գնահատելով «Ցիսկարի» հանդեսի գործունեությունը, Ի. Ճավճավաձեն հստակորոշ նշեց վրաց գրականության զարգացման մայրուղին և համոզչությամբ փաստարկեց այն տեսակետը, ըստ որի, Դ. Գուրամիշվիլին, Ա. Ճավճավաձեն, Գ. Օրբելիանին և Ն. Բարաթաշվիլին եվրոպականություն են տարածել վրաց գրականության մեջ։

Ի. Ճավճավաձեն է հայտնաբերել Նիկոլոզ Բարաթաշվիլուն, եղել է նրա տաղանդի ջերմ երկրպագուն, հանդես է բերել նրա աճյունը Գյանջայից Վրաստան տեղափոխելու նախաձեռնությունը։ Նա բարձր էր գնահատում Ա. Ճավճավաձեի և Գ. Օրբելիանու քնարերգությունը։ Թեև թունդ բանավեճերի ժամանակ Օրբելիանու հասցեին ոչ քիչ տհաճ խոսքեր էր ասում, բայց հետո սիրով ու հարգանքով էր նշում վրացական պոեզիայի հանդեպ նրա ունեցած մեծ ծառայությունները։ Հարկ է ասել, որ Իլյա Ճավճավաձեն իր պոեզիայի համար շատ բանով պարտական է Գրիգոր Օրբելիանուն և հատկապես Նիկոլոզ Բարաթաշվիլուն։

Առանձին խոսակցության առարկա է Ի. Ճավճավաձեի ծայրաստիճան հարգալից վերաբերմունքն իր գրչակից Ակակի Ծերեթելու, նրա ստեղծագործական և հասարակական գործունեության նկատմամբ։

Կեղեքված ժողովրդի որդին մուսային ծառայելու հետ մեկտեղ զբաղվում էր նաև բազմաթիվ մեծ ու փոքր գործերով։ Հաճախ նա իր հսկայական տաղանդն ու եռանդը վատնում էր «մանրուքների» վրա, մի բան, որն, իհարկե, անդրադառնում էր նրա ստեղծագործության վրա։ Սակայն նա հաստատ հավատում էր, որ ժամանակի և ուժերի դատարկ վատնում չի կարող համարվել այն, ինչն ուղղված է հայրենիքի վերածննդին ու ազատագրմանը։ Իր ժողովրդի ապագայի համար արված ամեն զոհաբերությունը հիմնավոր է, սրբազան։

Ահա թե ինչու միշտ պատրաստ էր գլխավորելու ամեն մի ձեռնարկում, որը միտված էր ժողովրդի կյանքի բարելավման նպատակին։ Փաստորեն կես դար շարու-

նակ Իլյան եղել է այդպիսի բազմաթիվ, եթե ոչ բոլոր միջոցառումների, նախաձեռնողն ու անմիջական մասնակիցը:

Վրացիների շրջանում գրագիտություն տարածելու՝ Ի. Ճավճավաձեի հիմնադրած ընկերությունը կարևորագույն դեր խաղաց ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարթոնքի գործում:

Իլյա Ճավճավաձեն մեծ ծառայություն ունի վրացական թատրոնի հանդեպ. նա պատշաճ հոգատարություն էր ցուցաբերում նրա նյութական կարիքների բավարարման, խաղացանկի մասին, գրում էր թատերախոսություններ, հանգամանորեն վերլուծելով ներկայացումների արժանիքներն ու թերությունները, դերասանների խաղը:

Իլյա Ճավճավաձեն է եղել իր ժամանակի առաջադիմական հանդեսի ու թերթի հիմնադիրը: Դրա հետ մեկտեղ նա զբաղվում էր բանահավաքությամբ և մեր ժողովրդի սովորույթների ու ավանդույթների ուսումնասիրությամբ, ընդգրկված էր «Վագրենավորի» հրատարակությունը նախապատրաստող խմբագրական հանձնաժողովի կազմում:

Նա հոդվածներ է գրել քաղաքականության և էկոնոմիկայի, արդյունաբերության և գյուղատնտեսության, ժողովրդական կրթության և մամուլի, պատմության և հնագիտության, լեզվաբանության և ժողովրդական երաժշտության մասին:

Դժվար է թվարկել այն ամենը, ինչը կազմել է նրա հետաքրքրությունների շրջանակը: Բայց ինչի մասին էլ որ դատողություններ աներ Ի. Ճավճավաձեն, իրեն շրջապատողներին միշտ զարմացնում էր գիտելիքների խորությամբ, ձեռնհասությամբ:

Անգնահատելի է Ի. Ճավճավաձեի հրապարակախոսական ժառանգության նշանակությունը: Տասնամյակներ շարունակ նա մամուլի էջերում հոդվածներ է տպագրել իր ժամանակի ամենահրատապ հարցերով, որոնց մեծ մասը կարելի է դասել մեր հրապարակախոսական ժանրի լավագույն նմուշների շարքը:

Իլյան փայլուն բանավիճող էր: Նա սևհարյուրակայինների, տարբեր կարգի կեղծարարների ու կոսմոպոլիտների հարձակումներից ջերմորեն և համոզչորեն պաշտպանում էր իր ժողովրդի կենսական շահերը, նրա լեզուն ու մշակույթը:

***

Սովետական գրողների համամիութենական I համագումարի աշխատանքի օրերին «Պրավդա» թերթը Իլյա Ճավճավաձեին ներկայացրեց որպես «Վրաստանի ազգային-ազատագրական շարժման ղեկավար»: Միևնույն ժամանակ, լինելով Ռուսաստանի հեղափոխական դեմոկրատների առաջավոր գաղափարների հետևորդ, նրանց գաղափարները տարածել է Վրաստանում:

«Խոսք չկա,— գրել է Ի. Ճավճավաձեն,— ռուս գրականությունը մեր ղեկավարն է եղել հաջողության հասնելու ճանապարհին և իր նկատելի հետքը թողել այն ամենի վրա, ինչը կազմում է մեր հոգևոր ուժը, մեր բանականությունը, մեր միտքը, մեր զգացմունքը:

... Ուստի հիմքեր ունենք ասելու, որ մեզանից յուրաքանչյուրը սնուցվել է ռուս գրականությամբ, մեզանից յուրաքանչյուրը դրա համեմատ է կառուցել իր հավատը, իր ուսմունքը և կյանքի իր ըմբռնումը՝ հանուն ընդհանուր բարօրության»:

Իլյա Ճավճավաձեն իրավամբ համարվում է նոր գրական վրացերենի հիմնադիրը: Մայրենի լեզվին անսահմանորեն սիրահարված, նա իր ողջ ստեղծագործությամբ նպաստել է դրա ծաղկմանը և հաստատակամորեն կռիվ մղել նրանց դեմ, ովքեր իրենց թույլ էին տալիս խոսքով կամ գործով պղծել այն:

«Չգիտեմ, թե ինչպես կվարվեն ուրիշները, իսկ ես հարազատ հորս էլ թույլ չեմ տա ոտնակոխ անել մայրենի լեզուն: Լեզուն սրբություն է: Այն հանրային սեփականություն է, որին չպետք է դիպչի մարդու մեղապարտ ձեռքը»,— գրել է Ճավճավաձեն իր առաջին հոդվածի մեջ, որը ոչ թե պարզապես նրա առաջին գրական ելույթն էր, այլև առաջ էր քաշում թարգմանական արվեստի և ընդհանրապես լեզվի նկատմամբ վերաբերմունքի նոր սկզբունքներ:

Հենց Իլյային է պատկանում լեզուն բնորոշող այն դասական բանաձևը, թե՝ «լեզուն ազգի էական հատկանիշն է, նրա սիրտն ու ոգին»: Դժվար թե կարելի լինի դրանից ավելի լավ արտահայտել լեզվի իմաստը, էությունն ու նշանակությունը: Խորհրդանշական է, որ մեջբերված խոր միտքը բանաձևել է այն ժողովրդի որդին, որը շատ անգամ է կանգնած եղել կործանման եզրին, բայց այդուհանդերձ, կարողացել է իր լեզուն պահպանել, փորձությունների կրակի միջով կրել որպես մարտական դրոշ և փոխանցել հաջորդ սերունդներին:



Իլյան գիտականորեն հիմնավորեց գրականը խոսակցական կենդանի լեզվին մոտեցնելու անհրաժեշտությունը, իր ստեղծագործությունների մեջ հրաժարվեց գործածությունից դուրս եկած մեռյալ լեզվական նորմերից և գրականության դռները լայնորեն բացեց ժողովրդական լեզվադարձվածքաբանական տարրերի առաջ: Ղեկավարվելով ժամանակի պահանջներով, ինքն էլ հորինեց նոր շատ բառեր, որոնք կայուն տեղ գրավեցին վրաց գրականության ու լեզվի մեջ: Լեզվի հարստացման ու զարգացման նկատմամբ նրա ցուցաբերած անդուլ հոգատարության բեղմնավոր արդյունքները այսօր շոշափելի են ու տեսանելի բոլորի համար: Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում վրացերենը ասես նոր շունչ առավ, ներկայանալով որպես բազմաբնույթ և հարուստ գրականության լեզու:

Մեծարելով սեփական ազգի լեզուն, Իլյա Ճավճավաձեն, բնականաբար, խոր հարգանք էր տածում նաև մյուս ժողովուրդների լեզուների նկատմամբ, այդ թվում և ռուսերենի: Ռուսականացման քաղաքականության ցարական ջատագովների (Յանովսկու և մյուսների) դեմ նրա մղած անհաշտ պայքարը երբեք չէր ստվերում ռուսերենի մեծությունը, որն ուսումնասիրելու էր հետևողականորեն կոչում նա իր ժողովրդին:

Հետաքրքիր է, որ Իլյա Ճավճավաձեի այդ միտքը նրա զինակից Նիկո Նիկոլաձեն հիմնավորել է հետևյալ կերպ. «Մի՞թե լավ կլիներ, եթե Իլյա Ճավճավաձեին խորհուրդ տվողները համոզեին նրան 1856-ին չմեկնել Ռուսաստան և սկսեին ապացուցել, թե ավելի լավ կլիներ, որ չկտրվեր Վրաստանից, որպեսզի չկորցնի ազգայինի զգացումը: Մի՞թե դրանով նրանք ավելի մեծ օգուտ կբերեին Վրաստանին: Այն, որ Իլյա Ճավճավաձեն դաստիարակվել է ռուսերեն գրքերով, գիտելիքներ ձեռք բերել Ռուսաստանում և ջահելությունն անցկացրել ռուսական ուսումնական հաստատությունում, մի՞թե դրանից նրա կրծքում վրացու սիրտ չի տրոփում և նրան իսկական վրացու զգացումներ չեն համակում»:

Ռուսերենին տիրապետելը, որին հետևողականորեն կոչում էին Նիկո Նիկոլաձեն, Յակոբ Գոգեբաշվիլին և Իլյա Ճավճավաձեն, վրաց ժողովրդի առջև բացեց առաջընթացի ու կրթության ճանապարհը, մեծ դեր խաղաց մեր ժողովրդի վերածննդի գործում:

Իլյա Ճավճավաձեի ծառայությունները դեռևս նրա կենդանության օրոք են բարձր գնահատվել ժողովրդի կողմից, որի պատկերացմամբ, բանաստեղծը մարմնավորում էր հայրենիքը, և նրա խոսքն ընկալվում էր որպես մարգարեություն: Եվ հենց այն շրջանում, երբ բանաստեղծի նկատմամբ ժողովրդի տածած հախուռն սերը հասել էր իր բարձրակետին, տեղի ունեցավ աներևակայելին. վարձու մարդասպանների ձեռքով կտրվեց բանաստեղծի կյանքի թելը:

Մի մարդու համար, որը սկզբից ևեթ հրաժարվել էր հանգիստ ու անվրդով կյանքից և մշտապես գտնվում էր պայքարի առաջավոր գծում, ավելի տրամաբանական կլիներ զոհվել բարիկադների վրա: Բայց նախախնամությանը հաճո չէր եղել նրան բաժին հանելու Շանդոր Պետեֆիի և Քրիստո Բոտևի վեհ ճակատագիրը: Իսկ չէ որ հենց այդպիսի բախտի արժանանալու մասին էր երազում Ի. Ճավճավաձեն, երբ Պետերբուրգի համալսարանում մասնակցում էր ուսանողական հուզումներին, երբ պատրաստվում էր անդամագրվելու Գարիբալդիի ջոկատին:

Նրա մահը մի պահ հուսահատության մեջ գցեց վրաց ժողովրդին: Այնքան մեծ էր կորուստը, որ գրողներից մեկը ասաց. «Այսօր սպանեցին Վրաստանը»: Բայց միևնույն ժամանակ Իլյայի մահը համախմբեց «կորուստը դառնորեն ողբացող» ժողովրդին (Ակակի Ծերեթելի), նպաստեց նրա ազգային ինքնագիտակցության խորացմանը:

... Ժամանակի փորձությունը ամենաբարդ քննությունն է, իսկ մեծ մարդու կյանքը՝ ամենամեծ դասը: Իլյա Ճավճավաձեի՝ մեծ գրողի և հումանիստի, ժողովուրդների բարեկամության և իրավահավասարության մունետիկի, իսկական հայրենասերի և ինտերնացիոնալիստի ստեղծագործություններով այսօր դաստիարակվում են տարբեր ազգությունների միլիոնավոր մարդիկ: Այսօր մեզ հետ միասին Իլյա Ճավճավաձեի հոբելյանը, նրա, ում կատարած վիթխարի գործը գտել է բոլորի ճանաչումը, նշում է սովետական ողջ երկիրը: Կատարվել է բանաստեղծի երազանքը.

*Թեկուզ և մեռնեմ, ես չեմ վախենում,*
*Իմ հետքը, սակայն, թող տեսնեն նրանք.*
*Ովքեր ինձանից հետո են գալու*
*Եվ ասեն՝ . . . . . . .*

*Նույնիսկ դու խաղաղ, և՛ հանգիստ, և՛ լուռ,*
*Կատարել ես դու քո պարտքը վսեմ,*
*Խոսքդ հյուսխում, մեր երկրից հեռու*
*Իզուր չէր հնչում սիրով մեզ համար:*

# ԼՈՒՍԱՎՈՐ ԻԴԵԱԼՆԵՐԻ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

## Մ. Փ. ՎԱԳԻՖԻ ԾՆՆԴՅԱՆ 270-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

**Ա. ԴԱԴԱՇԶԱԴԵ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր**

ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՈՒՄ առանձնակի սրությամբ է ծառանում մշակութային բարոյական ավանդույթների ժառանգորդության, հին հուշարձանների, ժողովուրդների մշակույթի մեջ ավանդ մուծած անցյալի գործիչների նկատմամբ ուշադիր վերաբերմունքի, վաղուց ստեղծված բազմաթիվ գեղարվեստական երկերի արդիական հնչողության հարցը: Հարկավոր է գիտենալ ու գնահատել սեփական ժողովրդի մշակույթի մեջ ներկայումս եղածը, մնայունը, բայց լայն, ընդգրկուն պատկերացում չունենալով մյուս եղբայրակից ժողովուրդների մշակութային նվաճումների մասին, չի կարելի իրեն համարել համակողմանիորեն կրթված մարդ:

Այդպիսի երկմիասնության առավել վառ դրսևորումներից մեկը կարող են ծառայել սովետական ժողովրդի գրականության և արվեստի դասականների հոբելյանները, որոնք սովորաբար չեն սահմանափակվում նեղ ռեգիոնի շրջանակներում, ընդգրկում են երկրի նաև մյուս հանրապետությունները ու քաղաքները: Յուրաքանչյուր դասականի մեջ ասես կենտրոնացված է ամբողջ ժողովրդի առավել բնորոշ գծերի և առանձնահատկությունների մի մասնիկը, և նրա հոբելյանական տարելիցի նշումը այդպիսով հնարավորություն է ընձեռում ավելի լավ ճանաչել, ավելի լավ հասկանալ ու զգալ նրան:

Այս տարի լրանում է բանաստեղծ Մոլլա-Փանահ Վագիֆի (1717—1797) ծննդյան 270-ամյակը, ադրբեջանական մեծ բանաստեղծի և պետական խոշոր գործչի, որի ստեղծագործությունը մի ամբողջ դարաշրջան է կազմում բազմադարյան ազգային գրականության զարգացման պատմության մեջ: Նա իր պոեզիայի մեջ յուրացրել է ժողովրդական բանարվեստի հարուստ ավանդները, ինչպես նաև իր անմահ նախորդների, հատկապես խոսքի մեծ վարպետներ Նասիմու (14-րդ դ.), Խատայու (16-րդ դ. սկիզբ), Ֆիզուլու (16-րդ դ.): Համադրելով այդ երկու կենարար աղբյուրները, Վագիֆը կարողացել է ծանրակշիռ խոսք ասել ադրբեջանական գրականության մեջ և խոր հետք թողնել դրա հետագա զարգացման ամբողջ ընթացքի վրա:

Վագիֆը ծնվել է Յուխարի Սալախլի գյուղում (ներկայումս Ադրբեջանական ՍՍՀ Ղազախի շրջան): Ստացել է լավ կրթություն, հետաքրքրվել աստղագիտությամբ, եղել ճարտարապետ, ուսումնասիրել է պարսկերենն ու արաբերենը: 18-րդ դարի կեսին Վագիֆը տեղափոխվում է Ղարաբաղ. շուտով հաստատվում է Շուշիում, Ղարաբաղի խանության կենտրոնում, որտեղ բացում է դպրոց: Նրա ընդունակությունների, խելքի, կրթվածության համբավը բավականին արագորեն տարածվում է խանության սահմաններից դուրս: Ժողովուրդը բարձր գնահատելով նրա տաղանդը, ասում էր. «Ամեն կարդացող Մոլլա Փանահ չի դառնա» (տվյալ դեպքում «մոլլա» նշանակում է իմաստուն, կրթված):

Շուտով Ղարաբաղի տիրակալ Իբրահիմ-Խալիլ խանը Վագիֆին նշանակում է խանության ավագ վեզիր: Որպես վեզիր՝ Վագիֆի առանձնակի ծառայությունն այն էր, որ նա հեռատես ու ճկուն արտաքին քաղաքականություն էր վարում պատմության բարդ ու խառնակ ժամանակներում: Նա Ռուսաստանի և Վրաստանի հետ բարեկամական կապերն ամրապնդելու անկեղծ կողմնակից էր:



Բայց Վագիֆին համաժողովրդական հռչակ բերեց, իհարկե, նրա լուսավոր, կենսահաստատ պոեզիան:

Նրա բանաստեղծությունները կարդալիս ակամա հիշում ես համաշխարհային պոեզիայի այնպիսի քնարերգուների, ինչպիսիք են Անակրեոնն ու Պետրարկան, Հաֆիզն ու Ֆիզուլին, Բայրոնն ու Վեռլենը, Պուշկինն ու Լերմոնտովը: Վագիֆի քնարը աչքի է ընկնում գունախաղերի թարմությամբ, ժողովրդական ոգով, իրական պատկերներով և կենդանի լեզվի արտահայտչականությամբ: Վագիֆը օրհներգում է երկրային մարդու ֆիզիկական ու հոգևոր գեղեցկությունը: Բանաստեղծի սիրո երգերը ապշեցնում են հույզերի ու զգացմունքների անզուսպ պոռթկումով: Նրան խորթ են ասկետական ու կրոնական նախապաշարմունքները: Նրա քնարական հերոսի համար նշանակություն չունի այն, որ տաճարից դուրս եկող գեղեցկուհին քրիստոնյա վրացուհի է: Վերջինիս տեսքից գերված, նա խոստովանում է, թե՝ «Նոր հասկացա շեյխ Սանանի վիճակը խեղճ ու անել» (ըստ լեգենդի շեյխ Սանանը հանուն սիրո հավատափոխ է եղել): Բանաստեղծը մեծ պատասխանատվությամբ է ընկալում սերը, պահանջում փոխադարձություն.

*Ջահելի խելքը թե պակաս եղավ,*
*Սիրած աղջկա մասը նազ կանի,*
*Սրտով սիրածին կթողնի մի կողմ,*
*Կգնա ուրիշ յարի սազ կանի:*

Վագիֆը սիրածին է դիմում որպես հավասարի: Նա ուզում է, որ կնոջ գեղեցկությունը չմնա քողի տակ ծածկված, այլ բերկրանք պատճառի մարդկանց:

Քուռ գետի ափերն այցելելու ժամանակ նրա գրած բանաստեղծությունների մեջ պարզորոշ զգացվում է գյուղի աղջիկների աղքատությունը տեսնելուց նրան համակած թախիծը, իսկ չէ որ՝

*Միշտ երկնային լուսատուի գեղեցկության ունեն նրանք:*

Վագիֆը մի քանի բանաստեղծություն է գրել Վրաստանում գտնվելու տպավորության տակ, հիանալով Թիֆլիսի և դրա բնակչուհիների գեղեցկությամբ.

*Տիեզերքի դրախտավայրը Թիֆլիս քաղաքն է միշտ եղել,*
*Այստեղ ամեն հուրի, փերի գեղեցիկ է որպես եղեգ:*

Լավատեսությունը Վագիֆի քնարերգության վառ ու բնորոշ գիծն է: Նրա բանաստեղծությունների մեծ մասը գրված է լուսավոր, կենսախինդ երանգավորումներով, հագեցած վառ ու հյութեղ գունախաղերով: Բանաստեղծը գտնում է, որ քանի դեռ ապրում ես, գլուխդ բարձր պահիր, մի ընկճվիր.

*Եթե սիրտդ կրծքիդ տակ բաբախում է դեռ,*
*Բոլոր սուլթաններն ու խաները ոչինչ են քո հանդեպ...*

Վագիֆի լավատեսությունը նկատելի երևույթ էր ոչ միայն ադրբեջանական, այլև մերձավորարևելյան գրականության պատմության մեջ: Այս առումով բնորոշ է Վագիֆի «Կռունկներ» դոշման, որը և՛ խոհ-մտորում է, և՛ կարոտի կանչ, և՛ երազանք ու սպասում: Բանաստեղծն ուզում է միանալ կռունկների երամին, ճախրել նրանց հետ, հեռանալով երկրային ունայնությունից.

*Ձեր ազատ երգը քնքշությամբ լցված,*
*Սիրտն իմ գցել է խնդության մի կայծ,*
*Վագիֆի սիրտն էլ երկինքն է պարզած,*
*Հավիտյան ձեզ հետ տարեք, կռունկներ:*

Բայց Վագիֆի լուսավոր իդեալները խամրում էին դաժան ու դրամատիկական իրականությունից: 1795 թվականին պարսից շահ Աղա Մուհամեդ Կաջարը արշավում է դեպի Ղարաբաղ: Շուշին զավթիչին ցույց է տալիս համառ դիմադրություն:

Սովետական իշխանության տարիներին Վագիֆի ստեղծագործությունները սկսեցին աշխուժորեն թարգմանել ռուսերեն և օտար լեզուներով, մեր երկրի ժողովուրդների լեզուներով։

Վագիֆն առանձնապես մեծ ժողովրդականություն է վայելել Կովկասում։ Նրա ստեղծագործությունները ընդգրկվել են Հայաստանի, Վրաստանի, ինչպես նաև Դաղստանի ժողովրդական երգիչների երգացանկում։ 18-րդ դարի վերջին և 19-րդ դարի սկզբին բանաստեղծի տասնյակ երգեր գրի են առնվել վրացերեն ու հայերեն տառերով։

Ուշագրավ է նաև այն փաստը, որ Սայաթ-Նովայի որդին՝ Օհանը, 1823 թվականին, Վրաստանի արքայազն Թեյմուրազի հանձնարարությամբ, կազմում է Անդրկովկասի գրողների երկերի մի հավաքածու, որտեղ տպագրվում են Վագիֆի մի շարք բանաստեղծություններ։ Հիշեցնենք, նաև, որ Վագիֆի երկերի առաջին ժողովածուի հրատարակիչը եղել է ազգությամբ հայ, ղարաբաղցի մտավորական-գրականագետ Միրզա Յուսուֆ Ներսեսովը։

***

Վագիֆի ստեղծագործությունը սիրված է ժողովրդի կողմից։ Նա առավել շատ կարդացվող ադրբեջանցի բանաստեղծներից է։ Նրա բանաստեղծությունները այսօր էլ հուզում են մեզ։ Դրանց մեջ իշխում է, բառիս բուն իմաստով, արդիականության ոգին։ Վագիֆի հումանիստական, լուսավոր իդեալները հոգեհարազատ ու թանկ են մեր ժամանակակիցներին։

---

Հանձնված է շարվածքի՝ 14.09.87 թ.։ Ստորագրված է տպագրության 13.10.87 թ.։ ՎՖ 08529։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 18032։ Պատվեր՝ 1889։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։



✦ Արագածի լանջին կառուցված այս ռադիոաստղադիտակը ամենախոշորն է երկրում։ Նրա գլխավոր հայելու մակերեսը շուրջ կես հեկտար է։



✦ Սումգայիթի սինթետիկ կաուչուկի գործարանի այս սարքավորման կառուցմանը մասնակցում են տարբեր միութենական հանրապետությունների մոտ 2.500 շինարարներ ու մոնտաժողներ։



✦ Վրաստանը երկրում թեյի գլխավոր մատակարարն է։ Թեյագործների դժվարին աշխատանքը առավելագույն չափով մեքենայացված է։